ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

1

ՀՈՒՆՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1960 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

## СОДЕРЖАНИЕ





# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ՄՈԲԻԼԻԶԱՑՄԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ

ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թ. Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանը նոր հաղթանակների ու հաջողությունների ժամանակաշրջան է մեր երկրի ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում:

Ոգևորող ու հուսադրող են յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի արդյունքները. ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի թողարկումը 11 ամսում պլանով նախատեսված 7,7 տոկոսի փոխարեն ավելացավ 11,3 տոկոսով: Անցյալ տարի գործարկվեց ավելի քան հազար նոր խոշոր ձեռնարկություն, քաղաքներում ու բանավաններում կառուցվեց ավելի քան 2 միլիոն 200 հազար բարեկարգ բնակարան՝ 80 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ: Բացի դրանից կոլտնտեսականները ու գյուղերում ապրող ինտելիգենցիան կառուցեցին մոտավորապես 850 հազար բնակելի տուն:

Չնայած այն բանին, որ երկրի մի շարք շրջաններում անցյալ տարվա կլիմայական պայմանները բարենպաստ չէին, այնուամենայնիվ լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին նաև գյուղատնտեսության բնագավառում: 1959 թ. մթերվեց երկու միլիարդ 845 մլն փութ հացահատիկ. վերջին չորս տարում հացամթերումների տարեկան միջին մակարդակը նախորդ 4 տարվա երկու միլիարդ փթի դիմաց կազմեց 3 միլիարդ փութ:

Երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում մսի արտադրությունը անցյալ տարվա 11 ամիսներում աճել է 32 տոկոսով, իսկ գնումները՝ 36 տոկոսով: Կաթի արտադրությունը աճել է 15 տոկոսով, գնումները՝ 16 տոկոսով: Նախորդ տարվա 4 միլիոն 373 հազար տոննայի դիմաց 1959 թվականին մթերվեց 4 միլիոն 669 հազար տոննա բամբակ. դա ավելին է, քան մթերվել է մեր երկրի բամբակագործության զարգացման ամբողջ պատմության որևէ տարում:

Երկրում ավելացել է նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը: ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան (1959 թ.) պլենումը քննության առնելով ՌՍՖՍՌ-ի Մինիստրների Սովետի, Ուկրաինայի, Ղազախստանի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Տաջիկստանի և Ադրբեջանի կոմպարտիաների Կենտկոմների զեկուցումները ՍՄԿՊ XXI համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան (1958 թ.) պլենումի՝ գյուղատնտեսության հետագա վերելքի վերաբերյալ ընդունած որոշումների իրագործման ընթացքի մասին, հանրագումարի բերեց ընթացիկ յոթնամյակի առաջին տարում երկրի գյուղատնտեսության զարգացման արդյունքները, մշակեց նրա հետագա վերելքի՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսությունների ու սովխոզների հանրային տնտեսության ամրապնդման կոնկրետ խնդիրները:

Պլենումում տրված զեկուցումների, գյուղատնտեսության առաջավորների, պարտիական-սովետական աշխատողների ելույթների լեյտմոտիվը բոլշևիկյան կենարար օպտիմիզմն էր, բոլոր դժվարությունները հաղթահարելու անսասան վճռականությունը, պարտիայի լենինյան գծի իրականացման համար բոլոր աշխատողների պատրաստակամության վառ ցուցադրումը:

Բոլորել է յոթնամյակի առաջին տարին և արդեն պարզ է դարձել, որ գյուղատնտեսության գծով յոթնամյա առաջադրանքները ոչ միայն կկատարվեն, այլև ուժերի ու ջանքերի նոր մոբիլիզացման դեպքում կկատարվեն ժամկետից շուտ:

Հակառակ արտասահմանյան մեր թշնամիների սպասումների, սոցիալիստական գյուղատնտեսությունը հաջողությամբ է լուծում ամենադժվարին խնդիրը՝ մսի արտադրության մեծապես ավելացման առաջադրանքը: Գյուղում ծավալված սոցիալիստական մրցությունը վստահություն է ներշնչում, որ 16 միլիոն տոննա միս արտադրելու՝ յոթնամյա պլանի առաջադրանքը կկատարվի ժամկետից շուտ՝ 1963 թվականին:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը գյուղատնտեսության բոլոր աշխատողներին կոչ արեց մինչև 1965 թվականը, յոթնամյա պլանի առաջադրանքներից դուրս, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման կարգով, լրացուցիչ արտադրել 4—5 միլիոն տոննա միս, մսի ընդհանուր արտադրությունը հասցնելով 20—21 միլիոն տոննայի, որը հնարավորություն կտա հաջողությամբ լուծելու մեկ շնչին ընկնող մսի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու հայրենանվիրական խնդիրը:

Սոցիալիստական գյուղատնտեսության ընդերքում գտնվող անսպառ ռեզերվների ու հնարավորությունների օգտագործման վառ օրինակ ցույց տվին Ռյազանի մարզի անասնաբույծները: Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մարզի կոլտնտեսային և սովխոզային աշխատավորությունը հետևողական աշխատանք ծավալեց ստանձնած բարձր պարտավորությունների կատարման համար: Համառ աշխատանքը տվեց հիանալի արդյունքներ: Ռյազանի մարզի կոլտնտեսություններն ու սովխոզները 1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացրին 3,8 անգամ և պետությանը վաճառեցին 3 անգամ ավելի շատ միս, քան 1958 թվականին:

Հրաշալի արդյունքների հասավ մսի արտադրության ավելացման համար ծավալված սոցիալիստական մրցության նախաձեռնողներից մեկը՝ Տամբովի մարզի Կոմինտերնի անվան կոլտնտեսությունը, որի նախագահն է ընկեր Ե. Ի. Անդրեևան: Յոթնամյակի առաջին տարում կատարելով 1960 թվականի համար ստանձնած պարտավորությունները, կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեց 171 ցենտներ միս և 350 ցենտներ կաթ:

Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի նախագծումների իրականացման համար ծավալված համաժողովրդական պայքարը աշխատանքային [illegible]ագործությունների անսպառ աղբյուր է:

Պլենումն [illegible]ղջ երկրով մեկ հնչեց գյուղատնտեսության առաջավորների խրոխտ ձայնը, որտ արժանվույն գնահատվեցին նրանք, ովքեր իրենց մեջ մարմնավորելով մեր ժողովրդի լավագույն հատկությունները, աշխատանքային հերոսության զարմանալի օրինակներ են ցույց տալիս:



Մեր ամբողջ երկիրը գիտե Նիկոլայ Մանուկովսկուն ու Ալեքսանդր Գիտալովին, Խամրակուլ Թուրսունկուլովին և Եվգենյա Դոլինյուկին: Մեր ժողովրդին հայտնի են Սոցիալիստական Աշխատանքի բազմաթիվ ուրիշ հերոսների անուններ: Մեր հասարակության առանձնահատկություններից մեկն այն է, որ մեզ մոտ հերոսությունը, աշխատանքային սխրագործությունը, անձնվեր աշխատանքն ու նվիրվածությունը մասսայական բնույթ են կրում:

Մինչև պլենումը քչերը գիտեին Լվովի մարզի Շևչենկոյի անվան կոլտնտեսության խոզապահ Յարոսլավ Չիժի, Ստավրոպոլի երկրամասի Ստալինի անվան կոլտնտեսության ավագ հովիվ Իվան Մալաշենկոյի, Տաշքենդի մարզի Կիրովի անվան կոլտնտեսության մեխանիզատոր Թուրսունոյ Ախունովայի, Ստալինգրադի մարզի «Կրասնոյե Սորմովո» կոլտնտեսության կթվորուհի Վերա Ռիբաչեկի և մյուսների մասին: Այժմ նրանց գործերի մասին գիտեն բոլորը, շատերը սկսում են աշխատել նրանց օրինակով: Կյանքի ու աշխատանքի այդ սովորական մարդիկ առաջավոր են ո՛չ միայն արտադրական ցուցանիշներով, այլև գյուղատնտեսության հեռանկարային հարցերի ըմբռնմամբ ու սկզբունքային մեկնաբանմամբ: Նրանք նորի, պրոգրեսիվի իսկական ջատագովներն են, մեր ժամանակի իսկական մարդիկ:

Յարոսլավ Չիժը խոզապահ է, շարքային աշխատող, բայց նա իր ելույթում իր աշխատանքը բնութագրեց ոչ այնպիսին, ինչպես հասկանում են շատերը: Խոզապահն այսօր միաժամանակ մեխանիզատոր է, զոոտեխնիկ ու տնտեսագետ: Միայն այդպիսի աշխատողը կարող է մեկ տարվա ընթացքում արտադրել 560 ցենտներ խոզի միս և յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը իջեցնել մինչև 224 ռուբլու: «Այդպիսի մարդը,— իր ելույթում ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,—կկարողանա մեր Հայրենիքի պատիվը պահել նաև թշնամիների շրջապատում և ոչ միայն իր հաջողությունները բարեկամներին բացատրելու ժամանակ»:

Կամ վերցնենք, օրինակ, հովիվ Իվան Նիկիտովիչ Մալաշենկոյին, որը ոչխարաբուծության մեջ կիրառել է առաջավոր մեթոդներ: Նա 1958—59 թվականներին յուրաքանչյուր 100 մաքիից ստացել է 374 գառ և յուրաքանչյուր ոչխարից միջին հաշվով խուզել է 10 կգ բուրդ: Ընդ որում, իր մեթոդների կիրառման ժամանակ Ի. Ն. Մալաշենկոն ստիպված է եղել սկզբունքային վեճի բռնվել գիտության առանձին աշխատողների հետ և ապացուցել իր առաջարկի ճշտությունը: Միայն մեր սոցիալիստական երկրում է հնարավոր այդպիսի հովիվների երևան գալը, որոնք կարողանային վիճել գյուղատնտեսական գիտությունների դոկտորների հետ:

Բոլոր ռեսպուբլիկաներում, երկրամասերում ու մարզերում կան արտադրության հազարավոր նորարարներ, որոնք գյուղատնտեսության զանազան ճյուղերում աշխատանքի բարձր արտադրողականության օրինակներ են տալիս: Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությանը քաջ հայտնի են Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության կթվորուհի Աշխեն Ավետիսյանի, Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության բրիգադիր Մարիամ Ծղիազարյանի, Արտաշատի շրջանի Այգ[illegible]ան գյուղ[illegible]անիզատորներ Խաչիկ Խաչատրյանի և Սոս Գյուլնազարյանի, [illegible] շրջանի Խանածախ գյուղի ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Սեդրակ [illegible]ալասանյանի և շատ ուրիշների անուններ: Նրանց հիանալի օրինակը գյուղատնտեսության բոլոր աշ-

խատողներին նորանոր սխրանքների է ոգեշնչում մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատության համար մղվող պայքարում:

Անցյալ տնտեսական տարում մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ ու սովխոզներ ևս հասան հիանալի հաջողությունների: Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի Ստ. Շահումյանի անվան կոլտնտեսությունը խաղողի այգիների մեկ հեկտարի միջին բերքատվությունը հասցրեց 220 ցենտների: Այդ կոլտնտեսության՝ Մանուկ Վարդանյանի գլխավորած բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացավ 248 ցենտներ խաղող: Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղի կոլտնտեսությունը շաքարի ճակնդեղի պլանտացիաների ամեն մի հեկտարի բերքատվությունը հասցրեց 520 ցենտների, Էջմիածնի շրջանի Այգեշատի և Շահումյանի կոլտնտեսություններում բամբակի պլանտացիաների միջին բերքատվությունը կազմեց 39—46 ցենտներ: Շահումյանի շրջանի Ստալինի անվան, Շահումյանի անվան և XVIII պարտհամագումարի անվան կոլտնտեսությունները 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեցին 100—168 ցենտներ միս:

Առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների, արտադրության նորարարների փորձը, գյուղատնտեսական արտադրանքի ավելացման բնագավառում նրանց նվաճումները գրավականն են այն բանի, որ յոթնամյակի առաջադրանքները և դրանք ժամանակից շուտ կատարելու պարտավորությունները կարող են հաջողությամբ կենսագործվել յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում:

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ հմտորեն կազմակերպել առաջավորների փորձի պրոպագանդան ու տարածումը, օգնել կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին ու գյուղատնտեսության մասնագետներին՝ արմատավորելու աշխատանքի պրոգրեսիվ մեթոդներն ու ձևերը, երկրի անվանի մարդկանց օրինակով հասնելու բարձր ցուցանիշների:

Կենտկոմի պլենումը գյուղատնտեսության աշխատողների ուշադրությունը բևեռեց կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերի վրա:

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ներկա էտապում անհանդուրժելի է դառնում ձեռքի ցածր արտադրողական, պրիմիտիվ աշխատանքը: Մեր արդյունաբերությունը կոլտնտեսություններին ու սովխոզներին զինում է առաջնակարգ մեքենաներով: Այժմ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման խնդրի հետ միասին, ամբողջ սրությամբ դրվում է ինքնարժեքի իջեցման հարցը: Առաջավոր է այն կոլտնտեսությունը, որը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հետ միասին հաջողությամբ լուծում է նաև ինքնարժեքի իջեցման հարցերը: Արտադրանքի ինքնարժեքի հետևողական իջեցումը հնարավորություն կտա ոչ միայն ավելացնելու կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտները, խնայելու և ավելի արտադրաբար օգտագործելու տնտեսությունների աշխատանքային և ֆինանսական միջոցները, այլև պայմաններ կստեղծի մթերքների վաճառքի՝ հետևապես նաև մանրածախ առևտրի գները իջեցնելու համար, որը մեծ չափով կնպաստի սովետական ամբողջ ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը: Պլենումում Ուզբեկստանի, Տաջիկստանի, Վրաստանի և Ադրբեջանի ներկայացուցիչները հարց բարձրացրին արդեն այժմ բամբակի, թեյի տերևի



խաղողի, ցիտրուսային կուլտուրաների վաճառքի պետական գները որոշ չափով իջեցնելու մասին:

Հայկական ՍՍՌ-ում նույնպես պայմաններ են ստեղծվել խաղողի, բանջարեղենի որոշ տեսակների և առանձին այլ մթերքների վաճառքի պետական գների մասնակի իջեցման համար: Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և բերքատվության ավելացումը հնարավոր են դարձրել կիրառել այդ, ոչ միայն չնվազեցնելով կոլտնտեսությունների եկամուտները, այլև զգալիորեն ավելացնելով դրանք: Այդ մտքի պարզաբանման համար կարելի է բերել հետևյալ օրինակը: 1959 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ռեսպուբլիկայում խաղողի վաճառքի գները որոշ չափով իջեցվեցին: Չնայած դրան (շնորհիվ բերքատվության բարձրացման և համախառն արտադրանքի զգալի ավելացման), կոլտնտեսությունների խաղողի վաճառքից ստացված եկամուտները մեծ չափով գերազանցեցին նախորդ տարվա եկամուտները: Այսպես. եթե 1958 թ. պետությանը հանձնած ու կոլտնտեսային շուկայում վաճառած խաղողից և գինեմթերքից կոլտնտեսությունները ստացել էին 215 միլիոն ռուբլու եկամուտ, ապա 1959 թվականին միայն պետությանը հանձնած խաղողի արժեքը կազմեց 245 միլիոն ռուբլի:

Իհարկե, ինչպես պլենումում նշեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, վաճառքի գների իջեցման հարցը պետք է լուծվի զգուշորեն, այնպես, որպեսզի այն չհակասի կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման սկզբունքին:

Մեր գյուղատնտեսության առաջ ծառացած կարևոր հարցերից մեկն էլ, այժմ հողագործության ու անասնաբուծության կուլտուրայի, գյուղատնտեսության ինտենսիվության աստիճանի բարձրացումն է:

Ն. Ս. Խրուշչովը անդրադառնալով այդ հարցին, պլենումում արտասանած իր ճառում ասաց. «...մենք պետք է այժմ գյուղատնտեսության ասպարեզում առաջ գնանք ոչ միայն լայնությամբ, այլև խորությամբ, ընթանանք ոչ միայն ցանքատարածությունները ավելացնելու ճանապարհով, այլև բերքը լավագույն ագրոտեխնիկայի արմատավորման հաշվին բարձրացնելու ճանապարհով, հասնենք աշխատանքի ավելի բարձր արտադրողականության, իջեցնենք արտադրանքի ինքնարժեքը: Ոչ թե գյուղատնտեսությունը վարելու էքստենսիվ ձևեր, որոնք հիմնված են գերազանցապես ցանքերն ընդարձակելու վրա, այլև բարձրորակ ինտենսիվ տնտեսություն, որը հողի յուրաքանչյուր հեկտարում ներդրված աշխատանքի յուրաքանչյուր միավորի դիմաց տալիս է առավելագույն քանակությամբ արտադրանք. ահա մեր ուղին»:

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի այդ ցուցումն ամբողջությամբ, թերևս ավելի մեծ չափով վերաբերում է մեր ռեսպուբլիկային, որը ցանքատարածությունների ընդարձակման չափազանց սահմանափակ հնարավորություններ ունի: Հայտնի է, որ տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, ինչպես նաև հացահատիկի արտադրության ավելացումը մեր ռեսպուբլիկայում պլանավորվում է գերազանցապես բերքատվության բարձրացման հաշվին: Սակայն մեր կոլտնտեսությունների և սովխոզների զգալի մասում գյուղատնտեսության ինտենսիվության առումով լրիվ չեն օգտագործվում եղած հնարավորությունները: Մասնավորապես դժվարությամբ են լուծվում այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ սերմնաբուծությունը, տեղական և հանքային պարարտանյութերի օգտագործումը, ցանքի պրոգրեսիվ եղանակ-

ների արմատավորումը, գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը, հողի լիարժեք օգտագործումը և այլն, և այլն:

Ռեսպուբլիկայում դեռևս դանդաղ են լուծվում նաև խոշոր եղջերավոր անասունների ցեղի բարելավման, անասունների արհեստական սերմնավորման գործի կազմակերպման, մսացու անասունների բտման ու գիրացման, անասնաբուծական մթերքների ինքնարժեքի իջեցման հարցերը: Կերի կայուն բազայի ստեղծման կարևորագույն խնդիրն իր արմատական լուծումն է պահանջում: Չնայած պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բազմիցս ցուցումներին, ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում կոլտնտեսություններն ու սովխոզները դանդաղորեն են ընդարձակում բազմամյա և միամյա խոտաբույսերի ցանքատարածությունները, սիստեմատիկաբար բերակատարում են խոտաբույսերի սերմերի կուտակման պլանները, անվճռականություն են հանդես բերում եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակման գործում, անհրաժեշտ աշխատանք չեն տանում ցանովի խոտերի և եգիպտացորենի ցանքատարածությունների բերքատվության բարձրացման ուղղությամբ: Ոչնչով չի կարելի արդարացնել այն, որ անցյալ տարվա համեմատաբար նպաստավոր պայմանների առկայության դեպքում Աղինի, Արթիկի, Ղուկասյանի, Կամոյի, Սևանի, Թալինի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները խիստ կերպով բերակատարեցին չոր և հյութալի կերի կուտակման պլանները:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի, ինչպես և ՀԿՊ Կենտկոմի պլենումները կրկին անգամ պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեցին տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարությունն ամրապնդելու անհրաժեշտության վրա: Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բազմիցս զգուշացրել է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության բարելավման կարևոր նախապայմանը կադրերի ճիշտ ընտրությունն է, գործունյա, հմուտ աշխատողների առաջադրումը որպես տնտեսությունների ղեկավարներ: Այնտեղ, որտեղ պարտիան աշխատանքի է ուղարկում հմուտ կազմակերպիչների, որպես կանոն, դրությունը կարճ ժամանակամիջոցում բարելավվում է:

Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարում խնդիր դրվեց կոնկրետ միջոցառումներ իրականացնել տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները տվյալ շրջանի առաջավոր կոլտնտեսությունների մակարդակին հասցնելու համար: ՀԿՊ մի շարք շրջկոմների կողմից այդ ուղղությամբ որոշ աշխատանք տարվեց: Սակայն պետք է ասել, որ շրջանային պարտիական կազմակերպությունները դեռևս անհրաժեշտ վճռականություն հանդես չեն բերում այդ հարցում: Վերջին ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Ղափանի և Աղինի շրջաններում կոլտնտեսությունների գերակշռող մասը շարունակում է ետ մնալ. ավելին, նրանցից շատերի 1959 թ. տնտեսական ցուցանիշները նախորդ տարվանից ցածր են:

Ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկայի զարգացումը գյուղատնտեսության արտադրանքի ավելացման կարևոր ռեզերվն է և անհրաժեշտ է, որպեսզի Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարման համար ձեռնարկվող միջոցառումների շարքում այդ հարցը պատշաճ տեղ գրավի:

Յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կենսագործելու համար անհրաժեշտ է ավելի գործնական դարձնել աշխատավորության սոցիալիստական մրցությունը, լայնորեն կազմակերպել մրցության ընթացքի և



արդյունքների լուսաբանումն ու պրոպագանդան, մշտապես նկատի ունենալ, որ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործը պետք է գտնվի ամբողջ հասարակայնության հսկողության ներքո:

Գյուղում մեծ ուժ է մեր հիանալի երիտասարդությունը: Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները որոշակի աշխատանք են տանում գյուղական երիտասարդության արտադրական խանդավառությունը գլխավորելու, առաջադրված խնդիրների լուծման գործում երիտասարդ կոլտնտեսականների ու բանվորների ակտիվ մասնակցությունն ապահովելու համար: Կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ 1959 թվականին սկսվել և այժմ լայն ծավալ է ստանում «Հարուստ հեկտարի համար» շարժումը: Մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում արդեն կան կոմունիստական աշխատանքի բրիգադներ: Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ քաղաքական և կազմակերպական աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցներն օգտագործել աշխատավորության ստեղծագործական, արտադրական խանդավառության հետագա վերելքն ապահովելու համար: Յուրաքանչյուր նորամուծություն, աշխատանքի մեթոդների կատարելագործման վերաբերյալ ամեն մի խելացի առաջարկ պետք է հետաքրքրի պարտիական կազմակերպություններին, աջակցություն և լուծում ստանա նրանց կողմից:

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը դիմավորեցին արտադրական որոշակի հաջողություններով: 1959 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում հավաքվեց այնքան խաղող, որքան չէր արտադրվել նախորդ և՛ ոչ մի տարում: Խաղողի այգիների մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 83 ցենտներ, նախորդ տարվա 50 ցենտների փոխարեն: Պետությանը հանձնվեց 95 հազար տոննա խաղող, կամ 30 հազար տոննա ավելի, քան 1958 թվականին: Ռեսպուբլիկայի ճակնդեղագործները նույնպես ստացան ռեկորդային բերք: Անցյալ տարի շաքարի ճակնդեղի պլանտացիաների բերքատվությունը կազմեց 274 ցենտներ, պետությանը հանձնվեց 101 403 տոննա շաքարի ճակնդեղ: Առաջին անգամ, վերջին մի քանի տարիների ընթացքում, կատարվեց ծխախոտի հումքի հանձնման պլանը. հունվարի մեկի դրությամբ հավաքված և պետությանն է հանձնված մոտ 105 հազար ցենտներ ծխախոտ, կամ պլանը կատարված է 102,8 տոկոսով:

Որոշ հաջողություններ են ձեռք բերվել նաև բանջարաբուծության, պտղաբուծության բնագավառներում: Հանրային անասնաբուծության համար նախորդ տարվա համեմատությամբ ավելի կուտակվեց—խոտ՝ 35,5 տոկոսով, սիլոս՝ 26,6 տոկոսով: Չնայած այն բանին, որ 1959 թվականին որոշ չափով ավելացավ անասնաբուծական մթերքների արտադրությունը, բայց այդ բնագավառում ձեռք բերված հաջողությունները չեն կարող բավարարել մեր աշխատավորությանը, դրանք չեն համապատասխանում կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ հնարավորություններին:

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը, որը կրկին անգամ ցուցադրեց մեր պարտիայի անհողդողդ վճռականությունն առաջադրված վսեմ նպատակների իրականացման գործում, բոլշևիկյան անաչառությամբ բացահայտեց մեր աշխատանքի առանձին օղակներում գոյություն ունեցող թերությունները, ամբողջ խստությամբ դրվեց պարտիական կազմակերպությունների կող-

միջ աշխատողների նկատմամբ պահանջկոտությունը ուժեղացնելու և նրանց պատասխանատվությունը բարձրացնելու հարցը:

Պլենումի որոշման մեջ մեր ռեսպուբլիկան իրավացիորեն քննադատվեց մսի արտադրության անբավարար աճի համար: 1959 թվականին մսի արտադրության աճը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմեց ընդամենը 5 տոկոս, սոցիալիստական պարտավորություններով նախատեսված 30 տոկոսի փոխարեն: Մսի արտադրության անբավարար աճը ամենից առաջ հետևանք է այն բանի, որ շրջանային պարտիական և սովետական օրգանները, կոլտնտեսությունների վարչությունները, սովխոզների դիրեկցիաները, սկզբնական պարտիական կազմակերպությունները անհրաժեշտ հաստատակամությամբ և հետևողականությամբ ձեռնամուխ չեղան այդ գործին, չօգտագործեցին գոյություն ունեցող լայն հնարավորություններն ու ռեզերվները, անհրաժեշտ կազմակերպական աշխատանք չծավալեցին ստանձնած պարտավորությունները յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում անվերապահորեն իրագործելու համար: Այդ վերաբերում է հատկապես Աղինի, Նոյեմբերյանի, Ղափանի, Թալինի, Ամասիայի, Գորիսի, Արտաշատի շրջանների պարտիական կազմակերպություններին, սովետական օրգաններին, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարությանը: Այդ շրջաններում անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, մսի արտադրությունը ոչ միայն չավելացավ, այլև նկատելիորեն պակասեց:

Առաջադրվող պահանջներին չի համապատասխանում նաև կաթի, ձվի ու բրդի արտադրության ավելացման մակարդակը:

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների խնդիրն է՝ ընթացիկ գյուղատնտեսական տարում բացահայտել և գործի դնել բոլոր հնարավորություններն ու ռեզերվները՝ անասնաբուծական մթերքների, հատկապես մսի արտադրությունը մեծ չափով ավելացնելու համար:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումը քննարկելով ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները և ռեսպուբլիկայի պարտկազմակերպությունների խնդիրները, լուրջ միջոցառումներ մշակեց գյուղատնտեսության հետագա վերելքի, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի կողմից կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրների հաջող լուծման համար:

Այս տարի լրանում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասուն տարին: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների պատվի գործն է՝ աշխատանքի հիմքում ունենալով ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները, պայքարի հանել գյուղի բոլոր աշխատավորներին՝ 1960 թվականի առաջադրանքների հաջող կատարման, յոթնամյա պլանի ժամկետից շուտ իրականացման համար:

Հայաստանի պարտիական կազմակերպությունները ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության և մյուս բնագավառներում ձեռք բերած խոշոր հաջողություններով են դիմավորում իրենց XXI համագումարը: Ամրապնդելով ձեռք բերված հաջողությունները, նրանք հետևողականորեն գործի կվերածեն այն բոլոր խնդիրները, որոնք Սովետական Միության Կոմունիստական պարտիան դրել է երկրի առջև:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՄԱԿԵՑՈՒԹՅԱՆ ԿԱՆՈՆՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՆ Է

*Բ. ՍԱՐԳԻՍՈՎ*

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

*Կոմունիստական պարտիան ղեկավարելով սովետական մեծ ժողովրդին, նրան առաջ տանելով կոմունիզմի ուղիով, իր գլխավոր խնդիրներից է համարում կոմունիստական հասարակություն կառուցողների դաստիարակումը, սովետական հասարակության յուրաքանչյուր անդամի մեջ կոմունիստական մորալի նորմերի ու կոմունիստական բարոյականության սկզբունքների առավել հետևողական և առավել խոր արմատավորումը, կոմունիզմի բարոյական ու հոգեկան նախադրյալների ստեղծումը։*

*Ինչպես սովորեցնում է պարտիան, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը հարթ չի ընթանում, այն կապված է աշխատանքի զանազան բնագավառներում եղած բազմաթիվ դժվարությունները, հակասությունները, հին սովորություններն ու բարքերը հաղթահարելու հետ։ Սոցիալիստական հասարակության մեջ դեռևս քիչ չեն հնին հատուկ բծերը։ Հնի մնացուկները առանձնապես մնում են մարդկանց գիտակցության մեջ։*

*Մարդկանց գիտակցությունից անցյալի մնացուկների վերացումը, կոմունիզմի սկզբունքներով հասարակության հոգեկան կյանքի ձևավորումը շատ դժվար և բարդ խնդիր է։ Ինչպես հայտնի է, փոփոխությունները հասարակական կեցության մեջ ավելի արագ են կատարվում, քան հասարակական գիտակցության մեջ։ Բայց սոցիալիզմի պայմաններում և պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքի շնորհիվ, գիտակցության ետ մնալու տենդենցը հաղթահարվում է և որքան ավելի հեռուն ենք գնում, այնքան ավելի մեծ չափով է տեղի ունենում դա։ Սովետական հասարակությունը ներկայումս մոտեցել է զարգացման այն սահմանին, երբ պարտիան ընդհուպ առաջադրում է անցյալի մնացուկների վերացման պատմական խնդրի լուծումը և դրա հետ միասին, լիակատար կոմունիզմի նյութական բազայի հոգեկան նախադրյալների ստեղծումը։*

*Հասարակայնության, նրա կատարելիք խոշոր դերի աճման, հարկադրանքի ոլորտների ու համապատասխան պետական ապարատի կրճատման և կառավարման մի շարք ֆունկցիաներ աստիճանաբար հասարակական կազմակերպություններին հանձնելու վերաբերյալ պարտիայի վերցրած կուրսը պայմա-*

նավորում է հասարակական կազմակերպությունների ըստ ամենայնի ակտիվացումը, հասարակական գործերի կառավարման մեջ աշխատավորներին գլխովին ներգրավելու մեծ խնդրի հաջող լուծումը, ավելի մեծ ասպարեզ է բացում կոմունիզմի կառուցման գործում սովետական մարդկանց ինքնագործունեության զարգացման համար։

Մարքսիզմ-լենինիզմի հայտնի դրույթի համաձայն, կոմունիզմը ծագում է ոչ թե տարերայնորեն, այլ բանվոր դասակարգի ղեկավարությամբ աշխատավոր մասսաների գիտակցական ստեղծագործության շնորհիվ։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր՝ «մասսաների կենդանի ստեղծագործություն — ահա նոր հասարակայնության հիմնական գործոնը»։ Լենինի այդ խոսքերը, որ վերաբերում էին թե՛ արտադրության ոլորտին, և թե՛ հոգեկան կյանքի բնագավառին, որքան ճիշտ էին հնչում ռևոլյուցիայի առաջին տարիներին, եռակի անգամ ճիշտ են հնչում նաև այժմ, երբ մենք մտել ենք պատմական զարգացման նոր դարաշրջան, կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Սովետական կարգը, որի անձեռնմխելի հիմքն է կազմում արտադրության միջոցների հանրային սեփականությունը, ամբողջ արտադրական և հասարակական գործունեության գլխավորագույն մոտիվը դարձնում է մարդկանց ընդհանուր, այսինքն՝ համաժողովրդական շահերը, այլ ոչ թե մասնավոր շահերը։ Ընդ որում, մեր հասարակարգում աշխատավոր դասակարգերին քաղաքական ու տնտեսական տիրապետության հասցնելը, նշանակում է նաև մարդկանց տիրապետության հաստատում նրանց սեփական հասարակական հարաբերությունների նկատմամբ։

Կոմունիստական պարտիան գաղափարապես և քաղաքականապես ցեմենտավորում է սովետական հասարակությունը, ի մի է համախմբում մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդներին։ Հանրագումարի բերելով սովետական հանրակարգում տեղի ունեցող նոր երևույթները, պարտիան համարձակ կերպով և ժամանակին առաջ է քաշում իրավակարգի ամրապնդման գործում հասարակայնության դերի բարձրացման խնդիրը։ Մեր սոցիալիստական հասարակայնությունը աճել և այնպիսի ուժ է դարձել, որ նա այժմ կարող է վճռական դեր խաղալ հանցագործության և սոցիալիստական օրինականության խախտողների դեմ մղվող պայքարում, դրանց ծնող պատճառների վերացման գործում։

Սակայն դրա հետ միասին, պարտիական, կոմերիտական, արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների առջև, վարչական օրգանների և բոլոր աշխատավորների առջև ծառանում է մեկ ընդհանուր խնդիր՝ առավելագույն չափով ընդլայնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ճակատը։ Անհրաժեշտ է հաղթահարել մի շարք աշխատողների մեջ բույն դրած այն սխալ պատկերացումը, թե դաստիարակչական աշխատանքով պետք է զբաղվեն միայն նրանք, ում ըստ աշխատանքի բնույթի հանձնարարված է այդ գործը։ Յուրաքանչյուրն իր աշխատանքի տեղամասում պետք է տոգորված լինի բարձր պատասխանատվությամբ մարդկանց գաղափարական դաստիարակության գործում, նկատի ունենալով, որ աշխատավորների բարձր սոցիալիստական գիտակցությունը պետական և հանրային կարգապահության ամրապնդման հիմքն է, սովետական օրենքների խստիվ պահպանման, առանձին քաղաքացիների կողմից դրսևորվող զանազան հակահասարակական երև-



վույթների նկատմամբ սովետական մարդկանց անհաշտ վերաբերմունքի հիմքը։

Այդ ընդհանուր խնդիրը մենք պետք է հետևողականորեն լուծենք մեր բոլոր կազմակերպությունների միջոցով։ Այդ մեծ գործում առկա է հասարակայնության ակտիվությունը։ Բայց, որպեսզի այդ ակտիվությունը կոնկրետ գործողության մեջ դնենք հանցագործության, հասարակական կարգը խախտողների դեմ մղվող պայքարում և ձեռք բերենք իրական արդյունք, պետք են աշխատանքի այնպիսի կազմակերպական ձևեր, որոնք հասարակայնությանը հնարավորություն կտան կոնկրետ մասնակցություն ունենալ այդ գործում։ Այդ ուղղությամբ տարվող աշխատանքի միջոցներից մեկը միլիցիայի, դատարանի և դատախազության օրգանների սերտ կապն է հասարակական կազմակերպությունների հետ, նրանց համատեղ պայքարն է հասարակական կարգի խախտողների դեմ։

ՍՄԿՊ Կենտկոմը և Սովետական կառավարությունը կարևոր միջոցներ ձեռք առան սոցիալիստական օրինականությունն էլ ավելի ամրապնդելու, սովետական քաղաքացիների իրավունքներն ու շահերը պաշտպանելու ուղղությամբ։ Լիովին վերականգնված է դեմոկրատական արդարադատության սկզբունքը. ուժեղացված է դատախազական հսկողությունը օրենքների ճշգրիտ կատարման վրա։ Միջոցներ են ձեռնարկված միլիցիայի, դատախազության, դատարանների և պետանվտանգության օրգանների աշխատանքների բարելավման ուղղությամբ։ Այդ ամենը, անտարակույս, դրական է անդրադառնում ռեսպուբլիկայի միլիցիայի, դատարանի և դատախազության օրգանների գործունեության վրա։ Ռեսպուբլիկայի վարչական օրգանները զգալի օգտակար աշխատանք են տանում հասարակական կարգը պահպանելու ուղղությամբ։

Բայց կյանքը ցույց է տալիս, որ այդ միջոցառումները դեռևս բավարար չեն։ Հասարակական կարգի խախտումներն ու քրեական հանցագործությունները դեռևս մնում են մեր ռեսպուբլիկայում։ Դեռևս կան զանազան հակահասարակական որոշ պորտաբույծ տարրեր, որոնք անարժան վարքագիծ ունեն, զբաղվում են սոցիալիստական սեփականության և քաղաքացիների գույքի հափշտակությամբ, կատարում են խուլիգանական արարքներ և այլ հանցագործություններ։

Երկար տարիներ հանցագործությունների ու հասարակական կարգի խախտումների դեմ պայքարը մղվում էր գլխավորապես վարչական միջոցներով՝ միլիցիայի օրգանների, դատախազության և դատարանի միջոցով, առանց աշխատավորների ակտիվ մասնակցության և առանց հասարակական կազմակերպությունների բավարար օգնության։ Չժխտելով այն մասին, որ դա մեծ արդյունք չէր տալիս, դրա հետ միասին մենք հաճախ ականատես էինք այն բանին, երբ բնակչությունը, արդարացիորեն վրդովվելով կատարված այս կամ այն հանցագործության առթիվ, հաճախ այդ վրդովմունքն արտահայտում էր միլիցիայի օրգանների կամ վարչական օրգանների նկատմամբ։ Մեզանից ո՞վ չի լսել այսպիսի բացականչություններ՝ «Հապա ո՞ւր է միլիցիան, ինչո՞վ է զբաղված նա»։ Բայց չէ՞ որ պարզ է, որ հասարակական կարգը խանգարող, կամ հանցագործություն կատարող մարդը, որպես կանոն, ինչ-որ տեղ աշխատում է, որևէ կոլեկտիվի մեջ է, որևէ սկզբնական արհմիութենական, կոմերիտական և նույնիսկ պարտիական կազմակերպության անդամ է։ Բայց շա՞տ անգամ ենք արդյոք նման հարցեր ուղղել ոչ այնքան մի-

լիցիային, որքան կոլեկտիվներին, կազմակերպություններին, դրանց ղեկավարներին։ Արդյոք շա՞տ դեպքեր կգտնենք, երբ պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները այս կամ այն ձեռնարկությունների կամ հիմնարկների ղեկավարների ուշադրությունը հրավիրած լինեն այն բանի վրա, որ նրանց կոլեկտիվներում կան սոցիալիստական համակեցությունը խախտողներ։ Նույնը կարելի է ասել կոմերիտմիության շրջկոմների, արհմիության ռեսպուբլիկական կոմիտեների մասին։ Այդպիսի փաստեր, դժբախտաբար, շատ կան։

Այս բոլորն ասվում է ոչ թե նրա համար, որ վարչական օրգաններին պաշտպանենք քննադատությունից և ոչ էլ նրա համար, թե ինչու է բնակչությունը վրդովվում հասարակական կարգի այս կամ այն խախտման առթիվ, այլ նրա համար է ասվում, որպեսզի ցույց տրվի, թե վերջերս էր, որ բնակչության այդ արդարացի վրդովմունքը անհրաժեշտ հունի մեջ չէր դրվում, խախտում կատարողների նկատմամբ այդ վրդովմունքը հասարակական ներգործության, կոլեկտիվների դաստիարակչական ուժի չէր վերածվում և, վերջապես, այս ամենն ասվում է, որպեսզի կոլեկտիվների անդամների վարքագծի համար բարոյական պատասխանատվության զգացումով տոգորվեն այն ղեկավարները, որոնց հանձնարարված է այդ կոլեկտիվների վարումը և դաստիարակությունը։

Այսպիսի իրադրություն մենք պահանջվող չափով դեռ չենք կարողացել ստեղծել։ Այդ բանում մեծ մեղք ունեն միլիցիայի և դատական-դատախազական օրգանները, որոնք հաճախ մոռանում են, թե որքան կարևոր է ձեռք-ձեռքի տված գործել հասարակական կազմակերպությունների հետ, իրավախախտումներ կատարողների դեմ մղվող պայքարում առավելագույն չափով օգտագործելով հասարակական կարծիքի ուժը, կոլեկտիվի ուժը։ Նման վերաբերմունքը հասցրել է այն բանին, որ միլիցիայի, դատական և դատախազական օրգանները ձգտում էին խախտումներ կատարողների նկատմամբ կիրառել քրեական պատժի միջոցներ, գլխավորապես՝ ազատազրկման ձևով։ Դրա հետևանքով դատվում են նույնիսկ այնպիսի անձինք, որոնք առաջին անգամ կատարել են աննշան, սոցիալական վտանգավորություն չներկայացնող իրավախախտումներ և որոնց կարելի էր դաստիարակել առանց հասարակությունից մեկուսացնելու։

Չի կարելի նորմալ համարել այն, երբ կոլտնտեսականներին և կոոպերատիվ այլ կազմակերպությունների անդամներին դատական պատասխանատվության են ենթարկում այնպիսի հանցագործությունների համար, որոնք կապված են կոլտնտեսությունների ու կոոպերատիվ արտելների արտադրական-տնտեսական գործունեության հետ։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ տվյալ դեպքում տուժողը կոլտնտեսությունն է կամ որևէ այլ կոոպերատիվ կազմակերպություն, հետևապես և վնասի հատուցման ու մեղավոր անձանց նկատմամբ ներգործության միջոցի բնույթի հարցը նախ և առաջ պետք է իրենց ժողովներում լուծեն հենց իրենք կոլտնտեսականները կամ կոոպերատիվ կազմակերպությունները։ Մինչդեռ նման գործերը, որպես կանոն, լուծում են դատական-դատախազական և վարչական օրգանները, հաճախ նույնիսկ առանց արտելի անդամների գիտության։

Այնտեղ, ուր այդ դրույթը չի խախտվել, գործերը վատ չեն։ Օրինակ, անցյալ տարվա աշնանը Գորիսի շրջանի Խանածախ գյուղի կոլտնտեսության ղեկավարությունը հրավիրել է կոլտնտեսականների ընդհանուր ժողով, որտեղ



արտելի նախագահ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Բաղդասարյանը կոնկրետ օրինակներով պատմել է, որ առանձին կոլտնտեսականներ իրենց պահում են անվայել, զբաղվում են մանր հափշտակություններով, և հարցը դրել է այսպես՝ բարիքը ընդհանուր կոլտնտեսությանն է, այդ բարիքի տերերը դուք, կոլտնտեսականներդ եք, դուք էլ վճռեցեք՝ առաջին, մեր կոլտնտեսային բարիքի պաշտպանության հարցը, երկրորդ, ինչպե՞ս վարվել նրա հետ, ով անվայել արարք է կատարում և գողանում է հենց իր ընկերոջից։ Ժողովը միահամուռ կերպով և խստորեն դատապարտել է խախտում կատարողների վարքագիծը և որոշել է նրանց նկատմամբ դատաքննչական օրգաններին չդիմել։ Այդպիսի միջացառումը լուրջ ազդեցություն է թողել։ Մինչև այժմ այդ կոլտնտեսությունում ոչ մի հակահասարակական երևույթ չի նկատվել ոչ նրանց կողմից ովքեր դատապարտվել են, ոչ էլ որևէ մեկի կողմից։

Վերջին տարիներս դատական պրակտիկայում սկսել են չհիմնավորված կերպով սակավ կիրառել այնպիսի փորձված միջոցներ, ինչպես պայմանական դատապարտումն է, մեղավորներին աշխատավորների երաշխավորությանը հանձնելը՝ նրանց վերադաստիարակելու համար։

Սովետական դեմոկրատիայի զարգացման նոր պայմաններում, երբ անսահմանորեն աճել է հասարակայնության դերն ու ազդեցությունը մեր կյանքի շատ հարցերի լուծման գործում, պարտիան և կառավարությունը ձեռնարկել են մի շարք միջոցներ, որոնք նպատակ ունեն ուղղելու քաղաքացիների նկատմամբ դատական ռեպրեսիայի կիրառման գործում թույլ տված սխալները։

Ռեսպուբլիկայի վարչական օրգանները, կատարելով պարտիայի ցուցումները, վերակառուցում են իրենց աշխատանքը։ Նրանք սկսել են ավելի մեծ ուշադրություն դարձնել նախազգուշական-պրոֆիլակտիկ աշխատանքին։ Վերջին ժամանակներս ավելի ու ավելի լայն տարածում է ստանում իրավախախտում կատարողներին երաշխավորությամբ հասարակական կազմակերպություններին ու աշխատավորների կոլեկտիվներին հանձնելու պրակտիկան՝ նրանց վերադաստիարակելու և ուղղելու նպատակով։ 1959 թվականի օգոստոս ամսից մինչև տարվա վերջը միլիցիայի օրգանները հասարակական կազմակերպությունների ու աշխատավորների կոլեկտիվների դաստիարակությանն են հանձնել որոշ մարդկանց, որոնց նկատմամբ քրեական գործ էր հարուցվել, կամ նյութեր են եղել։ Նույն ժամանակամիջոցում ժողովրդական դատարանները կոլեկտիվներին են հանձնել 331 մարդու։ Պայմանական դատապարտվածների թիվը 1959 թվականի 9 ամսում մոտ երկուս ու կես անգամ աճել է, 1958 թվականի նույն ժամանակի համեմատությամբ։

Այն մարդկանց ճնշող մեծամասնությունը, որոնց վերցրել են երաշխավորությամբ, իրենց աշխատանքային ընկերների ազդեցության տակ ուղղվում են։ Վերջին ամիսների ընթացքում Ստալինյան շրջանի քննչական օրգանները կոլեկտիվների քննարկմանն են հանձնել իրավախախտումներ կատարող 62 մարդու գործ։ Այդ ժամանակաշրջանում նրանցից և ոչ մեկը իրավախախտում չի կատարել։ Պետք է ասել, որ կոլեկտիվների ժողովներում իրավախախտում կատարող անձանց հարցերի քննարկումը հաճախ տվյալ կոնկրետ անձով չի վերջանում, այլ նպաստում է նաև բացահայտելու այն կոնկրետ հանգամանքներն ու որոշ աննորմալությունները, որոնք այս կամ այն չափով նպաստում են իրավախախտումների առաջացմանը։

*Մարդու մեջ, նույնիսկ վատ մարդու մեջ, նախ և առաջ պետք է տեսնից նրա ուժեղ կողմերը, որպիսիք, անշուշտ, կան նրա մեջ նույնիսկ սաղմնային վիճակում. չափսոսալ ժամանակը «չարչարվելու» համար ամեն մի մարդու վերաբերմամբ, որը դժբախտության մեջ է ընկել կամ պատահարար շեղվել է, օգնել նրան զարգացնելու իր ուժեղ հատկությունները և վերադառնալու ուղիղ ճանապարհ, նրան դնել ընկերների պահանջկոտ վերահսկողության տակ, փորձել նրան կոլեկտիվի վստահությամբ: Դա էլ հենց մարդու մեջ լավագույնի համար մղվող պայքար է: Այլ կերպ ասած, նույնիսկ խիստ պատիժը պետք է կիրառել ոչ թե նրա համար, որպեսզի մարդուն ծունկի իջեցնել, այլ նրա համար, որպեսզի նրան բարձրացնել և ամուր կերպով ոտքի կանգնեցնել:*

*Այսպիսով, հանցագործությունների և հասարակական կարգի խախտումների դեմ մղվող պայքարում հասարակայնության դերի բարձրացման կարևոր և գործարար ձևերից մեկը աշխատավորների կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների ներգրավումն է՝ անմիջականորեն մասնակցելու այն անձանց վերաբերյալ գործերի քննարկմանը, որոնք կատարել են հասարակական մեծ վտանգավորություն չներկայացնող հանցագործություններ:*

*Մեր խնդիրն է այդ ուղղությամբ սկսված աշխատանքը ավելի ու ավելի լայնորեն ծավալել:*

*ՆԳՄ, դատարանի ու դատախազության օրգանները, նրանց աշխատողները կոչված են մեծ դեր խաղալու այս գործում: Այդ նպատակով պարտիական օրգանները պետք է ուժեղացնեն պարտիական ղեկավարությունն այդ օրգանների նկատմամբ, զգալիորեն ավելի մեծ ուշադրություն դարձնեն այդ հիմնարկների աշխատողների ընտրությանն ու դաստիարակմանը: Վարչական օրգանները պետք է որքան հնարավոր է արագ և ըստ ամենայնի վերակառուցեն իրենց աշխատանքը նոր պահանջների լույսի տակ, որպեսզի յուրաքանչյուր աշխատող պարզ կերպով հասկանա, որ ներկայումս նրանից պահանջվում է աշխատանքի բարձր որակավորում, մեծ էրուդիցիա և քաղաքական հասունություն այն բանի համար, որ չսխալվի և իրավախախտում կատարողների նկատմամբ ճիշտ որոշի պատժի կամ ներգործության համապատասխան միջոցը:*

*Պարտիական օրգանները կոչված են հետևելու այն բանին, որ իրավախախտումներ կատարողների նկատմամբ հասարակական ներգործության միջոցների լայն կիրառման գործում թույլ չտրվեն սխալներ ու աղավաղումներ, որ աշխատավորների կոլեկտիվները մեծ պատասխանատվությամբ մոտենան երաշխավորություն տալուն և խախտումներ կատարողների վերադաստիարակմանը:*

*Հանցագործություններն ու այլ խախտումները խափանելու և կանխելու գործի նկատմամբ հասարակայնության դերը բարձրացնելու և նրան լայնորեն ներգրավելու կարևոր, կյանքի կողմից արդեն ստուգված կազմակերպական ձևը հասարակական կարգի պաշտպանության գծով ժողովրդական կամավոր դրուժինաներն են:*

*Այն պահից, երբ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը, ընդառաջելով աշխատավորների բազմաթիվ ցանկություններին, որոշում ընդունեցին ժողովրդական դրուժինաներ ստեղծելու մասին, մեկ տարի էլ չի անցել: Ժամկետը համեմատաբար կարճ է, բայց բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների, սովորող երիտասարդության ամենաակտիվ աջակցության*



*շնորհիվ, աշխատավորների այդ ինքնագործ կազմակերպության նկատմամբ ցուցաբերվող մեծ հետաքրքրության շնորհիվ մեր ռեսպուբլիկայում, ինչպես և երկրում ամենուրեք, կարճ ժամկետում կազմակերպվեցին ժողովրդական դրուժինաներ: Մեզանից յուրաքանչյուրը հիշում է, թե ինչպիսի ակտիվությամբ ու աշխուժությամբ, ընտանիքների անդամների մասնակցությամբ լեփլեցուն դահլիճներում ինչպես էին անցնում աշխատավորների կոլեկտիվների ժողովները, որտեղ առանձնացվում էին դրուժինաների ջոկատներ:*

*Ներկայումս ռեսպուբլիկայում հաշվվում է ժողովրդական դրուժինաների 1123 ջոկատ, որոնց մեջ ներգրավված են 21 հազար դրուժիննիկներ: Դրուժինաների քաղաքային ու շրջանային շտաբները, որպես կանոն, գլխավորում են պարտիայի քաղկոմների ու շրջկոմների երկրորդ քարտուղարները:*

*Միլիցիայի օրգանների հետ դրուժինաների համատեղ աշխատանքը զգալի չափով օգնում է ռեսպուբլիկայի քաղաքներում ու շրջաններում հասարակական կարգի պահպանմանը: Ժողովրդական դրուժինաների աշխատանքում առավել էֆեկտիվության հասնում են այն ժամանակ, երբ անհապաղ հասարակական կամ ներգործության այլ համապատասխան միջոցներ են ձեռք առնում կարգը խանգարողների նկատմամբ: Ուշադրության արժանի է Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի ժողովրդական դրուժինայի ջոկատի աշխատանքը. հասարակայնությանն այդ գործում ներգրավելու շնորհիվ գյուղում վերջին ամիսներին չեն եղել հասարակական կարգի որևէ նշանակալի խախտում կամ քրեական հանցագործության նշաններ:*

*ԿԱՆԱԶ գործարանի պարտիական կազմակերպությունը խելամիտ է մոտեցել դրուժինաների կազմի ընտրությանը: 56 դրուժիննիկներից 29-ը ՍՄԿՊ անդամ են. 30-ը բանվորներ, 26-ը ինժեներա-տեխնիկական աշխատողներ: Նրանց մեծ մասը սրտանց են մոտենում իրենց պատվավոր հասարակական պարտականությունների կատարմանը, ջանասիրությամբ են հետևում կարգի պահպանմանը իրենց կողմից սպասարկվող գոտում: Գործին բարեխիղճ մոտեցում են ցուցաբերում Կլարա Ցետկինի անվան առաջին կարի ֆաբրիկայի, Էջմիածնի շրջանի Սամաղար գյուղի դրուժիննիկները և շատ ուրիշներ:*

*Բայց, դժբախտաբար, պետք է ասել, ամենևին էլ բոլոր տեղերում չէ, որ ունենք այդպիսի դրական աշխատանք: Օրինակ, գործերը բարեհաջող չեն Երևան քաղաքում, որի մասին խոսվեց պարտիայի քաղկոմի վերջերս տեղի ունեցած պլենումում: Եթե պարտիական բոլոր կազմակերպությունները ժողովրդական դրուժինաների վերաբերմամբ աշխատանքը շարունակեին այնպիսի եռանդով, որով սկսեցին նրանք դրուժինաների կազմակերպումը, ապա քաղաքում հասարակական կարգի պահպանման գործը, անտարակույս, շատ լավ կլիներ:*

*Դրուժիննիկների աշխատանքի դրվածքը չի փայլում նաև Հոկտեմբերյանի, Ղափանի, Թալինի, Վեդու և Ազիզբեկովի շրջաններում:*

*Հասարակական կարգի պահպանման գծով տարվող աշխատանքում հասարակայնությանը ներգրավելու մյուս կարևոր կազմակերպական ձևը, ինչպես հայտնի է, ընկերական դատարաններն են, որոնք ընտրվում են ձեռնարկություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում, հիմնարկներում և տնային կառավարչություններին կից: Այդ դատարանները նշանակալի դեր ունեն իրավախախտումները կանխելու, սոցիալիստական համակեցության կանոնները խստիվ պահպանելու գործում:*

Ընկերական դատարանների օրինակելի կանոնադրության նախագծում նախատեսվում է զգալի չափով լայնացնել նրանց ֆունկցիաներն ու իրավունքները։ Ընկերական դատարանները գլխավորապես քննարկում էին այնպիսի գործեր, որոնք կապված էին աշխատանքային ու արտադրական կարգապահության խախտումների, պետական գույքի նկատմամբ անխնամ վերաբերմունք ցուցաբերելու հետ։ Նոր Կանոնադրության նախագծով ընկերական դատարանների քննությանը ենթակա են այնպիսի գործեր, ինչպես հասարակայնորեն օգտակար աշխատանքից խուսափումը, պորտաբույծ կյանք վարելը, առանձին ծնողների կողմից իրենց երեխաների դաստիարակման գծով պարտականությունների չկատարումը, զառամյալ ծնողներին օգնություն ցույց չտալը։ Ընկերական դատարանները կարող են պատասխանատվության կանչել զրպարտիչներին ու բանսարկուներին, այնպիսի անձանց, որոնք զբաղվում են խուլիգանությամբ, հարբեցողությամբ, մանր սպեկուլյացիայով, բնակիչների հանգիստը խանգարելով։

Ինչպես տեսնում եք, հարցերի շրջանակը բավականաչափ լայն է և ընդգրկում է քաղաքացիների կյանքի ու կենցաղի շատ կողմեր։ Այստեղ շատ կարևոր է խուսափել ֆորմալիզմից, հասնել այն բանին, որ ընկերական դատարանի աշխատանքին հնարավորին չափ մեծ թվով աշխատավորներ մասնակցեն, որ այդ դատարաններին ակտիվորեն օժանդակեն պարտիական և արհմիութենական կազմակերպությունները, պարտիայի շրջկոմներն ու քաղկոմները, արդարադատության աշխատողները։

Մինչդեռ ամենուրեք չէ և բոլորը չէ, որ ընկերական դատարանները դիտում են որպես կարևոր դաստիարակչական միջոց։ Առանձին ղեկավարներ առաջվա նման բացահայտ նախապատվություն են տալիս վարչական միջոցներին։ Օրինակ, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ղեկավարները հավատացած են այն բանում, թե հրամանները մոգական ուժ ունեն։ Այստեղ աշխատողներին չափազանց շատ են վարչական տույժերի ենթարկում, ընդ որում, որքան էլ դա տարօրինակ է, խախտում կատարողներից և ոչ մեկը կոլեկտիվի առաջ, ընկերական դատարանի առաջ պատասխան չի տվել։ Ֆրեզերային հաստոցների գործարանը շարք է մտել դեռևս 1958 թվականի կեսերին։ Սակայն այնտեղ մինչև հիմա էլ ընկերական դատարան ընտրված չէ։ Բայց ահա ավտոպահեստամասերի գործարանում կարծես թե դատարանի կազմ ընտրված է, բայց ինչ օգուտ դրանից, երբ անցել է մեկ ամբողջ տարի, սակայն ձեռնարկության ընկերական դատարանը գրեթե անգործության է մատնված ճիշտ այնպես, ինչպես և Կիրովականի կարի գործարանում և այլ տեղերում։ Եվ այդ բոլորը ոչ թե այն պատճառով, որ անելու բան չկա, այլ այն պատճառով, որ առանձին ղեկավարներ դեռևս հին ձևով են մտածում, թերագնահատում են կոլեկտիվի, հասարակայնության դաստիարակչական նշանակությունը, իսկ պարտիական կոմիտեները նրանց չեն ուղղում։

Չէ որ հայտնի է, որ ոչ մի բան իսկույն ևեթ այնպիսի ուժեղ դաստիարակչական ներգործություն չի ունենում, ինչպես կոլեկտիվի, աշխատանքի, ուսման, բնակության վայրի ընկերների կարծիքը։ Հայտնի են նաև ոչ քիչ դեպքեր, երբ զանցանքներ կատարած մարդիկ գերադասում են պատժվել վարչական կարգով, միայն թե խուսափեն կոլեկտիվում քննարկման ենթարկվելուց։ Պետք է գործն այնպես դնել, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, խոշոր հիմնարկում ստեղծվի ընկերական դատարան։ Շըր-



ջանային Սովետների գործկոմները, պարտիայի շրջկոմները պետք է հոգ տանեն նաև այն մասին, որ յուրաքանչյուր տնային կառավարչության կից գործի ընկերական դատարան։

Ընկերական դատարանների աշխատանքների բարելավման գործում առանձնապես ակտիվ դեր պետք է խաղան արհմիութենական կազմակերպությունները։ Ինչպես ասում են, այստեղ խաղաթուղթը նրանց ձեռքումն է։ Ընկերական դատարանների միջոցով նրանք կարող են զգալի չափով ուժեղացնել աշխատավորների դաստիարակման գծով տարվող իրենց աշխատանքը։

Պարտիայի քաղկոմների ու շրջկոմների, պարտիական բոլոր կազմակերպությունների խնդիրն է մշտապես ղեկավարել ժողովրդական դրուժինաների և ընկերական դատարանների աշխատանքը, ընդլայնել նրանց գործունեությունը, անհետաձգելի միջոցներ ձեռք առնել ժողովրդական դրուժինաների և դատարանների կազմն է՛լ ավելի ամրապնդելու առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, երիտասարդության թվին պատկանող հեղինակավոր մարդկանցով, կազմակերպել դրուժիննիկների պրակտիկ ուսուցումը։ Քաղկոմների և շրջկոմների բյուրոներում սիստեմատիկաբար քննարկել դրուժինաների շտաբների ու ընկերական դատարանների աշխատանքի հարցերը և տարածելով նրանց դրական փորձը, պարտիայի սկզբնական կազմակերպությունների ժողովներում ու աշխատավորների կոլեկտիվների ժողովներում պրակտիկա դարձնել ժողովրդական դրուժինաների ջոկատների ղեկավարների, ընկերական դատարանների նախագահների զեկուցումները լսելը, նպատակ ունենալով սիստեմատիկաբար ուղղություն տալ նրանց աշխատանքին և այդ աշխատանքը դնել պարտիական կազմակերպությունների ու հասարակայնության վերահսկողության տակ, այն հաշվով, որպեսզի հասարակական ներգործության այդ կենսական ձևերն ու միջոցները ամենալայն չափերով տարածվեն։

Քաղաքացիների անձնական գույքի փողությունների արմատախիլ անելու համար մղվող պայքարի միջոցներից մեկը բնակկառավարչությունների աշխատանքի արմատական բարելավումն է, դրանց միջոցով բնակիչների ներգրավումը այդ գործում։ Քաղկոմներն ու շրջկոմները պետք է մտածեն տնային կառավարչություններին կից ըստ հնարավորության պարտիական կազմակերպություններ ստեղծելու մասին, որոնք պետք է լուրջ դեր խաղան աշխատավորության կոմունիստական դաստիարակության և սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման գործում։

Հարկ չկա ապացուցելու, թե հանցագործության դեմ մղվող պայքարում ինչպիսի նշանակություն ունի այն անձանց ճիշտ դաստիարակումը, որոնք պատիժը կրել են կալանավայրերում. այդ մարդկանց ժամանակին աշխատանքի տեղավորելը նրանց դաստիարակման կարևոր պայմաններից մեկն է։

Ռեսպուբլիկայի ՆԳՄ աշխատողները կալանավայրերում քիչ աշխատանք չեն տանում դատապարտյալների վերադաստիարակման ուղղությամբ, նրանց վերադարձնելով դեպի ազնիվ ճանապարհ և աշխատանքային կյանքի։ Ուստի անհրաժեշտ է ուժեղացնել հասարակական կազմակերպությունների ազդեցությունը պատիժը կրած անձանց վերադաստիարակելու գործում։ Այդ բանն անել կարելի է նախ և առաջ աշխատավորների դեպուտատների Սովետների գործկոմներին կից հսկող հանձնաժողովների գործունեությունն աշխուժացնելու և ուղղիչ-աշխատանքային հիմնարկների նկատմամբ ձեռնարկու-

թյունների ու կազմակերպությունների կոլեկտիվների շեֆական աշխատանքն աշխուժացնելու միջոցով։

Անհրաժեշտ է, որ շրջանային ու քաղաքային պարտիական կազմակերպությունները ուղղիչ-աշխատանքային հիմնարկների նկատմամբ Կիրովի անվան գործարանի և Քաջարանի պղնձի-մոլիբդենի կոմբինատի կոլեկտիվների շեֆական աշխատանքի փորձը փոխանցեն մյուս աշխատանքային կոլեկտիվներին։ Կիրովի անվան գործարանի պարտիական կոմիտեն, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները ուղղիչ աշխատանքային № 1 գաղութի քաղաշխատողներին ամենօրյա օգնություն են ցույց տալիս կուլտմասսայական աշխատանքն ուժեղացնելու, դատապարտվածներին վերադաստիարակելու գործում։ Գործարանի աշխատողները սիստեմատիկաբար զրույցներ են անցկացնում կալանավորների հետ։ Գործարանային ինքնագործունեության խմբակը հաճախ ելույթ է ունենում կալանավորների առջև, խմբակի ղեկավարը շեֆության կարգով պարապմունքներ է անցկացրել կալանավորների գեղարվեստական ինքնագործունեության խմբակի հետ։ Կոմպոզիտորների միության առաջավոր կոմպոզիտորները, միության նախագահ Միրզոյանը լինում են կալանավորների մոտ։ Այդ կոլեկտիվների շեֆական աշխատանքը պետք է ամեն կերպ խրախուսել և տարածել։

Դատապարտվածների վերադաստիարակման գործը չի ավարտվում այն պահին, երբ նրանք դուրս են գալիս կալանավայրից։ Նրանց վերադաստիարակման գծով տարվող աշխատանքը պետք է անպայման շարունակվի աշխատողների այն կոլեկտիվներում, ուր աշխատանքի են անցնում պատիժը կրած անձինք։ Պարտիական կազմակերպությունները պետք է բոլոր միջոցները ձեռք առնեն, որպեսզի պատիժը կրած անձինք ժամանակին աշխատանքի տեղավորվեն, ընտանիք կազմեն, վերստին կարգավորեն իրենց կյանքը։

Մենք ունենք շատ ձեռնարկությունների, հիմնարկների այնպիսի ղեկավարներ, որոնք պարտիական և պետական մոտեցում են ցուցաբերում այդ գործին։ ԿԱՆԱԶ-ի դիրեկտոր ընկ. Հ. Դովլաթյանը և գործարանի պարտբյուրոյի քարտուղար ընկ. Կ. Հունանյանը անցյալ տարի գործարանում աշխատանքի տեղավորեցին կալանքից ազատված, դանկահարության և խուլիգանության համար մի քանի անգամ դատապարտված քաղաքացի Գ.-ին։ Նրան տեղավորեցին գործարանի հանրակացարանում, օգնեցին որակավորում ձեռք բերելու, և, ինչպես ասվում է, բանը հաջող է գնում։ Որոշ ժամանակ անց աշխատանքի ընկերները նրան խորհուրդ տվին ամուսնանալ։ Փորձնական-կավահողային ցեխի բանվորների միջամտությամբ գործարանի ղեկավարությունը նրան բնակարան տվեց, և նա ամուսնացավ։ Գործարանի ղեկավարության բնութագրմամբ Գ.-ն այժմ ցեխի լավագույն աշխատողներից ու ակտիվ ընկերներից մեկն է և ընտանիքի լավ հայր։

Քաջարանի կոմբինատի դիրեկցիան 1958 թվականի ընթացքում Ուղղիչ աշխատանքային գաղութից ազատված 68 մարդու տեղավորել է աշխատանքի, որոնց մեծ մասը մինչև օրս էլ աշխատում է կոմբինատում։

Այդ ամենը արժանի է մեծ հավանության։ Բայց դրա հետ միասին հարկավոր է խիստ կերպով դատապարտել այն ընկերների վարքագիծը, որոնք դրսևորում են անտարբերություն, իսկ հաճախ ինքնապահովագրման նպատակով պատիժը կրած մարդկանց աշխատանքի տեղավորելու գործում ստեղծում են զանազան խոչընդոտներ։



Այդ կապակցությամբ պետք է ասել, որ Երևան քաղաքի պարտակտիվի ժողովներից մեկում առաջարկություններ արվեցին այն մասին, թե կոլեկտիվները պետք է դարձնել օրինակելի, զերծ որևէ զանցանքից։ Բայց ասվեց նաև, որ այդ բանը պետք է անել ամենևին էլ ոչ այն հաշվով, որ խախտում թույլ տվողները հեռացվեն, կամ չվերընդունվեն։ Այլապես դա սխրագործություն չէ։

Մենք պետք է գործն այնպես տանենք, որ դպրոցներն ավարտած երիտասարդությունը լավ աշխատի գործարաններում, կառույցներում, սովխոզներում, կոլտնտեսություններում, ակտիվ կերպով ներգրավվի հասարակական օգտակար գործունեության մեջ, որպեսզի և ոչ մի դպրոցավարտ առանց գործի չմնա։ Դրա համար հարկավոր է, որ պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները սկզբնական պարտիական և կոմերիտական կազմակերպությունների, դպրոցների ղեկավարության, ծնողական կոմիտեների, տնային կառավարչությունների և այլ հնարավոր միջոցներով ստույգ կերպով գիտենան, թե շրջանավարտներն ինչպես են տեղավորվել աշխատանքում, ով է մնացել առանց աշխատանքի և ինչու, միջոցներ ձեռք առնեն դրանց աշխատանքի տեղավորելու համար։

Պետք է ասել նաև այն, որ երբ այս կամ այն ձեռնարկությունը կամ կոլտնտեսությունը արտադրական պլանը չի կատարում, ապա նրանց ղեկավարներն իրենց վատ են զգում, երբ այդ մասին նրանց հարցնում են, առանձնապես, երբ պարտիական օրգաններն են հարցնում։ Դա լավ է, այդպես էլ պետք է։ Բայց վատ է, որ նույն այդ ղեկավարները երբեք վատ չեն զգում, երբ նրանց ղեկավարած կոլեկտիվների որոշ անդամներ հանցանք են կատարում և քրեական պատասխանատվության ենթարկվում։ Դրա գլխավոր պատճառը այն է, որ պարտիական օրգանները հաճախ դրա համար բացատրություն չեն պահանջում։

Հետևությունը պարզ է՝ ղեկավարների գործունեության գնահատականը պետք է ընդլայնել, պետք է բարձրացնել նրանց պատասխանատվությունն այն բոլոր ընկերների կոմունիստական դաստիարակության համար, որոնք նրանց արտադրական կոլեկտիվի անդամներն են։

Պետք է վերացնել հանցագործությունների նաև այնպիսի պատճառները, երբ հաճախ ծնողները, այդ թվում կոմունիստները, անհոգ, երբեմն հանցավոր անփութությամբ են վերաբերվում իրենց երեխաների դաստիարակման գործին։ Երեխաների ու երիտասարդների զանցանքները հաճախ ծագում են այն բանի հետևանքով, որ ծնողները նրանց վրա ամենօրյա բարերար ազդեցություն չեն գործում։

Պետք է բարձրացնել հասարակության յուրաքանչյուր անդամի դերը պատանի քաղաքացիների դաստիարակման գործում, հասարակության հանդեպ բարձրացնել ծնողների պատասխանատվությունը իրենց երեխաների դաստիարակման, նրանց վարքագծի ու զանցանքների համար։

Ժամանակն է մեկընդմիշտ վերացնել մի շարք վայրերում եղած այն երևույթները, երբ պարտիական կազմակերպություններն անտարբեր են վերաբերվում դեպի այն կոմունիստները, որոնք թույլ են տվել հակահասարակական արարք կամ խախտել են օրենքները, երբ նրանց վարքագիծը նույնիսկ չի քննարկվում պարտիական ժողովներում։ Անհրաժեշտ է, նաև, որ Հայաստանի ԼԿԵՄ քաղկոմներն ու շրջկոմները, արհմիությունների ռեսպուբլիկական կոմիտեներն սկզբնական կազմակերպություններում անհանդուրժողության մթնո-

*լորտ ստեղծեն հակահասարակական արարք թույլ տված յուրաքանչյուր կոմերիտականի և արհմիության անդամի նկատմամբ։*

*Հանցագործությունն ու հակահասարակական արարքները լիովին արմատախիլ անելու գործում մեծ ավանդ կարող են մտցնել մեր գրողները, նկարիչները, դերասանները, կինեմատոգրաֆիայի և մամուլի աշխատողները։*

*Կյանքը հարստացրել և է՛լ ավելի կհարստացնի նրանց ստեղծագործությունը բազմաթիվ նոր, հուզող թեմաներով, որոնցում հարկավոր է բոլոր գույներով բացահայտել կոմունիստական բարձր բարոյականությամբ տոգորված մարդուն, կոմունիզմի մարդու ձևավորման համար պարտիայի աշխատանքի, ամբողջ հասարակայնության ակտիվ օգնությամբ նրա մղած պայքարի վիթխարի մասշտաբները։ Պետք է այս թեմաները բազմակողմանիորեն բացահայտել գրական երկերում, կինոֆիլմերում, ներկայացումներում, ակնարկներում և հոդվածներում։*

*Լայն հասարակայնության ներգրավումը հանցագործության դեմ մղվող պայքարի մեջ ամենևին չի նշանակում, թե պետք է ներողամտաբար վերաբերվել կարգը խանգարողների նկատմամբ, ոչ էլ հանցագործության դեմ մղվող պայքարի թուլացում է նշանակում։ Ով այդպես հասկանա, նա կարող է վնաս հասցնել այն մեծ քաղաքական ու պետական գործին, որը ծավալում է պարտիան։ Նշված միջոցառումները ենթադրում են պայքարի ուժեղացում հանցագործության և հասարակական կարգը խախտողների դեմ, մի պայքար, որը մղվում է լայն հասարակայնության ակտիվ օգնությամբ, ակտիվ միջոցների կոլեկտիվ ներգործությամբ այն մարդկանց նկատմամբ, որոնք սխալ ճանապարհ են բռնել, բայց կարող են ուղղվել։ Դրա հետ միասին չարամիտ հանցագործները, որոնք դաստիարակման չեն ենթարկվում, չեն ցանկանում ազնվաբար աշխատել, նրանք, ովքեր կատարում են առանձնապես վտանգավոր հանցագործություններ, ինչպես և նրանք, ովքեր խախտում են ընկերների վստահությունը և կանգնում հանցավոր ճանապարհի վրա, պետք է սովետական օրենքներով սահմանված խիստ պատիժ կրեն։*

*Անհրաժեշտ է, որ պարտիայի քաղկոմները, շրջկոմները, սկզբնական պարտիական կազմակերպությունները գլխավորեն հասարակայնության ակտիվությունը և նրանց պայքարի հանեն այն բանի համար, որ յուրաքանչյուր ձեռնարկություն և հիմնարկություն, յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ, շրջան և քաղաք ունենան օրինակելի հասարակական կարգ։*

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԻ ԷՋ

(ՌԿՊ Հայաստանի կազմակերպությունների առաջին կոնֆերենցիայի քառասնամյակի առթիվ)

*Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*Քառասուն տարի առաջ, հունվարի 18—19-ին Երևանում իրենց առաջին կոնֆերենցիային հավաքվեցին Հայաստանի կոմունիստները։ Կոնֆերենցիան տեղի ունեցավ անլեգալ պայմաններում, որովհետև երկրում տիրակալում էին դաշնակների բուրժուական տեռորիստական կառավարությունը և անգլո-ամերիկյան իմպերիալիստները։ Կոնֆերենցիան ամփոփեց Ռուսաստանի կոմունիստական պարտիայի անբաժան չոկատը կազմող՝ Հայաստանի կոմունիստական կազմակերպության ռևոլյուցիոն պայքարի արդյունքները, միջոցառումներ մշակեց երկրում կոմունիստական աշխատանքի հետագա ծավալման, դաշնակների տիրապետության տապալման և Սովետական իշխանության հաստատման համար, ընտրեց ռեսպուբլիկական պարտիական ղեկավար կենտրոն։ Կոնֆերենցիայի որոշումները վճռական նշանակություն ունեցան Հայաստանում Կոմունիստական պարտիայի գործունեության և ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի համար։*

*Դեռևս 1919 թվականի ամռանից ՌԿՊ Կենտկոմի ցուցումով, պարտիայի Կովկասյան երկրային կոմիտեն ձեռք առավ մի շարք միջոցներ գաղափարապես և կազմակերպչորեն ամրապնդելու Հայաստանի տերիտորիայում գործող Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպությունները, կոորդինացնելու նրանց գործունեությունը համահայաստանյան մի կենտրոնից, դարձնելու նրանց ընդունակ գլխավորելու բանվորների ու գյուղացիների օրեցօր աճող հակադաշնակցական ու հակաիմպերիալիստական պայքարը, նախապատրաստելու նպատակահարմար մոմենտին վերցնելու իշխանությունը։*

*Հայտնի է, որ Հայաստանում բոլշևիկյան կազմակերպություններն իրենց գոյությունը սկսում են դեռևս XX դարի սկզբից։ Նրանք հիմնադրվել և անմիջականորեն ղեկավարվում էին ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտեի կողմից։*

*1905 թվականի մայիսին Կովկասյան միութենական կոմիտեի ղեկավարությամբ ստեղծվում է ՌՍԴԲՊ Երևանի կոմիտեն, որը փաստորեն պարտիական ղեկավար օրգան է դառնում Երևանի ամբողջ նահանգի համար։ 1906 թվականին ՌՍԴԲՊ Երևանի կազմակերպությունը մասնակցում է պարտիայի IV «Միավորիչ» համագումարին, պատգամավոր ուղարկելով Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ, բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչ Ստ. Շահում-*

յաներին։ Երևանի կազմակերպությունն իր պատգամավորն ուներ նաև պարտիայի V համագումարում։ Ստոլիպինյան ռեակցիայի և առաջին համաշխարհային պատերազմի տարիներին ցարական կառավարության ռեպրեսիաները ծանր հարված հասցրին բոլշևիկյան կազմակերպություններին։

1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Հայաստանի բոլշևիկները դուրս եկան ընդհատակից և ծավալեցին քաղաքական բացարձակ գործունեություն։ Վերականգնվեցին բոլշևիկյան կազմակերպությունները, նրանց շարքերը համալրվեցին նոր անդամներով։ Ամրակուռ կազմակերպություններ ստեղծվեցին մասնավորապես Կովկասյան ռազմաճակատի զորամասերում, որոնց զգալի մասը գտնվում էր Կարսի մարզում, Երևանի նահանգում և Արևմտյան Հայաստանի այն տերիտորիայում, որ գրավված էր ռուսական զորքերի կողմից։ Բանակի բոլշևիկյան կազմակերպությունները կազմակերպչական և գաղափարական մեծ աշխատանք էին տանում նաև քաղաքացիական բնակչության մեջ, օգնում էին տեղի բոլշևիկներին վերականգնելու պարտիական բջիջները, գլխավորելու աշխատավորների պայքարը սոցիալիստական ռևոլյուցիայի համար։

Վ. Ի. Լենինի 1917 թվականի հռչակավոր Ապրիլյան թեզիսների ու պարտիայի Ապրիլյան կոնֆերենցիայի որոշումների հիման վրա խզելով ձևական բոլոր կապերը վերջնականապես բուրժուազիայի լագերն անցած մենշևիկներից, Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունները 1917 թվականի հոկտեմբերին իրենց երկրային համագումարում լիովին հավանություն տվին զինված ապստամբության նախապատրաստման վերաբերյալ պարտիայի լենինյան գծին և ընտրեցին ՌՍԴԲ (բոլշևիկների) Պարտիայի Կովկասյան երկրային կոմիտե։ 1917 թվականի աշնանը բոլշևիկների ազդեցությունը հսկայական չափով աճել էր աշխատավորական մասսաների շրջանում, մանավանդ Բաքվում՝ Կովկասի պրոլետարական կենտրոնում։ Մեծ չափով աճել էր բոլշևիկների ազդեցությունը նաև Կովկասյան ռազմաճակատում։ 1917 թվականի հոկտեմբերին, օրինակ, Ստ. Շահումյանը Ալեքսանդրոպոլից հեռագրում էր «Ռաբոչի պուտ» թերթին, որ քաղաքի 20 հազարանոց կայազորը ամբողջովին բոլշևիկյան է։[1]

Պետրոգրադում Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակից հետո Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ալիքը հասավ նաև Կովկաս։ Անդրկովկասի բանվորները աշխատավորների գլուխն անցած, բոլշևիկների ղեկավարությամբ, պայքարում էին Անդրկովկասում ևս Սովետական իշխանություն հաստատելու համար։ Այդ պայքարը հաջողությամբ պսակվեց Բաքվում և Անդրկովկասի մի քանի վայրերում։ 1918 թվականի հունվարին Սարիղամիշի կայազորի բոլշևիկների նախաձեռնությամբ իշխանությունն իր ձեռքը վերցրեց ռազմառևոլյուցիոն կոմիտեն։ Սովետական իշխանությունը կհաստատվեր ամբողջ Անդրկովկասում, եթե կոնտրռևոլյուցիոն ուժերը՝ մենշևիկների, մուսավաթականների, դաշնակների, էսեռների ու սպիտակ գվարդիականների գլխավորությամբ դաշինքի մեջ չմտնեին սկզբում գերմանա-թուրքական և ապա անգլո-ամերիկյան իմպերիալիստների հետ, բաց չանեին Կովկասի դռները այդ նվաճողների հորդաների առջև ու միացյալ ուժերով չճնշեին ռևոլյուցիան։ Նրանք Անդրկովկասը դարձրին իմպերիալիզմի պլացդարմ Սովետական Ռուսաստանի դեմ պատերազմելու համար և նույն իմպերիալիստ-

[1] Տե՛ս Ստ. Շահումյան, Երկեր, հ. 2, էջ 521։



ների թելադրանքով, հակառակ ժողովրդի կամքի ու կենսական շահերի, իրականացրին Անդրկովկասի անջատումը Ռուսաստանից, ապա նրա մասնատումը առանձին՝ վրացական, հայկական ու ադրբեջանական բուրժուական ռեսպուբլիկաների։

Օգտվելով այդ ռեսպուբլիկաների «անկախությունից», գերմանա-թուրքական զավթիչները, իսկ ապա 1918 թվականի վերջից նրանց փոխարինող անգլո-ամերիկյան գաղութարարները սկսեցին տեր ու տնօրինություն անել Անդրկովկասում, թալանել ու բնաջնջել տասնյակ հազարավոր խաղաղ բնակիչների։ Թուրքական զորքերը գրավելով Հայաստանի տերիտորիայի մեծ մասը, կոտորեցին նրա բնակչության կեսը։ Դաշնակցական ավանտյուրիստները, որոնք շարունակ պարծենում էին թուրքական բռնակալության դեմ իրենց մղած «պայքարով», ոչ միայն չկազմակերպեցին դիմադրություն Հայաստան ներխուժած թուրքական զորքերի դեմ, այլև մենշևիկների, էսեռների ու մուսավաթականների հետ միացած քայքայեցին Կովկասյան ռազմաճակատը, օգնեցին թուրքերի առաջխաղացմանը դեպի Բաքու և պարտության մատնելու Բաքվի կոմունային, որը հերոսական պայքար էր մղում թուրքական զավթիչների դեմ։

Թուրքական արշավանքի և դաշնակցական կոնտրռևոլյուցիայի ժամանակավոր հաղթանակի հետևանքով Հայաստանում բոլշևիկյան կազմակերպությունները 1918 թվականին ծանր կորուստներ ունեցան։ Միայն 1918 թվականի վերջերից և 1919 թվականի սկզբներից, թուրքական զորքերի էվակուացիայից հետո, Հայաստանի մի շարք շրջաններում և քաղաքներում սկսում են վերականգնվել կոմունիստական կազմակերպությունները և ընդհատակից կազմակերպել բանվորների ու գյուղացիների պայքարը դաշնակների ռեժիմի դեմ։ 1918 թվականի նոյեմբերին կազմվում է Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի Երևանի կոմիտեն, 1919 թվականի հունվարին վերականգնվում է Ալեքսանդրոպոլի կոմիտեն, կոմունիստական կազմակերպություններ ու բջիջներ են ստեղծվում Նոր-Բայազետում, Շամշադինում, Աշտարակում, Ղամարլուում և Զանգեզուրի մի շարք շրջաններում։

Պարտիական կազմակերպությունների վերականգնումն ու աճը ավելի է ուժեղանում 1919 թվականի ամռանից, երբ, ինչպես նշվեց վերևում, Կովկասյան երկրային կոմիտեն, այդ ուղղությամբ ձեռնարկում է հատուկ միջոցառումներ։ Հայաստանում կոմունիստական կազմակերպությունների գործունեությանը մշտապես օգնում են Սերգո Օրջոնիկիձեն և Անաստաս Միկոյանը, որոնք այն ժամանակ գտնվում էին Բաքվում։ Երկրային կոմիտեի հանձնարարությամբ Հայաստանում աշխատանքի են ուղարկվում երկրային կոմիտեի անդամներ՝ Ասք. Մռավյանը, Ս. Կասյանը, հին փորձված պարտիական գործիչներ՝ Ս. Խանոյանը, Դ. Շահվերդյանը, Սերգո Մարտիկյանը, մի շարք կոմունիստ աշխատողներ Բաքվից ու Թբիլիսիից։

Հյուսիսային Կովկասից, Ադրբեջանից ու Վրաստանից Հայաստան են փոխադրվում նաև զգալի թվով որակյալ բանվորներ, որոնք համալրում են Հայաստանի փոքրաքանակ պրոլետարիատի շարքերը։ Դրանց թվում քիչ չէին բոլշևիկ բանվորները։ Այդ բանվորների մի զգալի մասը աշխատանքի տեղավորվեց երկաթուղում։ Ուստի պատահական չէ, որ Հայաստանում պարտիական ուժեղ կազմակերպություններ էին ստեղծված երկաթուղում, մասնավորապես Ալեքսանդրոպոլի երկաթուղային դեպոյում, ուր աշխատում էին Բաքվի պրոլետա-

րիատի ռևոլյուցիոն պայքարի բովում կոփված տոկուն բոլշևիկ բանվորներ։ Դրանց թվումն էր Եգոր Սևյանը, որը դարձավ Ալեքսանդրոպոլի կոմունիստական կազմակերպության աչքի ընկնող ղեկավարներից մեկը։

Հայաստանում ևս, նախորդ տարիների ընթացքում աճել էին մի շարք պարտիական գործիչներ, ինչպես՝ Ստ. Ալավերդյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Ղարիբջանյանը, Գ. Հաննեսօղլյանը, Ղ. Ղուկասյանը, Բ. Բատիկյանը, Ն. Շեմախյանը, Ա. Խանչյանը, Ա. Փանյանը և ուրիշներ, որոնք անխոնջ կերպով աշխատանք էին տանում վերականգնելու կազմակերպությունները և դժվարին պայմաններում պայքարում էին դաշնակների դեմ։

1919 թվականի ամռան ընթացքում կոմունիստական կազմակերպություններ են ստեղծվում Հայաստանի համարյա բոլոր շրջաններում, անց են կացվում գավառային ու քաղաքային կոնֆերենցիաներ, ընտրվում են պարտիական կոմիտեներ։ Պարտիական կազմակերպություններ են ստեղծվում նաև դաշնակցական բանակի զորամասերում։ Այդ կազմակերպությունների մեջ ընդգրկվում են բավական թվով կարգային զինվորականներ, որոնք գտնվելով ռուսական բանակի շարքերում, 1917 — 1918 թվականներին ակտիվ կերպով մասնակցել էին ռևոլյուցիոն շարժումներին որպես բոլշևիկներ կամ բոլշևիզմին համակրողներ։

1919 թվականի ապրիլին Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Հայաստանում կազմակերպվում է բանվորա-գյուղացիական երիտասարդական «Սպարտակ» անունով կոմունիստական կազմակերպությունը, որը դարձավ պարտիայի հավատարիմ ու նվիրված օգնականը ռևոլյուցիոն պայքարի մեջ։ Նրա շարքերում աճեցին բազմաթիվ երիտասարդ անձնվեր բոլշևիկներ։

Կոմունիստական կազմակերպությունները ամրապնդում են իրենց կապերը աշխատավորական մասսաների հետ, ուժեղանում է նրանց ազդեցությունը պրոֆմիություններում, գյուղացիական միություններում և այլ անպարտիական մասսայական կազմակերպություններում։ Կոմունիստական կազմակերպության աճող ազդեցությունից ահաբեկված անգլո-ամերիկյան իմպերիալիստները և նրանց դաշնակցական լակեյները ձեռք են առնում ռեպրեսիվ միջոցներ բոլշևիկների դեմ։ Այսպես, օրինակ, դեռևս 1919 թվականի մարտին Անդրկովկասում բրիտանական զորքերի փոխգնդապետը Հայաստանի Արտաքին գործերի մինիստրին հղած գրության մեջ մատնանշում էր հետևյալը,— «Բրիտանական ուժերի հրամանատար գեներալը Անդրկովկասում տեղեկություն ունի վստահելի աղբյուրից, որ Ալեքսանդրոպոլում բոլշևիկյան կոմիտե է հաստատված և որը որոշ ժամանակ է արդեն, ինչ գործուն պրոպագանդա է անում բանվոր դասակարգի, բանակի և երկաթուղու ծառայողների մեջ։ ...Հրամանատար գեներալը ուրախ պետք է լինի, եթե ձերդ բարձրությունը հիմա անմիջական քայլեր անի վերևը հիշված բոլշևիկյան կոմիտեն ճնշելու համար։

Թելադրվում է նաև, որ այդ կոմիտեի ղեկավարները իրենց արժանի պատիժը կրեն»։[1]

Իմպերիալիստական ուժերի և դաշնակցական կառավարության ռեպրեսիաները, սակայն, անկարող էին կասեցնել բոլշևիզմի աճը Հայաստանում, որովհետև բոլշևիզմը արտահայտում էր աշխատավորական մասսաների բուն

[1] Հայկ. ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 199, գ. 12, թ. 75։



շահերը և նա կարող էր միայն դուրս բերել ժողովրդին այն կատաստրոֆիկ վիճակից, որի մեջ նա նետվել էր դաշնակների ու իմպերիալիստների կամքով։ Դաշնակների տիրապետության ժամանակաշրջանը, 1918 թ. մայիսից — 1920 թվականի նոյեմբերը, հայ ժողովրդի պատմության ամենաողբերգական տարիները հանդիսացան։ Կույր ատելությամբ լցված դեպի Սովետական Ռուսաստանը, դեպի աշխատավորական մասսաները, դաշնակցական կառավարիչները մի ամբողջ ազգի ճակատագիրը զոհաբերում էին մի խումբ հայ կեղեքիչների և օտարերկրյա իմպերիալիստների էգոիստական շահերին։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստների «հովանավորության» ներքո Հայաստանում ժողովրդի դրությունը ոչ միայն չբարելավվեց, այլև գնալով ավելի ու ավելի սարսափելի էր դառնում։ Ամբողջովին համարյա քայքայվել էր առանց այն էլ խղճուկ արդյունաբերությունը, կրճատվել էր գյուղատնտեսության արտադրանքը տասնյակ անգամ։ Ռուսաստանից անջատվելու և Կովկասը մասնատելու հետևանքով քայքայվել էին տարիներ շարունակ նրանց միջև գոյություն ունեցող տնտեսական կապերը, առանց որի անհնարին էր տնտեսական որևէ նորմալ կյանք Անդրկովկասում։ Անդրկովկասի ռեսպուբլիկաների նացիոնալիստական կառավարությունները միաժամանակ հրահրում էին ազգամիջյան կոտորածներ, սահմանային արյունահեղ վեճեր ու եղբայրասպան պատերազմներ, որի հետևանքով սրախողող էին լինում հազարավոր բնակիչներ, տեղահան արվում ու արտաքսվում տասնյակ հազար ընտանիքներ։ Միմիայն Հայաստանում գաղթականության թիվը 600 հազարից անցնում էր։ Ազգային փոքրամասնությունների բնաջնջումը, նրանց գույքի թալանն ու բռնագրավումները սովորական երևույթ էին դարձել Անդրկովկասյան բուրժուա-կալվածատիրական ռեսպուբլիկաների կառավարությունների քաղաքականության մեջ։ Հայաստանը դաշնակների տիրապետության տակ վերածվում էր համատարած մի գերեզմանատան, որտեղ իրենց խրախճանքն էին կատարում հարբած մաուզերիստներն ու դաշնակցական վարիչները։ 1919 թվականի ընթացքում, ոչ լրիվ տվյալներով, Հայաստանի մայրաքաղաքում՝ Երևանում սովից ու համաճարակից մահացել էր 14 հազար մարդ, բնակչության 20 տոկոսը։ Այդպես էր դրությունը նաև ամբողջ «ռեսպուբլիկայում»։ Մի պատերազմից դուրս չեկած, դաշնակները ժողովրդին նետում էին մյուս պատերազմի երախը, մի կոտորածից չպրծած, մյուս կոտորածի գիրկը։

Այս դրությունը երկար շարունակվել չէր կարող։ Աշխատավորների համբերությունը վերջին դագաթնակետին էր հասել։ Այդ դրսևորվում էր ավելի ու ավելի հաճախակի դարձող բանվորական գործադուլներով, գյուղացիական հուզումներով, հաց և խաղաղություն պահանջող բնակչության ցույցերով, դաշնակցական բանակի զինվորների մասսայական դասալքությամբ։ Հասունանում էր ռևոլյուցիոն ճգնաժամը։ Հայաստանի աշխատավորները իրենց փրկությունը սպասում էին Սովետական Ռուսաստանի Կոմունիստական պարտիայից, նրա Հայաստանի ջոկատից։ Նույնիսկ էսեռական պարտիայի լիդերները դաշնակցական պառլամենտում հարկադրված էին խոստովանելու, որ «բոլշևիզմի համակրանքն զգալի է մեր երկրում։ Մեր գյուղացիության աչքում բոլշևիզմը նույն Ռուսաստանն է»։

Այս պայմաններում ավելի քան անհրաժեշտ էր դառնում Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների համախմբումը և նրանց մարտական մոբիլիզացումը։ 1919 թվականի սեպտեմբերին ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկ-

րային Կոմիտեի նախաձեռնությամբ Երևանում գումարվում է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն։ Այդ խորհրդակցությունը իրագործում է կազմակերպչական կարևոր միջոցառում. ստեղծում է ռեսպուբլիկական կենտրոն՝ ՌԿ(բ)Պ Հայաստանի կոմիտե։ Հայաստանի կոմիտեն, որի կազմում ընտրված էին Ա. Մռավյանը, Ս. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Խանոյանը, Ղ. Ղուկասյանը և ուրիշներ, կարճ ժամանակում մեծ աշխատանք ծավալեց պարտիական կազմակերպությունները համախմբելու և միավորելու, նրանց կազմակերպչական և գաղափարական աշխատանքի մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ Նա նախապատրաստեց և 1920 թվականի հունվարին հրավիրեց Հայաստանի պարտիական կազմակերպությունների Առաջին կոնֆերենցիան։

ՌԿՊ Հայաստանի կազմակերպությունների Առաջին կոնֆերենցիան տեղի ունեցավ այն պայմաններում, երբ Կարմիր Բանակը ջախջախելով դենիկինյան զորքերին, շեշտակի թափով մոտենում էր Կովկասին։ Այդ ստեղծում էր ռեալ հնարավորություն մոտակա ժամանակում տապալելու իմպերիալիստներին և նրանց դրածո՝ դաշնակների իշխանությունը։

Կոնֆերենցիային մասնակցում էին 22 պարտիական կազմակերպություններից ընտրված պատգամավորներ, որոնք ներկայացնում էին 1200 կոմունիստների։[1] Կոնֆերենցիային իրենց պատգամավորներն էին ուղարկել Երևանի, Ալեքսանդրոպոլի, Ղազախ-Շամշադինի, Դիլիջանի, Նոր-Բայազետի, Ղարսի և այլ կազմակերպություններ։ Կոնֆերենցիան քննարկեց ՌԿՊ Հայաստանի Կոմիտեի զեկուցումը կատարած աշխատանքների մասին, ընթացիկ մոմենտի հարցը և Հայաստանի պարտիական կազմակերպությունների խնդիրները, կազմակերպչական աշխատանքի հարցը, ինչպես նաև լսեց տեղերից եկած պատգամավորների զեկուցումները։

Կոնֆերենցիան ընդունեց ծրագրային որոշում ընթացիկ մոմենտի և Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների խնդիրների մասին։ Կոնֆերենցիայի բանաձևում տրված է միջազգային իրադրության վերլուծությունը, բացահայտված են իմպերիալիզմի գիշատիչ պլանները, Անդրկովկասի կառավարող բուրժուական պարտիաների՝ մենշևիկների, դաշնակների ու մուսավաթականների հակասովետական, հակաժողովրդական քաղաքականությունը։ Կոնֆերենցիան ընդգծում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային պատմական բնույթը և Կարմիր Բանակի հաղթանակների միջազգային նշանակությունը։ Բանաձևը հաստատ համոզմունք է հայտնում, որ Սովետական Ռուսաստանի և միջազգային իմպերիալիզմի միջև տեղի ունեցող գոտեմարտերում հաղթանակը վերջին հաշվով պատկանում է կոմունիզմին[2]։

Առաջնակարգ նշանակություն ուներ կոնֆերենցիայի ցուցումը Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների տակտիկայի մասին դաշնակների ու իմպերիալիստների տիրապետության դեմ մղվող պայքարում։ Կոնֆե-

[1] Տե՛ս «Պրավդա», 1920 թ., № 90։

[2] Առաջին կոնֆերենցիայի բանաձևը տպագրվել է 1920 թ. փետրվարին Բաքվում հրատարակվող «Новый мир» թերթում (№ 23)։ Այնուհետև այն հրատարակվել է առանձին բրոշյուրով և 1922 թ. ՀԿՊ Կենտկոմի «Известия»-ի առաջին համարում։ Հրատարակվել է նաև 1957 թ. «Великая Октябрьская Социалистическая революция и победа Советской власти в Армении» ժողովածուում, էջ 307—312։



րենցիան Հայաստանի բոլշևիկների առաջ խնդիր էր դնում՝ հարևան երկրների կոմունիստական կազմակերպությունների հետ միացյալ ուժերով, Սովետական Ռուսաստանի աջակցությամբ, խորտակել Անտանտի իմպերիալիստական ուժերը և միանալ մեծ ու խաղաղ կոմունիստական ընտանիքին։ Կոնֆերենցիան գտնում էր, որ ստեղծված պայմաններում դաշնակների տիրապետության տապալումը Հայաստանում հնարավոր է միայն բռնի կերպով, զինված ապստամբության միջոցով։

Բանաձևում ասված էր.

«Ինչպես Վրաստանում և Ադրբեջանում, այնպես էլ Հայաստանում տիրապետող դասակարգի և նրանց կողմից կազմակերպված «դաշնակցական» կառավարության դեմ ՙաղաՙացիական պատերազմը, դաշնակների իշխանության ռևոլյուցիոն բռնի տապալումը հանդիսանում է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնագույն խնդիրը։

Միայն այդ միջոցով մենք կարող ենք Սովետական իշխանության ամուր հիմքը դնել, միայն այդ միջոցով հնարավոր է փրկել մասսաներին կործանումից՝ լինի դա ազգային կռիվների, թե ֆիզիկական վերասերման ձևով»։

Ելնելով այս դիրքորոշումից, կոնֆերենցիան խնդիր դրեց պարտիական կազմակերպությունների առաջ՝ ամրապնդել իրենց շարքերը, սերտորեն կապվել պրոլետարական լայն մասսաների հետ, նվաճել դաշնակների ձեռքից պրոֆմիությունները, նրանց դարձնել պրոլետարական մարտական օրգաններ, նրանց մեջ պատվաստել Կոմունիստական պարտիայի տակտիկան և քաղաքականությունը։ Մյուս կարևոր խնդիրը՝ գյուղացիության նվաճումն է պրոլետարիատի կողմը, գյուղական չքավորության ներգրավումը Կոմունիստական պարտիայի շարքերը, ինչպես նաև բանակում տարվող աշխատանքի ուժեղացումը, բանակը ռևոլյուցիայի կողմը նվաճելը։ Այս հիմնական խնդիրներն իրագործելով պարտիան Հայաստանում կարող էր անցնել հարձակման, տապալել դաշնակների լուծը։

Կոնֆերենցիան հաստատեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կազմակերպչական կանոնադրությունը։ Նա մերժեց ՌԿՊ-ից անջատ Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպման առաջարկը և ընդունեց, որ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները մտնում են Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի մեջ՝ մարզային կազմակերպության իրավունքով, գործում են ՌԿՊ Կենտկոմի և ՌԿՊ Կովկասյան Երկրային Կոմիտեի ղեկավարությամբ։

Կոնֆերենցիան իր այս որոշմամբ լիովին պաշտպանում էր Կոմունիստական պարտիայի կառուցման լենինյան ինտերնացիոնալիստական բնույթը, նորից հաստատում այն փաստը, որ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները ինչպես անցյալում, այնպես էլ 1920 թվականին, երբ Հայաստանը դաշնակների կողմից անջատված էր Սովետական Ռուսաստանից, հանդիսացել ու հանդիսանում են Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի անբաժան ջոկատը։ Քիչ ավելի ուշ, 1920 թվականի հունիսին, երբ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները ձևավորվեցին որպես Հայաստանի Կոմունիստական պարտիա, նրանք չբաժանվեցին ՌԿՊ-ից։ Հայաստանի Կոմունիստական պարտիան մնաց որպես ՌԿՊ-ի կազմակերպություններից մեկը, այնպես ինչպես մարզային ու երկրային կազմակերպությունները։

Կոնֆերենցիան հատուկ որոշում ընդունեց լեգալ կազմակերպություններում տարվող աշխատանքի խնդիրների մասին։ Որոշման մեջ մատնանշվում էր, որ տեղական պարտիական կազմակերպությունները պետք է լեգալ դասակարգային-հասարակական կազմակերպություններում ու հիմնարկներում՝ պրոֆմիություններում, բանվորական ակումբներում, գյուղացիական միություններում, կոոպերատիվներում ստեղծեն պարտիական խմբեր կամ բջիջներ այդ կազմակերպություններում ընդգրկված մասսաներին քաղաքականապես դաստիարակելու, պարտիայի կողմը գրավելու, պարտիայի շուրջը համախմբելու համար։

Պատգամավորներին բաժանված առանձին հարցաթերթիկում կոնֆերենցիան տալիս էր կարճ ու հստակ պատասխան քաղաքական իրադրության, Հայաստանում պարտիայի տակտիկայի, նրա կազմակերպական և ագիտացիոն-պրոպագանդիստական խնդիրների մասին [1]։ Այնտեղ նշված էր, որ Ռուսաստանի Սովետական իշխանությունը ամրապնդվում և ընդարձակվում է, որ Հայաստանում գոյություն ունի թե օբյեկտիվ և թե սուբյեկտիվ ռեվոլյուցիոն սիտուացիա, որ հնարավոր է Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում՝ Սովետական Ռուսաստանի օժանդակությամբ, որ հաղթանակի անհրաժեշտ պայմաններից մեկը պարտիական կազմակերպության ամրապնդումն է, ընդարձակումը, նրա ագիտացիոն ու պրոպագանդիստական գործունեության ուժեղացումը։ Թերթիկը տրոշում էր վերաբերմունքը դեպի գոյություն ունեցող պարտիաները՝ հանձնարարելով պայքարել Սովետական իշխանությունը չընդունող պարտիաների դեմ, խորացնել աջ և ձախ դաշնակցականների տարաձայնությունները, մերկացնել սովետական իշխանությունն ընդունող, բայց կոմունիստական պլատֆորմայով չղեկավարվող պարտիաների անհետևողականությունը։

Կոնֆերենցիան ողջույնի նամակ ուղարկեց Ադրբեջանի, Վրաստանի, Պարսկաստանի և Թուրքիայի կոմունիստական կազմակերպություններին։

Այդ ողջույնում հայտնելով կոմունիստական աշխատանքի հաջողությունների մասին Հայաստանում, կոնֆերենցիան նշում էր. «Մեր նպատակն է Ադրբեջանի, Տաճկաստանի և Պարսկաստանի կոմ. կազմակերպությունների հետ միացյալ ուժերով դուրս քաշել բուրժուական-նացիոնալիստական կուսակցությունների ձեռքից, ինչպես «դաշնակցության», «մուսավաթի», մենշևիկների և թուրք նացիոնալիստների բանվորա-գյուղացիական մասսաները, ֆրոնտ կազմակերպել այդ երկրներում կոմունիստական հեղափոխության համար և մեծ Կարմիր Ռուսաստանի աջակցությամբ խորտակելով «Անտանտայի» բոլոր սև ու մութ ուժերը՝ անցնել մեր թշնամիների դիակների վրայից ու միանալ համաշխարհային մեծ ու խաղաղ կոմունիստական ընտանիքին» [2]։

Հունվարյան կոնֆերենցիան ընտրեց ՌԿՊ Հայաստանի Կոմիտե։ Կոմիտեի կազմում ընտրվեցին Ս. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ա. Նուրիջանյանը, Ս. Խանոյանը, Հ. Սարուխանյանը, Ղ. Ղուկասյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Մարտիկյանը, Հ. Կոստանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը և ուրիշներ։

[1] Ինչպես այս հարցաթերթիկի, այնպես էլ «Կազմակերպչական կանոնադրություն» և «Լեգալ կազմակերպությունների մեջ աշխատանքի ծրագրի» բնագրերը 1935 թվականին ՀԿ(բ)Պ Կենտկոմին կից Կուսպատի ինստիտուտին է հանձնել կոնֆերենցիայի պատգամավոր Պետրոս Վարդանյանը։ Տե՛ս այժմ ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 894։

[2] «Պահակ», № 19, 1920 թ.։



Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերենցիան, այսպիսով, ավարտեց պարտիական կազմակերպությունների միավորումը ռեսպուբլիկական մի կենտրոնի շուրջը և դրանով իսկ Հայաստանի Կոմպարտիայի ձևավորման հիմքը դրեց։ Կոնֆերենցիան դիրքորոշեց Հայաստանի կոմունիստներին՝ զինված ապստամբության միջոցով տապալելու դաշնակցության տիրապետությունը։ Այդ առթիվ մայիսյան ապստամբության մասին ՌԿՊ Կովկասյան երկրային կոմիտեին ուղարկված զեկուցման մեջ Հայաստանի Կոմիտեն նշում էր, որ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կոնֆերենցիան որոշել էր «Հայաստանում սովետական զորքերը մտնելիս, այլև հարևան ռեսպուբլիկաներում հեղաշրջումներ լինելուց հետո, իշխանությունը գրավելու նպատակով ելույթ ունենալ»։

Հունվարյան կոնֆերենցիան Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների աշխատանքում մեծ բեկում մտցրեց։ Կոնֆերենցիայից հետո պարտիական կազմակերպությունները լայն աշխատանք ծավալեցին բանվորների, գյուղացիների, զինվորների և ինտելիգենցիայի շրջանում, էլ ավելի ամրապնդվեցին ու աճեցին։ Կոնֆերենցիայի որոշումները քննարկվեցին գավառային ու շրջանային կոնֆերենցիաներում և ստացան հավանություն պարտիական մասսայի կողմից։ Հայաստանի Կոմիտեի և տեղական կոմիտեների ջանքերով ստեղծվեցին կոմունիստական թերթեր Ալեքսանդրապոլում, Երևանում, Լոռիում («Ալիք», «Կոմունիստ», «Լոռվա գյուղացիության ձայն» և այլն), հրատարակվեցին թռուցիկներ։ Պարտիական ամբողջ աշխատանքն ընթանում էր զինված ապստամբության նախապատրաստման նշանաբանով։ Այս հաջողությունները նկատի ունենալով, Ա. Ի. Միկոյանը 1920 թվականի մարտին գրում էր Աստրախան Ս. Մ. Կիրովին, ՌԿ(բ)Պ Կենտկոմին հաղորդելու համար այն մասին, որ «Հայաստանում աշխատանքը կարգի է գցվել։ Մեր ուժերն աճում են» [1]։

Կոնֆերենցիայի որոշումների հիման վրա Հայաստանի կոմունիստները կազմակերպեցին ու գլխավորեցին բանվորների ու գյուղացիների մայիսյան հերոսական ապստամբությունը։ Այդ մարտերում ընկան ու դաշնակ դահիճների ձեռքով զոհվեցին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ականավոր գործիչներ՝ Ստ. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը, Հ. Սարուխանյանը, Ղ. Ղուկասյանը, Բ. Ղարիբջանյանը, Ե. Մկրտումյանը, Ս. Հակոբջանյանը, Վ. Ալեքսեևը, Բ. Հարությունյանը և ուրիշներ։ Բայց նրանց թափած արյունը զուր չկորավ։ ՌԿՊ Կենտկոմի, մեծ Լենինի ղեկավարությամբ Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան, մայիսյան ապստամբության փորձով հարստացած, գլխավորեց Հայաստանի բանվորների ու գյուղացիների նոր ապստամբությունը և հերոսական Կարմիր Բանակի օգնությամբ նվաճեց պատմական մեծ հաղթանակ։ Հոկտեմբերի ազատարար դրոշը ծածանվեց Հայաստանի վրա։

[1] С. М. Киров, Статьи, речи, документы, т. I, стр. 205, 219.

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏԱՐԻՆ

**Ա. ՍՈՂԱԽՅԱՆ**

ՀԿՊ Լենինականի քաղկոմի քարտուղար

Լենինական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները մտնելով յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, յոթնամյակի առաջին տարում հասան արտադրական լուրջ հաջողությունների: Համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարվեց դեկտեմբերի 12-ին, ժամկետից 18 օր շուտ և մինչև տարվա վերջը երկրին տրվեց ավելի քան 35 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք: 1958 թվականի համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացավ 8,7 տոկոսով: Քաղաքի 45 արդյունաբերական ձեռնարկություններից 42-ը կատարեցին և գերակատարեցին տարեկան պլանը, իսկ 29 ձեռնարկություն, այդ թվում միս-պահածոների կոմբինատը, դարբնոցա-մամլիչային սարքավորումների, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, ավտոպահեստային մասերի գործարանները և մյուսները տարեկան արտադրական ծրագիրը կատարեցին ժամկետից 1—2 ամիս շուտ: Զգալի չափով գերակատարվեցին արտադրանքի կարևոր տեսակների՝ մամլիչների, քար տաշող դազգահների, էլեկտրազոդման տրանսֆորմատորների, սարքերի, մանկական հեծանիվների, շինարարական քարի, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների ու դետալների, մանվածքի, ժողովրդական սպառման առարկաների արտադրության սահմանված պլանային առաջադրանքները:

Պլանների քանակական կատարման գործն ապահովելով, սկզբնական պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին և ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման ուղղությամբ: 1959 թվականի 11 ամսում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվեց 103,2 տոկոսով և 1958 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ այն աճեց մոտ 7 տոկոսով: Որպես դրական երևույթ անհրաժեշտ է նշել աշխատավարձի աճման նկատմամբ աշխատանքի արտադրողականության առավել բարձր աճը, որը սոցիալիստական էկոնոմիկայի հիմնական սկզբունքներից մեկն է: Գերակատարվեցին նաև թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման և կուտակումների առաջադրանքները: Ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու վրա կատարված փաստացի ծախսերը կազմեցին 90 կոպեկ, պլանավորված 93,2 կոպեկի փոխարեն:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման յոթնամյա պլանում, որը հաստատվեց ՀԿՊ XX համագումարի կողմից, նախատեսված են արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման արագ տեմպեր: Կենսագործելով



համագումարի այդ դիրեկտիվը, պարտիայի քաղաքային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն նվիրեցին արդյունաբերական նոր օբյեկտների ստեղծմանը և գործող ձեռնարկությունների ընդլայնմանը: Այս ուղղությամբ մեր հիմնական խնդիրն էր հասնել այն բանին, որ քաղաքում հնարավորին չափ բարձր տեմպերով աճեն արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական ու սարքաշինական արդյունաբերությունը, որոնք Լենինականում շատ թույլ են զարգացած: Երկար տարիների ընթացքում քաղաքի արդյունաբերությունը զարգացել էր միակողմանիորեն, գերազանցապես տեքստիլ, թեթև և սննդի արդյունաբերության գծով: Բավական է ասել, որ 1958 թվականին այդ ճյուղերի տեսակարար կշիռը կազմում է քաղաքի ամբողջ արդյունաբերության 85 տոկոսը, իսկ մեքենաշինական ձեռնարկություններինը՝ միայն 5,5 տոկոսը: Ունենալով բավականաչափ զարգացած թեթև արդյունաբերություն, բնական է, որ պետք է առավել արագ տեմպերով զարգացնեինք նաև արդյունաբերության մյուս ճյուղերը, հատկապես մեքենաշինությունը, որը դրական խոշոր ազդեցություն կունենա քաղաքի ընդհանուր զարգացման վրա:

Վերջին երկու տարվա ընթացքում համեմատաբար փոքր կապիտալ ներդրումներով քաղաքում կառուցվեցին էլեկտրատեխնիկական, սարքաշինական և միկրոէլեկտրաշարժիչների գործարաններ, վերակառուցվեց և ընդլայնվեց դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանը և այն մասնագիտացվեց տարբեր հզորության մամլիչների մասսայական արտադրության համար: Անցյալ տարի գործող ձեռնարկությունների շարքը մտավ հղկող հաստոցների գործարանը, կազմակերպվեց նաև շինարարական մեքենաների գործարանը, որն այս տարվանից կսկսի քար տաշող դազգահների, իսկ 1961 թվականից՝ քար արդյունահանող մեքենաների արտադրությունը: Շահագործման հանձնվեց հեծանվի գործարանի նոր ցեխը՝ 1200 քառ. մետր արտադրական տարածությամբ, որտեղ այս տարվանից կսկսվի մանկական նոր տիպի հեծանիվների արտադրությունը: Այս բոլորի շնորհիվ անցած տարի, 1958 թվականի համեմատությամբ, մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքը ավելացավ 33 տոկոսով:

Արդյունաբերական նոր ճյուղերի զարգացման հետ միասին պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին նաև գործող մյուս ձեռնարկությունների ընդլայնման ու մասնակի վերակառուցման հաշվին ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելացման համար: Վլադիմիրցիների հայրենասիրական հիանալի նախաձեռնությունը լայն արձագանք գտավ քաղաքի ձեռնարկություններում: Այդ հարցի քննարկման ժամանակ պարզվեց, որ տեքստիլ կոմբինատը լրացուցիչ կառուցումների միջոցով արտադրական տարածությունները կարող է ավելացնել 3860 քառ. մետրով: Այդ նոր տարածությունների վրա կարելի է տեղադրել 26 մանող և 48 սանրող մեքենաներ, 463 ավտոմատ գործող հաստոցներ և այլ անհրաժեշտ սարքավորումներ, որոնց գործարկմամբ կապահովվի յոթնամյա պլանով սահմանված արտադրանքի աճը: Անցյալ տարի արդեն շահագործման հանձնվեց մոտ 400 քառ. մետր արտադրական տարածություն, որտեղ տեղադրվում է 100 գործող հաստոց: Սկսվել են նաև մանվածքային ֆաբրիկայի լրացուցիչ կառուցումները՝ 320 քառ. մետր տարածությամբ, որտեղ կտեղադրվեն 26

մանող մեքենա։ Նույնանման միջոցառումներ իրականացվեցին նաև № 2 մանվածքային, գուլպայի, կաշույքի ֆաբրիկաներում և այլ ձեռնարկություններում։ Հասկանալի է, որ այս կարգի միջոցառումների իրականացումը պահանջում է ավելի փոքր կապիտալ ներդրումներ, քան նոր շինարարության դեպքում, կատարման ավելի կարճ ժամկետներ։ Դրանք տնտեսապես շահավետ են։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները, լուրջ քայլեր կատարեցին նաև նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, եղած սարքավորումների մոդեռնացման ուղղությամբ։ Անցյալ տարի քաղաքի ձեռնարկություններում տեղադրվել են ավելի քան 650 միավոր բարձր արտադրողականության մեքենաներ և հաստոցներ, բազմաթիվ սարքեր ու հարմարանքներ, որոնց շնորհիվ զգալիորեն բարձրացել է արտադրության տեխնիկական հագեցվածությունը և արտադրական շատ պրոցեսների մեքենայացման մակարդակը։

Տեքստիլ կոմբինատում տեղադրվել են 100 և մոդեռնացվել են 600 մանող, ժապավինող, սանրող, գործող և այլ մեքենաներ ու հաստոցներ։ Երկար ժամանակ նախապատրաստական և թողարկող ցեխերի անհամաչափ աշխատանքը կոմբինատի նեղ տեղերից մեկն էր։ Կոմբինատի ղեկավարությունը հաշվի առնելով մասնագետների և բանվորների կարծիքը, որոշեց լիովին վերասարքավորել մանարան և գործվածքային ֆաբրիկաների նախապատրաստական բաժինները։ Հին սարքավորումները նորերով փոխարինելու և արտադրական տարածությունները ընդլայնելու շնորհիվ այդտեղ լրացուցիչ կերպով տեղադրվեց 60 նոր մեքենա։ Նախամանող և մանող մեքենաների վրա տեղակայվել են մազմզուկներ որսացող և բամբակածծիչ հարմարանքները, որոնց շնորհիվ պակասում են կտրվածքները և բարձրանում մեքենաների արտադրողականությունը։ Հենքի որակը բարձրացնելու նպատակով օսլայող մեքենաների վրա դրվեցին հենքի խոնավությունը կարգավորող ավտոմատ սարքեր։ Տեղադրված հանգույցակապ մեքենայի շնորհիվ ասպի բաժնում արտադրողականությունը բարձրացավ 20 տոկոսով։ Այս բոլորի շնորհիվ վերացվեց անհամաչափությունը, ապահովվեց ցեխերի ռիթմիկ աշխատանքը։ Ներկման-վերամշակման ֆաբրիկայում գործվածքի եզրաթելերը մաքրելու համար խուզող մեքենաների վրա տեղադրվել են հատուկ մեխանիկական հարմարանքներ, որոնց շնորհիվ բարձրացել է արտադրանքի որակը և այդ պրոցեսը կատարող 50 բանվորներ ազատվել և տեղափոխվել են արտադրական այլ տեղամասեր։

Կոմբինատի ֆաբրիկաներում մեքենայացման են ենթարկվել 20 տարբեր տեխնոլոգիական պրոցեսներ։ Լուրջ աշխատանք է տարվում հատկապես օժանդակ աշխատատար պրոցեսների, հումքի և կիսաֆաբրիկատների միջցեխային փոխադրումների մեքենայացման վրա, որը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և շատ բանվորների ազատում ձեռքի ծանր աշխատանքից։ Այս և մի շարք այլ տեխնիկական ու տեխնոլոգիական միջոցառումների շնորհիվ 1958 թվականի համեմատությամբ, 1959 թվականին կոմբինատը ավելի թողարկեց մոտ 800 հազար մետր պատրաստի և մեկ միլիոն երկու հարյուր հազար մետր կոշտ գործվածք։

Տեքստիլ արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիմնական նախապայմաններից մեկը բազմապրոցես օպերացիաները միապրոցես դարձնելն է։ Դա հնարավորություն է ստեղծում վերացնել օժանդակ սարքավորումները, ազատել նրանց զբաղեցրած արտադրական տարածությունները, ազատել օժանդակ օպերացիաների վրա աշխատող բանվորներին և նրանց օգտագործել այլ տեղամասերում, տալ աշխատավարձի տնտեսում, բարելավել թողարկվող արտադրանքի որակը։ Այս տեսակետից հատուկ ուշադրության է արժանի գուլպայի ֆաբրիկայի ռացիոնալիզատորներ՝ ցեխի պետ, կոմունիստ Ա. Զաքարյանի, վարպետի օգնական Ա. Շիլաչյանի և ավագ վարպետ Ա. Սրմոյանի առաջարկությամբ և անմիջական մասնակցությամբ երկու պրոցեսանի կոտտոն մեքենաների վերափոխումը մեկ պրոցեսի, որը լրիվ ավտոմատացնում է նրանց աշխատանքը։ Անցյալ տարի այդպիսի վերափոխման ենթարկվեցին 13 կոտտոն մեքենաներ, որի տնտեսական էֆեկտը կազմում է մոտ 200 հազար ռուբլի։ Վարպետի օգնականներ Վ. Գրիգորյանի, Ռ. Սարգսյանի առաջարկությամբ մանկական գուլպեղենի ԴՉՏ ավտոմատների մոդեռնացման շնորհիվ արմատավորվել է ռեզինե ջիղով կիսամետաքսե և նախշազարդ մանկական գուլպաների արտադրությունը։



Միայն 1959 թվականին ֆաբրիկայում տեղադրվել են 140 կանացի և մանկական գուլպա-նասկու ավտոմատներ, մոդեռնացվել է 70 մեքենա, լրիվ սարքավորվել և շահագործման է հանձնվել մանվածքը փայլեցնող տեղամասը։

Ֆաբրիկայի կոմերիտական կազմակերպության նախաձեռնությամբ կազմակերպվեցին հասարակական կոնստրուկտորական և տեխնոլոգիական բյուրոներ, որոնցում ընդգրկված երիտասարդ մասնագետներն ու առաջավոր բանվորները ակտիվորեն մասնակցում են տեխնիկական կարևոր հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Ընթանալով տեխնիկական պրոգրեսի ուղիով, ֆաբրիկայի կոլեկտիվը տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով փակեց յոթնամյակի առաջին տարին և երկրին տվեց ավելի քան 2,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

Արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման ավելի կատարյալ տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ պլանավորված հետևողական աշխատանք է տարվում նաև հեծանվի, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարաններում ու մի շարք այլ ձեռնարկություններում։

Տեխնիկական պրոգրեսի բնագավառում մեծ դեր են խաղում ձեռնարկությունների տեխնիկական հանձնաժողովները, որոնց աշխատանքին մասնակցում են ավելի քան 300 ինժեներներ, տեխնիկներ, ռացիոնալիզատորներ և առաջավոր բանվորներ։ Նրանք տվել են մոտ 450 արժեքավոր առաջարկություն, որոնք հաջողությամբ կենսագործվել և կենսագործվում են արտադրության մեջ։ Կարելի է ասել, որ ձեռնարկություններում ոչ մի, փոքրիշատե կարևոր տեխնիկական հարց չի լուծվում առանց այդ հանձնաժողովների քննարկման։ Լավ արդյունքներ տվեց ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի նախաձեռնությամբ անցկացված տեխնիկական ստուգատեսի միամսյակը, որի ընթացքում այդ հանձնաժողովների անմիջական մասնակցությամբ բազմակողմանիորեն ստուգվեցին թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը, արտադրական կարողությունների օգտագործման վիճակը և շատ այլ հարցեր։ Բազմաթիվ առաջարկություններ արվեցին արտադրանքի հնացած և ցածրա-

*րակ տեսակները նորերով փոխարինելու, արտադրական պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու ուղղությամբ։ Այսպես, օրինակ, սարքաշինական գործարանում տեխնիկական հանձնաժողովի առաջարկությամբ արտադրությունից հանվեց յուղահեղուկների մածուցիկությունը որոշող հնացած սարքը և նրա փոխարեն սկսեց ՎԶ—1 տիպի վիսկոզիմետրի արտադրությունը, որն ունի բավականաչափ պարզ կոնստրուկցիա, չափազանց թեթև է, պահանջում է քիչ ծախսեր։ Այս սարքի առավելությունն այն է, որ մածուցիկությունը որոշելու համար պահանջվում են ոչ թե ժամեր, ինչպես նախկինում, այլ 1—2 րոպե։*

*Դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանի արտադրությունից հանվեց հնացած, անհաջող կոնստրուկցիա և ցածր արտադրողականություն ունեցող 5 տոննա հզորության մամլիչը, այն փոխարինվեց ավելի կատարելագործված և բարձր արտադրողական 6,3 տոննա հզորության մամլիչով։*

*Շատ արժեքավոր առաջարկություններ մտցրեց էլեկտրատեխնիկական գործարանի տեխնիկական հանձնաժողովը։ Մինչև վերջերս զոդման տրանսֆորմատորների թիթեղների մեկուսիչ լաքապատումը կատարվում էր ձեռքով։ Տեխնիկական հանձնաժողովի նախաձեռնությամբ նախագծվեց և պատրաստվեց հատուկ հարմարանք, որի շնորհիվ այդ աշխատատար պրոցեսը լրիվին մեքենայացվեց։ Դա հնարավորություն տվեց զգալիորեն բարելավելու թիթեղների լաքապատման որակը, հինգ անգամ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և տարեկան տնտեսելու մոտ 80 հազար ռուբլի։ Հիմնովին վերափոխվեցին կենցաղային տրանսֆորմատորների թիթեղների կաղապարման դրոշմները, տալով տարեկան 20 հազար ռուբլու տնտեսում։*

*Անհրաժեշտ է, որպեսզի պարտիական կազմակերպությունները բոլոր միջոցներով խրախուսեն տեխնիկական հանձնաժողովներին, ավելի աշխուժացնեն նրանց աշխատանքը, նրանցում ընդգրկեն ավելի շատ ինժեներներ, տեխնիկներ և նորարարներ։*

*Տեխնիկական պրոգրեսի իրականացման գործում մեծ է ռացիոնալիզատորների և գյուտարարների դերը։ Նրանց խելացի առաջարկությունները մեծ չափով նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և նրա որակի բարելավման գործին։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում անցյալ տարի արմատավորվեց ավելի քան 800 ռացիոնալիզատորական առաջարկություն, որը տվեց մոտ 4 միլիոն ռուբլու տնտեսում։ Քննարկման և արմատավորման պրոցեսում են ևս 200-ից ավելի առաջարկություն։*

*Միկրոէլեկտրաշարժիչների գործարանի փականագործ Ն. Քափանյանը նախագծեց ու պատրաստեց միկրոէլեկտրաշարժիչների բևեռների բուրգաձև փաթաթման հաստոցի մակետը։ Մինչ այդ բևեռների փաթաթման պրոցեսը կատարվում էր ձեռքով և մեծ ժամանակ էր պահանջում։ Այդ առաջարկության կիրառումը աշխատանքի արտադրողականությունը բարձրացրեց 6—7 անգամ։*

*Տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի ռացիոնալիզատորներ Ա. Բագրատունու և Մ. Արշակյանի առաջարկությամբ սանրող մեքենաների վրա տեղադրվեցին կանգառիչ ավտոմատ հարմարանքներ, որի շնորհիվ այդ մեքենայի հանող թմբուկը ավտոմատ կերպով կանգ է առնում, երբ նրա մոտ գտնվող թասը լրիվ լցվում է ժապավենով։ Այդպիսի կանգառիչի կիրառումը կանխում է և թույլ չի տալիս, որ ավելորդ ժապավեններ թափվեն հատակին ու փչանան. այդպիսով մեծ չափով կրճատվում է ուգարը (մնացորդները)։ Նույն կոմբինատի ռացիոնալիզատոր Ա. Մկրտչյանը մշակեց մասրաների վրայից թելի մնացորդները մաքրելու հարմարանք, որը մեքենայացնում է այդ պրոցեսը, ազատում մեծ թվով օժանդակ բանվորներ, վերացնում մասրաների փչացումը և տարեկան տալիս է 50 հազար ռուբլու տնտեսում։*



*Բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ են արվել քաղաքի մյուս ձեռնարկություններում, որոնց արմատավորումը զգալի չափով բարելավել է այդ ձեռնարկությունների աշխատանքը։*

*Արդյունաբերական նոր ձեռնարկությունների գործարկման և գործող ձեռնարկություններում իրականացվող տեխնիկական կատարելագործումների շնորհիվ անցած տնտեսական տարում յուրացվեցին արտադրանքի մի շարք կարևոր տեսակներ, ընդլայնվեց և բարելավվեց մասսայական սպառման առարկաների ասորտիմենտը։*

*Հղկող հաստոցների գործարանի կոլեկտիվը յուրացրեց 312 Մ. մոդելի ունիվերսալ հղկող հաստոցների արտադրությունը։ Այս հաստոցը, որը նախագծել է Լենինգրադի Իլյիչի անվան գործարանի կոնստրուկտորական բյուրոն, ունի բարձր ճշգրտություն և հանդիսանում է հայրենական ժամանակակից հղկող հաստոցներից մեկը։ Գործարանը անցյալ տարի տվեց այդ հաստոցների փորձնական պարտիան և արդեն սկսել է նրանց մասսայական արտադրությունը։*

*Տեխնիկական պրոգրեսի լուրջ հաջողություններ ունեն միկրոէլեկտրաշարժիչների և մի շարք այլ գործարաններ։*

***

*Արդյունաբերության բնագավառում ձեռք բերված հաջողությունների գործում հսկայական դեր է խաղում սոցիալիստական մրցությունը, որը աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության ամենամասսայական ձևն է։ Եղբայրական ռեսպուբլիկաների՝ Քութաիսի և Կիրովաբադ քաղաքների աշխատավորական կոլեկտիվների հետ լենինականի աշխատավորների տրադիցիոն սոցիալիստական մրցությունը տարեցտարի ավելի է ամրապնդվում և դրական արդյունքներ տալիս։ Քաղաքի ձեռնարկություններում լայն արձագանք գտան երկրի առաջավոր ձեռնարկություններում ծնունդ առած հայրենասիրական նոր նախաձեռնությունները։ Անընդհատ խտանում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչման համար պայքարողների շարքերը։ Արդեն այժմ 140 բրիգադաներ, որոնցում ընդգրկված են 1000-ից ավելի բանվորներ, պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար. դրանցից 8-ին շնորհված է այդ բարձր կոչումը։*

*Այդ բրիգադաները պատվով են կատարում իրենց ստանձնած պարտավորությունները և կոմունիստաբար աշխատելու և ապրելու հիանալի օրինակներ են ցույց տալիս։ Հատկապես աչքի են ընկնում կարի ֆաբրիկայի Վարդ Մակարյանի, տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի Վարսիկ Հովհաննիսյանի ղեկավարած բրիգադաները, որոնք իրենց արտադրական առաջադրանքները կատարում են 110—115 տոկոսով և տալիս միայն գերազանց որակի*

արտադրանք։ Նման բրիգադաների թիվը շատ է, մնում է, որ պարտիական կազմակերպությունները ամենօրյա ուշադրություն նվիրեն նրանց փորձի լուրջ ուսումնասիրմանը ու մասսայականացմանը, այն դարձնեն բոլորի սեփականությունը։ Լայն ծավալում գտավ նաև սոցիալիստական աշխատանքի հերոս Վալենտինա Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությունը։ Նրա օրինակով տեքստիլ կոմբինատի, մանվածքային, № 2 կոշիկի, կարի ֆաբրիկաների և այլ ձեռնարկությունների տասնյակ առաջավոր բանվորներ աշխատելու գնացին ետ մնացող տեղամասերը, որոնք այժմ հասել են առաջավորների մակարդակին։ Դրանց թվումն են՝ մանվածքային ֆաբրիկայի բրիգադիր Ս. Գասպարյանը, գործվածքային ֆաբրիկայի վարպետի օգնականներ Ս. Գևորգյանը, Կ. Գալստյանը, ջուլհակուհի Ե. Կարապետյանը և շատ ուրիշներ։

Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ ավելի լայն ծավալել ստեղծագործ սոցիալիստական մրցությունը, որը հանդիսանում է պլանների կատարման ու գերակատարման գլխավոր պայմաններից մեկը։

Քաղաքի արդյունաբերության աշխատանքի անցյալ տարվա արդյունքները ցույց են տալիս, որ զգալի չափով բարձրացել է ձեռնարկությունների տնտեսական, տեխնիկական և պարտիական ղեկավարման մակարդակը, պարտիական կազմակերպությունների քննադատական մոտեցումը աշխատանքի արդյունքների նկատմամբ։ Սակայն կոմունիստները իրավունք չունեն հանգստանալու ձեռք բերածով։ Մեր աշխատանքում դեռևս կան լուրջ դժվարություններ, թերություններ, որոնք համառ աշխատանքով պետք է հաղթահարվեն։ Առանձին ձեռնարկություններ դեռևս աշխատում են անբավարար և չեն ապահովում պլանի կատարումը։ Ոչ բոլոր ձեռնարկություններում է, որ մտածված ու պլանաչափ աշխատանք է տարվում նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ։

Լենինականի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ պետական պլանները կատարել տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։ Դրա համար անհրաժեշտ է ավելի զարգացնել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, բարձրացնել նրանց աշխատանքային և արտադրական ակտիվությունը, արագացնել տեխնիկական հետագա պրոգրեսը՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարը արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։

---

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐՈՒՄ

# ՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՆ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

ՅԱ. ՉԱԴԱԵՎ

ՌՍՖՍՌ Պետպլանի նախագահի տեղակալ

Ռուսաստանի ֆեդերացիայի աշխատավորները, ինչպես և ամբողջ սովետական ժողովուրդը մեծ ոգևորությամբ դիմավորեցին ՍՄԿՊ XXI համագումարի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշումները, որոնցում շարադրված է ծավալուն կոմունիստական շինարարության մեծագույն ծրագիրը և նշված են ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի ուղիները։ Սա պարտիայի լենինյան գլխավոր գծի նոր, վառ արտահայտությունն է ժամանակակից էտապում։ Ուսումնասիրելով այդ պատմական որոշումները՝ ամեն մի սովետական մարդ տեսնում է, թե Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ որքան շատ բան է արել մեր ժողովուրդը և արտադրողական ուժերի նոր հզոր վերելքի ինչպիսի վիթխարի հեռանկարներ են բացվում մեր մեծ Հայրենիքի առջև։

Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների յոթնամյա պլանը գլխավոր հեռանկարային պլանի բաղկացուցիչ մասն է. մեր երկրում կոմունիզմի կառուցման այդ պլանի գլխավոր ուղիները շարադրված էին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակին նվիրված ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում, Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ։ Տասնհինգ տարի հետո, եթե ոչ ավելի շուտ, Սովետական Միությունը դուրս կգա աշխարհում առաջին տեղը ոչ միայն արտադրության ծավալով, այլև բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի թողարկմամբ։ Մեր երկրում կստեղծվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա, կապահովվի աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը։

Այդ պատմական առաջադրանքի կատարման գործում մեծ ավանդ են մուծելու Ռուսաստանյան ֆեդերացիայի աշխատավորները։ Սովետական իշխանության տարիներին ՌՍՖՍՌ-ն դարձել է մեր երկրի հզոր ինդուստրիալ բազան։ Ռուսաստանյան ֆեդերացիան Սովետների երկրում ամենախոշոր և արդյունաբերությամբ առավել զարգացած ռեսպուբլիկան է։ Այն տերիտորիան, որ զբաղեցնում է ՌՍՖՍՌ-ն, գերազանցում է 17 միլիոն քառակուսի կիլոմետրից. սա ամբողջ Սովետական Միության տերիտորիայի երեք քառորդից ավելին է։ ՌՍՖՍՌ-ի տերիտորիայում ապրում է ավելի քան հարյուր տասնր-

յոթ միլիոն մարդ՝ ամբողջ ՍՍՌՄ-ի բնակչության 57 տոկոսը, հաշվվում է ավելի քան վաթսուն ազգություն։ Վիթխարի են Ռուսաստանի բնական հարստությունները։ Ռեսպուբլիկայի ընդերքում են կենտրոնացված քարածխի, նավթի, բնական գազի, բոքսիտների, անագի, նիկելի, տիտանի, նիոբիայի, բերիլիայի, ոսկու, փայլարի, ասբեստի, կալիական աղերի և ֆոսֆորային հումքի, ալմաստի ընդհանուր միութենական հետախուզված պաշարի մեծ մասը և հարուստ երկաթահանքերի, կոքսացվող ածխի ընդհանուր միութենական պաշարների մոտ կեսը։

Ռուսաստանյան ֆեդերացիայի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հսկայական հաջողությունների են հասել տնտեսության և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Անցյալում տնտեսապես թույլ, տեխնիկապես հետամնաց, օտարերկրյա կապիտալից կախում ունեցող Ռուսաստանը այժմ դարձել է հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային տերություն. Նրա աճման նվաճումների պերճախոս վկայությունն են հետևյալ թվերը.

1958 թվականին Ռուսաստանյան ֆեդերացիայի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 35 անգամ։ Չուգունի արտադրությունն ավելացել է 14, պողպատինը՝ 17, սև մետաղների ձուլվածքինը՝ 16,5, ածխի հանույթինը՝ 48 և նավթինը՝ 68 անգամ։ Նավթի հանույթի աճը ռեսպուբլիկայում, միայն 1958 թվականին, 1,3 անգամ գերազանցել է 1913 թվականի Ռուսաստանի նավթի ամբողջ արտադրանքը։ Ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերությունն առաջատար տեղ է գրավում ընդհանուր միութենական արտադրության մեջ։ ՌՍՖՍՌ-ի տերիտորիայում գտնվող ձեռնարկությունները թողարկում են ամբողջ երկրի արտադրանքի երկու երրորդը։ Նրանց բաժին է ընկնում չուգունի ընդհանուր միութենական ձուլվածքի կեսը, նավթի հանույթի 78 տոկոսը, էլեկտրաէներգիայի արտադրության երկու երրորդը, ավտոմոբիլների 92 տոկոսը, ժողովրդական սպառման առարկաների հանրային արտադրության մեծ մասը։

Գոհացուցիչ են նաև գյուղատնտեսության ցուցանիշները։ ՌՍՖՍՌ-ում է գտնվում ՍՍՌՄ-ի ամբողջ ցանքատարածությունների համարյա 60 տոկոսը։ Ռուսաստանյան ֆեդերացիայի կոլտնտեսություններն ու սովխոզները տալիս են հացահատիկի, վուշի, արևածաղկի, կարտոֆիլի, բանջարեղենի, մսի, կաթի, բրդի, ձվի ընդհանուր միութենական արտադրանքի կեսից ավելին։

Ժողովրդական տնտեսության արագ զարգացմանը նպաստող կարևոր գործոն հանդիսացավ արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը։ Չէ՛ որ շատ ժամանակ չէ, ինչ աշխատում են ժողտնտխորհները, բայց արդեն խիստ զգալի է նրանց կատարած աշխատանքը, շատ վառ են արտահայտվել արդյունաբերության կառավարման նոր ձևի առավելությունները։

Այժմ լիովին օգտագործվում են ամեն մի ռեսպուբլիկայի, ամեն մի տնտեսական շրջանի հնարավորությունները, լայն հորիզոններ են բացվել տնտեսական ղեկավարների նախաձեռնության և աշխատավորների ստեղծագործական ակտիվության դրսևորման համար, պայմաններ են ստեղծվել՝ արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումներն ավելի արագորեն



արմատավորելու։ Ժողտնտխորհների ղեկավարությամբ ձեռնարկություններն ու կառույցները սկսել են ավելի լավ աշխատել։

Վերակառուցման բեղմնավոր արդյունքներն ակնհայտ երևում են ՌՍՖՍՌ-ի օրինակով։ 1958 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ դեկտեմբերին կատարեց համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը։ 1958 թվականին միայն արդյունաբերական արտադրանքը ռեսպուբլիկայում 2 անգամ գերազանցեց այն ամբողջ արտադրանքի ծավալը, որ ցարական Ռուսաստանում թողարկվում էր 1913 թվականին։ Ռուսաստանյան ֆեդերացիայի բոլոր ժողտնտխորհները կատարեցին տարեկան պլանը, ընդ որում 59 ժողտնտխորհ այն կատարեց ժամկետից շուտ։

1959 թվականին շարունակվեց ՌՍՖՍՌ-ի արդյունաբերական արտադրանքի հետագա աճը։ Կարելի է համարձակորեն ասել, որ մեր արդյունաբերական ձեռնարկությունները դեռ երբեք այսքան հաջող չեն աշխատել, ինչպես յոթնամյակի առաջին տարում։

Ռուսաստանյան ինդուստրիայի զարգացման հաջողությունները հնարավորություն են տալիս յոթնամյակի առաջին տարիներին արդեն հասնել արդյունաբերական արտադրանքի աճի ավելի բարձր տեմպերի, քան այդ տարիների համար նախատեսված է կոնտրոլ թվերով։ Այսպես, յոթնամյակի առաջին երկու տարում Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքը կաճի 19 տոկոսով, կոնտրոլ թվերով նախատեսված 16 տոկոսի փոխարեն։ Այս ամենը հաստատ հույս են ներշնչում, որ Ռուսաստանյան ֆեդերացիայի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, ինչպես և ամբողջ երկրում, ոչ միայն կկատարվի, այլև կգերակատարվի։

Յոթ տարում լայնորեն կզարգանա սև մետալուրգիան, կընդարձակվի նրա արդյունաբերական բազան, զգալի չափով կավելանա երկաթահանքի հանույթը, կվերակառուցվեն գործող հանքերը և կկառուցվեն ու շարք կմտնեն երկաթահանքի արտադրության նոր խոշոր ձեռնարկություններ։ Միխայլովի, Հարավ Կորոբովսկի, Լեբեդինսկի հանքերը Կուրսկի մագնիտային անոմալիայի շրջանում երկաթով կապահովեն կենտրոնի մետալուրգիական գործարանները, Կովդորսկի հանքը երկաթ կտա Չերեպովեցի մետալուրգիական գործարանին, Ակերմանովսկինը՝ Օրսկոխալիլովկի մետալուրգիական կոմբինատին. Կաչկանարսկի լեռնահարստացուցիչ մետալուրգիական կոմբինատը հումք կմատակարարի Նիժնի-Տագիլսկի մետալուրգիական կոմբինատին, Կորշունովսկի լեռնահարստացուցիչ կամբինատը՝ Հարավ-Սիբիրյան մետալուրգիական գործարանին։ Դոմենյան տնտեսության լայն զարգացումը հնարավորություն կտա ապահովելու չուգունի ձուլվածքի աճը։ Յոթնամյակում Ռուսաստանյան ֆեդերացիայի գործարաններում չուգունի ձուլվածքը կավելանա 69—84, պողպատինը՝ 60—69 տոկոսով։ Սև մետաղների արտադրության այսպիսի աճը պահանջում է առաջին հերթին, ընդարձակել գործող խոշոր ձեռնարկությունները՝ Մագնիտագորսկի կոմբինատը, Չելյաբինսկի, Չերեպովեցկի և Նովո-Լիպեցկի գործարանները, ինչպես նաև Կուզնեցկի, Օրսկո-Խալիլովսկի և Նիժնի-Տագիլսկի կոմբինատները։ Գործող ձեռնարկությունների ընդարձակման զուգընթաց հարկավոր է Սիբիրում ծավալել երկու նոր խոշոր մետալուրգիական գործարանների շինարարությունը, որոնք կհանդիսանան ՍՍՌՄ երրորդ մետալուրգիական բազայի հիմքը։

Մեծ հեռանկարներ են բացվում վառելիքի արդյունաբերության համար։

Առաջին հերթին դա վերաբերում է վառելիքի առավել խնայողաբեր տեսակներին՝ գազին, նավթին։ 1965 թվականին գազի հանույթը 1958 թվականի համեմատությամբ կավելանա համարյա 6 անգամ, իսկ նավթի հանույթը՝ 2,1—2,3 անգամ, որը հնարավորություն կտա բարելավելու ՌՍՖՍՌ-ի վառելիքային բազայի կառուցվածքը և նավթի ու գազի տեսակարար կշիռը բարձրացնելու ավելի քան երկու անգամ։

Ընթացիկ յոթնամյակում ՌՍՖՍՌ-ում կյուրացվեն խոշոր հանքավայրեր և կդրվեն նոր գազամուղներ։ Այդ հարմար և էժան վառելիքով կապահովվեն Լենինգրադի, Նովգորոդի, Կալինինի, Լիպեցկի, Մախաչկալայի, Ենակիևի, Սլավյանսկի, Լիսիչանսկի, Կերչի, Սիմֆերոպոլի, Սևաստոպոլի, Տուապսեի, Սոչիի բնակչությունն ու գործարանները, մինհրալնիեվոդի խմբի կուրորտները և մյուս քաղաքներն ու արդյունաբերական կենտրոնները։ Միաժամանակ առաջիկայում գազիֆիկացիայի կենթարկվեն շատ, այդ թվում այնպիսի խոշոր քաղաքներ, ինչպիսիք են՝ Սվերդլովսկը, Գորկին, Չելյաբինսկը, Մագնիտագորսկը։

Նախատեսված է մեծ չափերով ավելացնել նավթի հանույթը Բաշկիրիայի, Կույբիշևի, Սարատովի, Թաթարիայի, Ստալինգրադի մարզերի, ինչպես նաև Չեչենո-Ինգուշական ԱՍՍՌ-ի, Կրասնոդարի երկրամասի և ռեսպուբլիկայի մյուս շրջանների բազայի վրա։ Նավթի հանույթի աճին և նրա արագ վերամշակմանը զուգընթաց նախատեսվում է ավելացնել գազի հանույթը՝ պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի և այլ կարևորագույն քիմիական նյութերի արտադրության համար։ Առաջիկա յոթնամյակում բացառիկ արագությամբ կզարգանան քիմիական արդյունաբերության բոլոր ճյուղերը և, հատկապես, արհեստական սինթետիկ թելի, պլաստմասսաների և մյուս սինթետիկ նյութերի արտադրությունը։ Արտադրության քիմիացումը, ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումը, ժամանակակից էտապում կհանդիսանա տեխնիկական պրոգրեսի կարևորագույն ուղղություններից մեկը։ ՌՍՖՍՌ-ն երկրում առաջատար տեղ է գրավում ոչ միայն քիմիական արդյունաբերության հումքի ռեսուրսներով, այլև կարևորագույն քիմիական արտադրանքների թողարկմամբ։ Յոթնամյակի ընթացքում ՌՍՖՍՌ-ում քիմիական թելի արտադրությունը կավելանա 3—3,2, սինթետիկ կաուչուկինը՝ 2,6, պլաստմասսաներինը և սինթետիկ խեժինը՝ ավելի քան 5, հանքային պարարտանյութերինը՝ 2,6—2,8 անգամ։

Յոթնամյակի տարիներին կստեղծվի խսկական սովետական մեծ քիմիա։ ՌՍՖՍՌ-ում փաստորեն ստեղծվում է արդյունաբերության նոր ճյուղ՝ նավթաքիմիա, որը կաճի բնական և նավթագազի հսկայական պաշարների հիման վրա։ Եթե մինչև վերջին ժամանակներս այդ գազերից հիմնականում մշակվում էր միայն սինթետիկ էթիլային սպիրտ, ապա այսուհետև խոշոր մասշտաբներով կծավալվի սինթետիկ կաուչուկի նոր տեսակների, լայն ասորտիմենտի՝ պլաստմասսաների սինթետիկ թելերի արտադրությունը, որոնք անհրաժեշտ են արդյունաբերական նպատակներով և լայն սպառման առարկաներ թողարկելու համար։

Մի քանի անգամ կաճի հանքային պարարտանյութերի և քիմիական այլ արտադրանքների արտադրությունը, որոնք կբարձրացնեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը. կընդլայնվի օրգանական թունա-քիմիկատների, սերմերի ախտահանման և հակամոլախոտային դեղորայքի ասորտի-



մենտը։ Զգալի չափով կաճի արհեստական և սինթետիկ թելի արտադրությունը։ Այդ հնարավորություն կտա լիովին բարելավելու թեթև, տեքստիլ արդյունաբերության և դողերի արտադրության աճող պահանջները, ինչպես նաև արհեստական և սինթետիկ թելն արմատավորելու ինդուստրիայի մեջ՝ տեխնիկական կարիքների համար։ Ընդ որում այնպիսի սինթետիկ թելերը, ինչպիսիք են՝ կապրոնը, անիդը, լավսանը, նիտրոնը և էնանտը, մի շարք դեպքերում ոչ միայն կփոխարինեն դեֆիցիտային նյութերին, այլև դրանց արմատավորումը մի նոր քայլ կլինի տեխնիկական պրոգրեսի ճանապարհին։ Սինթետիկ կաուչուկի արտադրությունը, որն աշխարհում առաջին անգամ կազմակերպվել է Սովետական Միությունում, էլ ավելի բուռն կզարգանա։ Կգործեն սինթետիկ կաուչուկի նոր գործարաններ, ինչպես նաև կմեծանան Վորոնեժում, Յարոսլավլում և Կրասնոյարսկում գործող ձեռնարկությունների կարողությունները։

Քիմիական արդյունաբերությունը հատկապես արագ կզարգանա Պովոլժիեի, Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններում. սրանք, ինչպես հայտնի է, ունեն առավել շատ հումքային և էներգետիկ հնարավորություններ։ Պովոլժիեի շրջաններում առաջին անգամ կկազմակերպվի հանքային պարարտանյութերի, արհեստական և սինթետիկ թելերի, պլաստմասսաների և քիմիական այլ արտադրանքի արտադրությունը։ Յոթնամյակի ընթացքում Ուրալում կկառուցվեն և կգործարկվեն սինթետիկ կաուչուկի, օրգանական սինթեզի, ավտոդողերի, արհեստական և սինթետիկ թելի մի շարք նոր գործարաններ, և կընդարձակվեն գոյություն ունեցող ձեռնարկությունները։

Սոցիալիստական ինդուստրիայի հզոր վերելքը կապված է էլեկտրիֆիկացիայի հետագա զարգացման հետ։ ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումը նորից ընդգծեց երկրի տնտեսության կառուցվածքում էլեկտրիֆիկացիայի նշանակությունը, նշելով, որ այն տեխնիկական պրոգրեսի կարևորագույն օղակն է։ էլեկտրիֆիկացիան մեխանիզացիայի տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիֆիկացիայի, արտադրության մեջ քիմիական մեթոդների և նյութերի օգտագործման անհրաժեշտ պայմանն է։ Սովետական ժողովուրդը մոտենում է երկրի համատարած էլեկտրիֆիկացման լենինյան մեծ իդեաների իրականացմանը։ ՌՍՖՍՌ-ում յոթնամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունը կաճի ավելի քան երկու անգամ։ Ընդ որում անհրաժեշտ է ընդգծել, որ այստեղ ևս էլեկտրաէներգիայի զարգացման գլխավոր ուղղությունը կլինի առավելապես ջերմակայանների կառուցումը՝ էժան ածխի, բնական գազի և մազութի բազայի վրա. մի բան, որը քիչ կապիտալ ծախսերի պայմաններում կապահովի երկրի էներգետիկայի արագ զարգացման տեմպերը։

ՌՍՖՍՌ-ի Եվրոպական մասում ավարտվում է Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Կգործարկվեն նաև Կալինինի, Նովո-Կույբիշևյան ջերմաէլեկտրացենտրալները և այլ ջերմաէլեկտրակայաններ։ Ստեղծվում է ՌՍՖՍՌ-ի Եվրոպական մասի միասնական բարձրավոլտ էլեկտրահաղորդման սիստեմ, որը հնարավորություն կտա շատ ավելի բարձրացնելու ոչ միայն արդյունաբերությունը, այլև գյուղատնտեսությանը էներգիա մատակարարելու մակարդակը։ Ուրալում կգործարկվեն Վոտկինսկի հիդրոէլեկտրակայանը, Յայվինսկի, Տրոիցկի, Հարավ-Ուրալսկի, Վերին-Տագիլի պետական շրջանային էլեկտրակայանները և Կուրգանի ջերմաէլեկտրացենտրալը։

Սիբիրում կավարտվի աշխարհում խոշորագույն Բրատսկի հիդրոէլեկ-

տրակայանի կառուցումը՝ 4,5 միլիոն կիլովատ կարողությամբ, և կծավալվի Կրասնոյարսկի ավելի հզոր հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Կուզբասի շրջանում շարք կմտնեն Տոմ-Ուսինսկի և Բելովսկի խոշոր ջերմաէլեկտրակայանները, Կրասնոյարսկի երկրամասում՝ Նազարովսկի էլեկտրակայանը։ Երբ Սիբիրում շահագործման հանձնվեն կառուցվող էլեկտրակայանները, այստեղ ավելի շատ էլեկտրաէներգիա կարտադրվի, քան Եվրոպայի ամեն մի կապիտալիստական երկրում։ ՌՍՖՍՌ-ում կկառուցվեն նաև ատոմային նոր էլեկտրակայաններ։

ՌՍՖՍՌ-ի մեքենաշինությունը հատուկ տեղ է գրավում երկիրը ժամանակակից մեխանիզմներով, հաստոցներով և սարքավորումներով էլ ավելի հագեցնելու գործում։ Մեքենաշինությունը արդյունաբերության ամենակարևոր, ամենապրոգրեսիվ և դինամիկ ճյուղն է, այն ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման հիմքն է և որոշում է տեխնիկական պրոգրեսի տեմպերն ու ուղղությունը հանրային արտադրության բոլոր ճյուղերում։ Արտադրության հետագա մեքենայացման ու ավտոմատացման բնագավառում ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի առաջադրած խնդիրների լուծումը պահանջում է մեքենաշինության բոլոր ճյուղերի նոր վերելք։ Ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկությունները բարձր արտադրողական սարքավորումներով պետք է ապահովեն, առաջին հերթին, սև և գունավոր մետալուրգիան, նավթի և գազի արդյունաբերությունը, էներգետիկան և շինարարությունը։

Բացառիկ նշանակություն է տրվում լեռնահանքային արդյունաբերության համար արտադրվող սարքավորումների ավելացմանը։ Այդ նպատակով ՌՍՖՍՌ-ի ձեռնարկություններում զգալիորեն կավելանա, օրինակ, էքսկավատորների թողարկումը։ Մոտիկ ժամանակներս արդեն երկիրը կստանա նոր էքսկավատորներ 25 խորանարդ մետր տարողությամբ շերեփով և հարյուր մետր երկարությամբ նետով։ Այսպիսի գիգանտ հողափորը փոխարինում է հազար բանվորի։

Մեծ են ՌՍՖՍՌ-ի մեքենաշինարարների խնդիրները նաև էլեկտրատեխնիկայի բնագավառում։ Յոթնամյակի տարիներին զգալի չափով կավելանա տուրբինների, խոշոր էլեկտրամեքենաների, գեներատորների, էլեկտրաշարժիչների, կաբելային շինվածքների արտադրությունը։ Արագությամբ կընդարձակվի ուժային տրանսֆորմատորների, կոնդենսատորների, համուղղիչների, բարձրավոլտ ապարատուրայի, կոմպլեքսային կայանների և բաժանարար հարմարանքների թողարկումը։ Մի քանի անգամ կավելանա շինանյութերի (հատկապես սարքավորումների ցեմենտի գործարանների համար) արտադրությունը։

Մեծ պահանջ է ներկայացվում մետաղահատ հաստոցներ, դարբնա-մամլակային և գլանվածքի սարքավորումներ թողարկող արդյունաբերությանը։ Կավելացվի ագրեգատային հաստոցների, ավտոմատների և ավտոմատ գծերի, խոշոր մամլիչների և բարձր արտադրողական դարբնա-մամլակային և գլանվածքի մեքենաների թողարկումը։ Լայն չափերով կծավալվի սրող և վերջնական մշակում կատարող հաստոցների պատրաստումը, որպիսիք մինչև այժմ ընդհանրապես չեն թողարկվել ՌՍՖՍՌ-ի գործարաններում։ Զգալի չափերով կզարգանա գործիքների արտադրությունը, որի համար անհրաժեշտ է ավտոմատացնել մետալուրգիական, քիմիական, նավթի, գազի արդյունաբերությու-



նը։ Հատկապես կաճի տեխնիկական պրոգրեսի և ավտոմատացման համար անհրաժեշտ այնպիսի միջոցների արտադրությունը, ինչպես՝ ջերմաէներգետիկ պրոցեսները հսկող և կարգավորող գործիքները, հաշվիչ և մաթեմատիկական մեքենաները։

Անհրաժեշտ է ընդգծել, ինչպես դա նշված է պարտիայի XXI համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներում, որ մեքենաներ ստեղծել և թողարկել հնարավոր է՝ հաշվի առնելով գիտության ու տեխնիկայի նվաճումներն ու հայտնագործությունները (հատկապես ռադիոէլեկտրոնիկայի, գերհաղորդականության, ուլտրաձայնի, ռադիոակտիվ իզոտոպների, կիսահաղորդիչների, միջուկային էներգիայի և այլն)։

Շատ բան կարվի թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունները նորագույն տեխնիկայով հագեցնելու համար։ Ծավալուն աշխատանքներ են կատարվելու ավտոմոբիլաշինության ասպարեզում. չէ՛ որ Ռուսաստանյան ֆեդերացիան արտադրում է Սովետական Միությունում թողարկվող բոլոր ավտոմոբիլների ավելի քան իննսուն տոկոսը։ Ավտոմոբիլաշինությունը կզարգանա գործարանների լայն մասնագիտացման և գոյություն ունեցող ցեխերի ու ձեռնարկությունների վերակառուցման ուղիով։ Ընդ որում զգալի չափով կավելանա մեծ բեռնատարողության ավտոմոբիլների և կիսակցվող ավտոգնացքների, երկու և երեքստնանի բարձրացված արագության ավտոմեքենաների շինարարական ինդուստրիայի և ճանապարհաշինարարության կարիքների համար զանազան մոդիֆիկացիայի քարշակների արտադրությունը, մասնագիտացված թափքեր ունեցող ավտոմոբիլների, ինքնաթափերի, ինչպես նաև փոքր բեռնատարողության (1—1,5 տոննա) ավտոմոբիլների և զանազան ավտոբուսների թողարկումը։

Դժվար է այս հոդվածում պատմել այն ամբողջ նորի մասին, ինչ յոթնամյակի ընթացքում կարտադրեն ՌՍՖՍՌ-ի մեքենաշինական գործարանները. չէ՛ որ յոթ տարում նախատեսված է մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքների արտադրությունն ավելացնել համարյա երկու անգամ։

Մեքենաշինության զարգացումը պահանջում է առավել չափով մասնագիտացնել ու կոոպերացնել արտադրությունը, արմատապես բարելավել հին սարքավորումների մոդեռնիզացման գործը և տեխնոլոգիական պրոցեսները՝ առաջին հերթին մեքենայացման և ավտոմատացման լայն արմատավորման հիման վրա։

Ռուսաստանյան ֆեդերացիան, ինչպես հայտնի է, աշխարհում առաջին տեղն է գրավում անտառանյութի պաշարներով։ Անտառային մասսիվները գլխավորապես ընկած են Սիբիրի, Հեռավոր Արևելքի շրջաններում, Ուրալում, ինչպես նաև Հյուսիսի և Հյուսիս-Արևմուտքի շրջաններում։ Իսկ Ռուսաստանի կենտրոնական Արևմտյան և Հարավային շրջաններում անտառային ռեսուրսները սահմանափակ են։ Այդ պատճառով նախատեսվում է անտառանյութի հայթայթման մեծ աճ Հյուսիսում, Ուրալում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում և դրանց կրճատում ռեսպուբլիկայի սակավ անտառային շրջաններում։

Մեր երկրում բնակարանային շինարարության արագ աճին զուգընթաց խիստ աճել է կահույքի պահանջը։ Սակայն կահույքի թողարկումը դեռևս անբավարար է, ասորտիմենտը սահմանափակ, իսկ որակը միշտ չէ, որ համապատասխանում է այժմյան պահանջներին։ Բնակչության՝ կահույքի կարիքը

բավարարելու համար նախատեսված է ավելացնել կահույքի արտադրությունը, ընդլայնել ասորտիմենտը և բարձրացնել որակը։ Այդ նպատակով կվերակառուցվեն կահույքի գործող ֆաբրիկաները և ՌՍՖՍՌ-ի շատ շրջաններում կկառուցվեն նոր ձեռնարկություններ։

Յոթնամյա պլանով նախատեսվում է խիստ ավելացնել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Պարտիան և կառավարությունը բոլոր միջոցները ձեռնարկում են սովետական մարդկանց կոորեղենով, կոշկով և այլ ապրանքներով լիովին բավարարելու համար։ Այս յոթ տարվա ընթացքում մենք բավականին առաջ կգնանք և կմոտենանք սովետական մարդկանց անընդհատ աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքները լիովին բավարարելու խնդրի լուծմանը։ Տեքստիլ և թեթև արդյունաբերության մեջ մի քանի անգամ կաճի արտադրանքի թողարկումը և կբարելավվի ասորտիմենտը։ Լայնորեն կգործադրվի արհեստական և սինթետիկ թելը։ Հատուկ ուշադրություն կդարձվի մանկական իրերի թողարկմանը։

Գյուղատնտեսական հումքի ռեսուրսների աճման կապակցությամբ կզարգանա նաև ՌՍՖՍՌ-ի սննդի արդյունաբերությունը։ Կբարելավվի արտադրվող սննդամթերքի որակը և կընդլայնվի ասորտիմենտը։

Հատկապես արագ կզարգանա շաքարի արդյունաբերությունը։ ՌՍՖՍՌ-ում շաքարի արտադրությունը կավելանա ավելի քան երեք անգամ։ Դրա համար նախատեսված է շաքարի արտադրությունն ավելացնել ոչ միայն ռեսպուբլիկայի կենտրոնական շրջաններում և Հյուսիսային Կովկասում, այլև Ուրալում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում։

Յոթնամյա պլանը լայն հեռանկարներ է բացում մսի և կաթի արդյունաբերության առջև։ Առաջիկա տարիներին մսի, կաթի և յուղի արտադրությունն ավելանալով պետք է հասնի ԱՄՆ-ում մեկ շնչին ընկնող այդ արտադրանքների արտադրության մակարդակին։ Պետական այդ կարևոր առաջադրանքի կատարման համար պետք է ոչ միայն զգալիորեն ավելացնել անասունների գլխաքանակը և բարձրացնել նրանց մթերատվությունը, այլև ընդլայնել մսի և կաթի արդյունաբերության բազան։

Ժողտնտխորհների ստեղծումից հետո Ռուսաստանյան ֆեդերացիայի տեղական արդյունաբերությունը դարձել է մեծ ուժ։ Այն միավորում է մինչև տասը հազար ձեռնարկություն, որոնցում զբաղված է մոտ մեկ միլիոն յոթ հարյուր հազար մարդ։ 1958 թվականին այդ ձեռնարկությունները թողարկել են ավելի քան իննսուն միլիարդ ռուբլու արտադրանք։ Տեղական արդյունաբերության էական առանձնահատկությունը նրա բազմաճյուղ կառուցվածքն է։ ՌՍՖՍՌ-ում այն միավորում է 21 ճյուղ։

Յոթնամյակի ընթացքում տեղական արդյունաբերության արտադրության մակարդակը պետք է բարձրանա այնքան, որ նրա արտադրանքը, ժողտնտխորհների ձեռնարկությունների թողարկած ապրանքների հետ միասին, հիմնականում բավարարի բնակչության լայն սպառման առարկաների և ամենօրյա գործածության իրերի, ինչպես նաև տեղական վառելիքի և շինանյութերի, հասարակ կահույքի և գործիքների պահանջը։

Ներկա յոթնամյակը հանդիսանում է ՌՍՖՍՌ-ի բոլոր, հատկապես արևելյան շրջաններում, շինարարության աննախընթաց ծավալման ժամանակաշրջան։



Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման համար կներդրվի 954—974 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 85—89 տոկոսով ավելի, քան անցած յոթ տարում. ընդ որում նախատեսված է արդյունաբերության մեջ ներդնել երկու անգամ ավելի շատ միջոցներ։ Հատկապես կաճեն կապիտալ ներդրումները սև մետալուրգիայի, քիմիական, նավթի, գազի արդյունաբերություններում։ Կապիտալ ներդրումների մեծ մասը նախատեսվում է տրամադրել գործող ձեռնարկությունների ընդլայնմանը և վերակառուցմանը։ Հին սարքավորումները նոր, ավելի արտադրողական սարքավորումներով փոխարինելուն։ Դա հնարավորություն կտա քիչ կապիտալ ներդրումներով ստանալ արտադրական մեծ կարողություններ։

Հենց այսպիսի դրական արդյունքներ ստացվեցին պարտիայի Վլադիմիրի մարզկոմի և Վլադիմիրի ժողտնտխորհի՝ գործող ձեռնարկությունների ընդլայնման և վերակառուցման ուղղությամբ կիրառած միջոցառումներից, որոնք հնարավորություն տվեցին ընդլայնել կարողությունները և ավելացնել արդյունաբերական արտադրանքների թողարկումը առավել քիչ կապիտալ ներդրումներով և ավելի կարճ ժամկետներում։ Վլադիմիրի մարզկոմի և Վլադիմիրի ժողտնտխորհի նախաձեռնությունը լայնորեն տարածվեց նաև ՌՍՖՍՌ-ի մյուս վարչական շրջաններում։

Պարտիայի XXI համագումարն իր որոշումներում մի շարք խոշոր միջոցառումներ նշեց սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ։ Այդ միջոցառումների մեջ համաժողովրդական նշանակություն ունի բնակարանային շինարարության վիթխարի ծավալը։

Վերջին տարիներին բնակարանային շինարարության տեմպը ՌՍՖՍՌ-ում, ինչպես և ամբողջ երկրում, անընդհատ աճել է. Ռուսաստանյան ֆեդերացիայի բնակարանային ֆոնդը քաղաքներում և քաղաքատիպ ավաններում, նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ, ներկայումս ավելացել է չորս անգամ։ Բայց ռեսպուբլիկայի շատ քաղաքներում, ավաններում դեռևս բարեկարգ բնակարանների մեծ կարիք է զգացվում։ Ռուսաստանյան ֆեդերացիայում յոթնամյակի ընթացքում պետության միջոցներով նախատեսվում է կառուցել մոտ երկու հարյուր միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Սա երկու անգամ ավելի է, քան շահագործման է հանձնվել անցած յոթ տարում։

1959—1960 թվականների բնակարանային շինարարության պլանը կատարվելուց հետո, ՌՍՖՍՌ-ի քաղաքների և բանվորական ավանների աշխատավորների՝ բնակարաններով ապահովվածությունը, 1956 թվականի համեմատությամբ, կավելանա ավելի քան մեկ ու կես անգամ։

Վիթխարի խնդիրներ են դրված նաև գյուղատնտեսական արտադրության առջև։ Ինչպես նշված է պարտիայի XXI համագումարի որոշումներում, պետք է հասնել գյուղատնտեսական արտադրության այնպիսի վերելքի, որը հնարավորություն տա բնակչությանը լիովին ապահովելու լայն ասորտիմենտի ու բարձրորակ կենսամթերքներով և բավարարելու պետության մյուս բոլոր պահանջմունքները գյուղատնտեսական հումքի ասպարեզում։ Յոթնամյակում ՌՍՖՍՌ-ն զգալի չափով կավելացնի հացահատիկի արտադրությունը։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, նախատեսվում է գյուղատն-

տեսական մթերքները ավելացնել մոտավորապես հետևյալ չափերով. գյուղատնտեսական բույսերի սերմերի արտադրությունը՝ 1,4 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 2—2,2, վուշաթելինը՝ 1,4, կարտոֆիլինը՝ 1,8, բանջարեղենինը՝ 2,2, մսինը՝ 2,4, կաթինը՝ 1,6—1,7, ձվինը՝ 1,6, բրդինը՝ 1,7 անգամ։

Ընթացիկ յոթնամյակում արմատական ռեֆորմներ կկատարվեն ժողովրդական կրթության բնագավառում Գերագույն Սովետի՝ դպրոցի կապը կյանքի հետ ամրապնդելու և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին ընդունած օրենքի կապակցությամբ։

Անհրաժեշտ էր ասել նաև տրանսպորտի աճման, կուլտուրական շինարարության, գիտության զարգացման, կադրերի պատրաստման և շատ ու շատ ուրիշ բաների մասին։ Շատ էջեր կպահանջվեն արժեքավորելու մեր դարաշրջանի մեծ փաստաթղթի՝ յոթնամյա պլանի բոլոր գլուխներն ու ենթագլուխները, մի պլան, որի ամեն մի տողը արտացոլում է հզոր Սովետական պետության հաղթական ընթացքը։

Ռուսաստանյան Ֆեդերացիայի աշխատավորները, ինչպես և մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդները, սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, պրակտիկ գործերով ցուցադրում են իրենց անսասան վճռականությունը կարճ ժամանակում կենսագործելու մեր երկրում կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման վեհ ծրագիրը։

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄԸ ՕՐՎԱ ՊԱՀԱՆՋՆ Է

Տ. ՏԻԳՐԱՆՅԱՆ, Յ. ԱՍԱՏՐՅԱՆ

Ամեն օր մամուլը և ռադիոն ուրախալի լուրեր են հաղորդում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների կողմից յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով, հաջողությամբ կատարելու մասին։ Սովետական Հայաստանում մրցությունն ընթանում է յոթնամյակի ընթացքում խաղողի և պտղի արտադրությունը 2,8 անգամ, ծխախոտինը և կարտոֆիլինը՝ 20-ական տոկոսով, մսի, կաթի, բրդի, ձվի և բանջարեղենի արտադրությունը 1,3—1,7 անգամ ավելացնելու ուղղությամբ։

Հաշվի առնելով առկա հնարավորությունները, գյուղատնտեսական աշխատողները պարտավորություն են վերցրել յոթնամյակի առաջադրանքները կատարել ժամանակից շուտ՝ բամբակի և շաքարի ճակնդեղի արտադրության գծով 1960 թվականին, ծխախոտինը և բանջարեղենինը՝ 1961 թվականին, կաթինը, ձվինը, մսինը ու բրդինը 1962—63 թվականներին, խաղողինը՝ 1964 թվականին։

Ստանձնած այդ պարտավորությունների ժամանակին և անթերի կատարման երաշխիքը ագրոզոոտեխնիկական բոլոր միջոցառումների հետ զուգընթաց կոլտնտեսությունների ու սովխոզների նյութա-տեխնիկական բազայի հարաճուն ամրապնդումն ու տեխնիկայի ռացիոնալ օգտագործումն է, տեխնիկական պրոգրեսի և նորագույն տեխնիկայի արմատավորումը։

ՍՄԿՊ XXI համագումարի կողմից հաստատված՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959-1965 թվականների կոնտրոլ թվերում նշված է, որ «Գյուղատնտեսության զարգացման 1959-1965 թվականների առաջադրանքների կատարման վճռական պայմաններից մեկը արտադրության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ըստ ամենայնի ընդլայնումն է, առաջավոր տեխնիկայով կոլտնտեսությունների ու սովխոզների հետագա զինումը»։

Անշեղորեն կիրառելով պարտիայի ու կառավարության որոշումները՝ ՄՏ կայանները վերակազմելու և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու մասին, մինչև 1959 թվականի հուլիսի 1-ը ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 84 տոկոսը վերակազմված ՄՏ կայաններից գնել է շուրջ 64,7 միլիոն ռուբլու մեքենաներ և ստեղծել իր մեքենա-տրակտորային պարկը։ Կոլտնտեսությունները 1959 թվականի հունվարի 1-ի դրությամբ ունեին 4250 տրակ-

*տոր (15-ուժանոց), 825 կոմբայն և հազարավոր զանազան տեսակի նորագույն գործիքներ ու մեքենաներ։*

*Տեխնիկական այդ վերազինության շնորհիվ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էներգետիկայի բաղայում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ։ 1916 թվականին Հայաստանում գյուղատնտեսության էներգառեսուրսների 100 տոկոսը, իսկ կոլեկտիվացման շրջանից առաջ (1928 թ.) 92,6 տոկոսը հանդիսացել են բանող անասունները։ Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում էներգառեսուրսները աճել են մոտ 3,5 անգամ, ըստ որում ամբողջ էներգետիկայի 94 տոկոսը (1958 թ.) կազմում են մեխանիկական շարժիչները, այդ թվում տրակտորները՝ 15,9, կոմբայնները՝ 9,9, ավտոմեքենաները՝ 57,6 (առանց մարդատարների), էլեկտրաշարժիչները 9,8 տոկոսով և այլն։ Բանող անասունների տեսակարար կշիռը ընդհանուր էներգետիկայի մեջ կազմում է միայն 6 տոկոս։*

*Տեխնիկայի այդ առաջընթացը սովխոզներում, կոլտնտեսություններում և ՆՏԿ-ներում առեղծել է տեխնիկական կադրերի և մասնագետների մեծ բանակ. 1958 թվականին կոլտնտեսություններում աշխատում էին 4700 տրակտորիստ, 810 կոմբայնավար, իսկ ավտովարորդների և այլ մեքենավարների թիվը հասավ ավելի քան 4000-ի։ Կոլտնտեսություններում տեխնիկան նոր պայմաններում օգտագործվում է ավելի արտադրողաբար։ 1959 թվականի առաջին կիսամյակին մեքենա-տրակտորային պարկը 3,3 տոկոսով ավելի շատ աշխատանք կատարեց (արտահայտված փափուկ վարով), քան կատարվել էր 1958 թվականի նույն ժամանակամիջոցում։*

*Տրակտորային աշխատանքների ինքնարժեքը (մեկ հեկտար փափուկ վարի հաշվով) 1957 թվականի 54 ռուբլի 82 կոպեկից (ներառյալ կոլտնտեսությունների ծախսած աշխօրերի արժեքը) 1958 թվականին կազմեց 46 ռուբ. 10 կոպ., կամ ինքնարժեքը մեկ տարվա ընթացքում իջավ 16 տոկոսով, որի շնորհիվ կոլտնտեսությունները տնտեսեցին մոտ 7,5 միլիոն ռուբլու միջոցներ։*

*Յոթնամյակի առաջադրանքների կատարման և գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում շեշտակի վերելք ստեղծելու համար պարտիան խնդիր է դրել մոբիլիզացնել արտադրության ընդերքում եղած բոլոր ռեզերվները։ Այդպիսի հարուստ ռեզերվների աղբյուր է գյուղատնտեսական տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը։*

*ՄՏ կայանների վերակազմելը և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելը լայն հնարավորություն են ստեղծել տեխնիկան օգտագործելու արտադրության բոլոր ճյուղերում, աշխատանքի բոլոր տեսակներն առավել չափով մեքենայացնելու և էլեկտրիֆիկացնելու համար։ Սակայն ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների սեփական տեխնիկայի մեկ տարվա (1958 թ.) աշխատանքի փորձը ցույց տվեց, որ չնայած գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման և էլեկտրիֆիկացման զգալի առաջընթացին, գյուղատնտեսության առանձին ճյուղերի՝ այգեգործական, բանջարաբուծական, անասնապահական և այլ աշխատանքների պրոցեսների մեքենայացումը դեռևս ետ է մնում։ Այդ է ցույց տալիս կոլտնտեսությունների գործունեության 1958 թվականի արդյունքների վերլուծությունը։ Պարզվում է, որ կոլտնտեսությունների 34 տեսակի գյուղատնտեսական հիմնական աշխատանքներից 100 տոկոսով մեքենայացված են միայն 5 տեսակը. 70—90 տոկոսով՝ 3 տեսակը (տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, ճակնդեղի ցանքը, դրանց միջշարքային*



*մշակությունը, հացահատիկային կուլտուրաների ցանքը, վարի և հողի նախացանքային մշակության հետ կապված աշխատանքները)։*

*Ռեսպուբլիկայում հացահատիկի զտումը մեքենայացված է 44 տոկոսով, սիլոսի համար եգիպտացորենի բերքահավաքը՝ 38, կարտոֆիլի տնկումը՝ 30, իսկ խոտի ու ծղոտի դիզումը, կարտոֆիլի հավաքը մեքենայացված են 0,2-ից 2 տոկոսով։ Կոլտնտեսություններում հացահատիկի, բամբակի, շաքարի ճակընդեղի, եգիպտացորենի, կերային և այլ կուլտուրաների մշակության հիմնական աշխատանքներն այժմ կատարվում են մեքենաների և շարժիչների միջոցով։ Սակայն ուշադրության արժանի է նաև այն փաստը, որ բուսաբուծության մեջ ձեռքով կատարվող աշխատանքների վրա (1958 թ.) ծախսվել է ընդհանուր աշխօրերի 86 տոկոսը, կամ 33 միլիոն աշխօրերից ձեռքի աշխատանքների վրա ծախսվել է 30,2 միլիոնը։ Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսությունը մեր ռեսպուբլիկայի տեխնիկապես հագեցված գյուղատնտեսական արտելներից մեկն է, սակայն 1958 թվականին մեկ հեկտար բամբակի ցանքատարածության մշակման վրա ծախսել է 169 աշխօր, որից ձեռքի աշխատանք՝ 136,3 աշխօր։*

*Եթե բամբակի հումքի (մեկ ցենտների) արտադրության պրոցեսում կոլտնտեսությունը կատարել է մոտ 25 տեսակ ձեռքի աշխատանք, որոնց վրա ծախսվել է 7 մարդ-օր, ապա միայն ձեռքի քաղհանի ու փխրեցման (քեթմեններով) և բերքը ձեռքով հավաքելու (չանաքի) վրա՝ 3,1 մարդ-օր, կամ այդ երկու աշխատանքների վրա ծախսվել է ընդհանուր աշխատանքային ծախքերի 47 տոկոսը։*

*Ռեսպուբլիկայի բամբակացան շրջանները մինչև այժմ այդ երկու աշխատանքների վրա ծախսել են բամբակի արտադրության վրա ծախսված ամբողջ աշխօրերի 40—50 տոկոսը։ Ահա թե ինչու պարտիան և կառավարությունը բամբակագործների անհետաձգելի խնդիրը համարեցին անհապաղ անցնել բամբակի մշակման կոմպլեքսային մեքենայացման։*

*Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների պայմաններում գյուղատնտեսական բոլոր տեսակի (անասնաբուծության և բուսաբուծության մեջ) ընդհանուր աշխատանքներից մոտ 70-ը մոտակա տարիներում հնարավոր է լրիվ մեքենայացնել, ներկայիս մեքենայացված 30—35-ի փոխարեն։ Առաջին հերթին այս նպատակին են ծառայելու կոլտնտեսությունների և ՆՏ կայանների մեքենա-տրակտորային պարկի հարուստ ռեզերվները, որոնք դեռևս անբավարար են օգտագործվում։ Վերցնենք, օրինակ, կոլտնտեսությունների մեքենա-տրակտորային պարկի կատարած աշխատանքները։ 1958 թվականին կոլտնտեսությունների մեկ տրակտորի (15 ուժանոց) միջին տարեկան արտադրանքը հասավ 296 հեկտար փափուկ վարի, մի փոքր ավելի, քան 1957 թվականին։ Սակայն մի քանի շրջաններում տրակտորային պարկն օգտագործվել է ոչ լրիվ բեռնվածությամբ։ Այսպես, նախալեռնային գոտու կոլտնտեսություններում (Կոտայք, Աշտարակ, Թալին) 15 ուժանոց մեկ տրակտորը տարեկան կատարում է միջին հաշվով 186—220 հեկտար փափուկ վար, Ազիզբեկովի, Եղեգնաձորի և Շամշադինի շրջաններում՝ 200—207, իսկ Կիրովականի շրջանում՝ 142 հեկտար։ Այդ տեսակետից դրությունը բարվոք չէ նաև Արարատյան հարթավայրի կոլտնտեսություններում, ուր տրակտորների բեռնվածությունն ավելի ցածր է, քան լեռնային ու նախալեռնային շրջաններում։ Այդ գոտում մեկ տրակտորը 1958 թվականին կատարեց միջին հաշվով*

264 հեկտար փափուկ վար և այդ այն ժամանակ, երբ Շիրակի, Սևանի, Զանգեզուրի, Լոռի-Փամբակի, Հյուսիս-արևելյան և այլ լեռնային ու նախալեռնային գոտիների կոլտնտեսություններում 15 ուժանոց մեկ տրակտորը տարեկան կատարել է 291—343 հեկտար վար, ընդ որում Զանգեզուրի գոտու բազմաթիվ կոլտնտեսություններում՝ 300, իսկ Մարտունու և Բասարգեչարի շրջաններում՝ մոտ 400 հեկտար։

Հաշվարկումներից պարզվում է, որ ռեսպուբլիկայում մեկ տրակտորը (15 ուժանոց) տարվա ընթացքում (1958 թ.) ընդամենը աշխատել է 93 տրակտոր-օր, այսինքն՝ այնքան, որքան 1957 թվականին, իսկ առանձին շրջաններում՝ ավելի պակաս (Հոկտեմբերյանում՝ 60, Շահումյանում՝ 86, Կիրովականում՝ 44, Աղինում 54 տրակտոր-օր և այլն)։ Այն դեպքում, երբ ռեսպուբլիկայում տրակտորային աշխատանքների համար բարենպաստ օրերի թիվը լինում է 180—240 և ավելի։

Բերված փաստերը ցույց են տալիս, որ կոլտնտեսություններում հնարավոր է զգալի չափով ավելացնել տրակտորների բեռնվածությունը և մեքենայացնել ձեռքով կատարվող շատ աշխատանքներ։

Այսպես, եթե բամբակացան և ճակնդեղագործ կոլտնտեսություններում լիովին կիրառվի ցանքերի քառակուսի բնային եղանակը և մեքենաներով կատարվի բերքահավաքը, օգտագործվի կոլտնտեսություններում և ՆՏԿ-ներում եղած ողջ տեխնիկան, ապա միայն այդ աշխատանքների վրա մինչև այժմ կատարվող աշխատանքային ծախսումները կկրճատվեն 2—3 անգամ։

1959 թվականին ռեսպուբլիկայում կատարվել է ընդամենը 933 հեկտար բամբակենու քառակուսի բնային ցանք, որը կազմում է ընդհանուր ցանքատարածությունների միայն 7 տոկոսը, որից երկկողմանի մշակման է ենթարկվել մոտ 650 հեկտարը։ Այդ գործում լավ օրինակ ցույց տվեցին Վեդու շրջանի կոլտնտեսությունները, որոնք 1959 թվականին կատարեցին 410 հեկտար բամբակենու քառակուսի բնային ցանք և երկկողմանի մշակություն։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նշում են, որ ներկայումս բամբակագործության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման գլխավոր օղակներն են՝ բամբակենու երկկողմանի մեքենայական մշակումը և բերքահավաքը։ Առանց մեքենաների լայն կիրառման հնարավոր չէ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը բամբակագործության և այլ կուլտուրաների գծով։ Չնայած Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունները վերակազմված ՄՏ կայաններից գնել են «ՍԽՄ—48» մարկայի բամբակահավաք 41 մեքենա, սակայն այդ մեքենաները արտադրության մեջ չափազանց անբավարար են օգտագործվում։ Այդ է պատճառը, որ ռեսպուբլիկայում մեկ ցենտներ բամբակի հումքի արտադրության վրա (1958 թ.) ծախսվել է 7,9 մարդ-օր և ինքնարժեքը կազմել է 137 ռուբլի, իսկ Միջինասիական ռեսպուբլիկաների բազմաթիվ շրջաններում, որտեղ բամբակի հումքի 70—80 տոկոսը հավաքվում է մեքենաների միջոցով, մեկ ցենտների արտադրության վրա ծախսվել է 2—2,5 մարդ-օր։

Շաքարի ճակնդեղի արտադրության մեջ ներդնելով միայն «ՍԿԵՄ—3» մարկայի ճակնդեղահավաք կոմբայնը և «ՏՊՍ—18» մարկայի նոսրացման և քաղհանի քարշակը, հնարավոր է դառնում 4—5 անգամ իջեցնել աշխատանքային ծախսումները։ Սակայն Ախուրյանի շրջանում եղած 2 ճակնդեղահավաք կոմբայնները բոլորովին չեն օգտագործվում, իսկ, ընդհանրապես, ճակնդեղագործական կոլտնտեսությունները այդ մեքենաների պահանջ (1960 թվականի հայտերում) չեն ներկայացրել։



Արտադրության մեջ դժվարությամբ են արմատավորվում նաև կախովի մեքենաները և գործիքները։ Կոլտնտեսություններում եղած 2232 տրակտորային գութանների մոտ 30 տոկոսը կախովի է, որոնց մեծ մասը չի օգտագործվում, չնայած դրանց կիրառումը կրկնակի չափով կրճատում է ագրեգատի սպասարկող անձնակազմը, բարձրացնում ագրեգատների մանևրայնությունը, արտադրողականությունը և այլն։ Վատ են օգտագործվում նաև «ԳՏԲ—2,2» մարկայի տրակտորային կողային փոցխերը՝ Հրազդանում, Բասարգեչարում, Մարտունիում, Կամոյում և այլ շրջաններում, եգիպտացորենի «ԿՈՒ—2 Ա» կոմբայնները, անչատ բերքահավաքի մեքենաները՝ Սիսիանում, սիլոսահավաք «ՍԿ—2,6» կոմբայնը՝ Բասարգեչարում, սկավառակավոր փոցխերը և համատարած մշակման կուլտիվատորները՝ Զանգեզուրի գոտու կոլտնտեսություններում։

Վերջին տարիներում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում զգալիորեն բարելավվել է էլեկտրաէներգիայի օգտագործումը։

1953 թվականի համեմատ, 1958 թվականի վերջում բնակչության կենցաղային կարիքների համար օգտագործված էլեկտրաէներգիան ավելացել է 3, իսկ արտադրական նպատակների համար՝ 3,5 անգամ։ Եթե մինչև 1953 թվականը կոլտնտեսություններում միջին հաշվով տեղադրվել է 2 էլեկտրաշարժիչ, ապա 1958 թվականի վերջում այն հասել է 4-ի։ Միայն 1957—1958 թվականներին կոլտնտեսություններում տեղադրվել են այնքան էլեկտրաշարժիչներ, որքան մինչև 1953 թվականը միասին վերցրած։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մոտ 90 տոկոսը այժմ էլեկտրիֆիկացված է։ Սակայն ռեսպուբլիկայի մի շարք շրջանների կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը դեռևս դանդաղ է ընթանում։ Այսպես, օրինակ, Ղափանի շրջանում էլեկտրիֆիկացված չեն կոլտնտեսությունների 58,5, Բասարգեչարում՝ 58,0, Թալինում՝ 56,7, Կարմիրում՝ 39,0 տոկոսը և այլն։

Ուսումնասիրություններից պարզվում է նաև, որ 1958 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում եղած մոտ 3000 էլեկտրաշարժիչներից արտադրության մեջ բոլորովին չեն օգտագործվել 578-ը, կամ 20,5 տոկոսը։ Ընդ որում, եթե չօգտագործված էլեկտրաշարժիչները արտահայտենք իրենց գումարային հզորությամբ, ապա այն կկազմի մոտ 6330 կվտ, կամ էլեկտրաշարժիչային պարկի ընդհանուր հզորության 25 տոկոսը։

Շատ կոլտնտեսություններում կան անհրաժեշտ պայմաններ՝ ընդլայնելու էլեկտրաէներգիայի օգտագործումը արտադրության բոլոր ճյուղերում։

Կոլտնտեսային արտադրության, հատկապես անասնաբուծության մեջ, էլեկտրաէներգիան օգտագործվում է խիստ անբավարար։ Այսպես, եթե 1958 թվականին կոլտնտեսություններում հաշվվում էր մոտ 3000 էլեկտրաշարժիչ՝ 29,1 հազար կվտ ընդհանուր կարողությամբ, դրանցից անասնաբուծության մեջ օգտագործվում էր միայն 17 տոկոսը և նրանց ընդհանուր կարողության 13,2 տոկոսը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները հիմնականում էլեկտրիֆիկացված են. այդ նպաստում է արտադրության մեջ և, հատկապես, անասնաբուծության մեջ լայն թափով էլեկտրիֆիկացնելու աշխատատար պրոցեսները՝ էլեկտրաշարժիչների միջոցով կատարելու սիլոսացումը, կոշտ կերի պատ-

*րասռումը, դրանց տեղափոխումը, ջրամատակարարումը, կաթի վերամշակումը և այլ աշխատանքներ։*

*Ձեռքի աշխատանքները էլեկտրաշարժիչներով փոխարինելիս մեկ միավոր արտադրանքի վրա կատարված ծախքերը կրճատվում են 3-ից 10 անգամ, իսկ բանուժի պահանջը՝ մոտ 10 անգամ։ Եթե մեկ տոննա հացահատիկը ձեռքով զտելու համար ծախսվում է 11,8 ռուբլի, իսկ ներքին այրման շարժիչներ կիրառելու դեպքում՝ 6 ռուբլի, ապա էլեկտրաշարժիչի կիրառման ժամանակ ծախսվում է 1 ռուբ. 21 կոպեկ։*

*Ըստ կոլտնտեսությունների կազմած հայտերի 1960 թվականին նախատեսված է ձեռք բերել մոտ 78 միլիոն ռուբլու գյուղատնտեսական տեխնիկա, այն է՝ շուրջ 800 տարբեր տեսակի տրակտորներ, 150 ինքնագնաց կոմբայն, 1195 բեռնատար և 543 մարդատար ավտոմեքենաներ, ոչխարի խուզի 400 ագրեգատ և այլ բազմապիսի մեքենաներ ու գործիքներ։*

*Այսպիսով, եթե ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1958 թվականին վերակազմված ՄՏ կայաններից գնեցին 64,7 միլիոն ռուբլու տեխնիկա, ապա 1960 թվականին նախատեսված է գնել 13,3 միլիոնով ավելի, որը վկայում է կոլտնտեսությունների էկոնոմիկայի բարձրացման և նրա նյութա-տեխնիկական բազայի ամրացման մասին։ Բայց, մեր կարծիքով, առանձին կոլտնտեսություններ 1960 թվականի նոր տեխնիկայի պահանջարկի հաշվարկումները կատարել են հապճեպ, առանց հաշվի առնելու այս կամ այն մեքենայի տնտեսական էֆեկտիվությունը իրենց տնտեսության պայմաններում։ Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունները թրթուրավոր տրակտորների մեծ պահանջ են ներկայացրել, հաշվի չառնելով, որ իրենց մոտ եղած թրթուրավոր տրակտորներն օգտագործվում են միանգամայն թերբեռնված։ Այսպես, եթե ռեսպուբլիկայում մեկ «ԴՏ—54» մարկայի տրակտորի տարեկան արտադրանքը (1958 թ.) միջին հաշվով կազմել է 670 հեկտար (փափուկ վար), Սևանի գոտում՝ 897, Զանգեզուրում՝ 791, Շիրակում՝ 658 հեկտար, ապա Արարատյան հարթավայրի կոլտնտեսություններում նույն տրակտորի արտադրանքը չի գերազանցել 339, իսկ Էջմիածնի շրջանում՝ 228 հեկտարից։ Այդ գոտու, ինչպես նաև մյուս գոտիների կոլտնտեսությունների համար ավելի ձեռնտու է բարձրացնել անիվավոր տրակտորների տեսակարար կշիռը ընդհանուր պարկում. 1959 թ. հունվարի 1-ի դրությամբ կոլտնտեսություններում անիվավոր տրակտորները 6,7 անգամ քիչ են թրթուրավորներից։ 1960 թվականի պահանջարկով անիվավոր տրակտորները կազմում են 40, իսկ թրթուրավորները՝ 60 տոկոսը, այդ այն դեպքում, երբ անիվավոր տրակտորները տնտեսության մեջ օգտագործվում են ավելի էֆեկտիվ մշակումների, բերքահավաքի, փոխադրումների, ստացիոնար և այլ աշխատանքներում։ Բացի այդ, եթե 1958 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում թրթուրավոր տրակտորները (վերածած 15 ուժանոցի) կատարել են միջինը 282 հեկտար, ապա անիվավորները՝ 348 հեկտար վար, կամ 20 տոկոսով ավելի։*

*Մեր պայմաններում նպատակահարմար է կոլտնտեսությունների տրակտորային պարկը հագեցնել անիվավոր հզոր տրակտորներով, ինչպիսիք են՝ «ՄՏԶ—5Մ», «ՄՏԶ—7», ինչպես նաև հզոր ինքնագնաց շասսիներ՝ իրենց գործիքերով՝ «ՍՇ—65», «ՍՇ—30», «ՍՇ—30 Խ» և այլն։ Վերջիններով հնարավոր է կատարել 10—14 տեսակ գյուղատնտեսական աշխատանք։*

*1958 թվականին ինքնագնաց «Ս—4 Մ» կոմբայնների միջին արտադրան-*



*քը կազմել է 127, իսկ «Ս—6»-ինը՝ 183 հեկտար։ Բասարգեչարի, Ախուրյանի, Թալինի, Գորիսի և մի շարք այլ շրջանների առաջավոր կոմբայնավարները հնձել են 450 և ավելի հեկտարի բերք։ Այս փաստը վկայում է, որ կոմբայնային պարկի օգտագործման հարուստ ռեզերվներ կան։ Սակայն 150 նոր կոմբայնների պահանջարկի հետ կոլտնտեսությունները պահանջել են ընդամենը 50 հատ «ԺՌ—4» մարկայի կցովի հնձիչ (վինդրոուեր), որը շատ քիչ է, քանի որ այդ հնձիչները բացի հասկավոր կուլտուրաները անջատ բերքահավաքի եղանակով հնձելուց, կարելի է օգտագործել նաև խոտ և ծղոտ հնձելու համար։*

*Անհասկանալի է, թե ինչու ՆՏ կայաններում եղած «ՊԿ—2» մարկայի 45 կոմբայնները, որոնք մեծ օգուտ կտան հատկապես լեռնային պայմաններում, կոլտնտեսությունների կողմից չեն ներդրվում արտադրության մեջ, մինչդեռ ՆՏ կայանները պահանջ են ներկայացրել «ՍԿ—3» 150 կոմբայնի, մոտ 7,1 մլն. ռուբլու արժողությամբ։*

*1960 թվականին հայտերի մեջ շատ քիչ են կամ բոլորովին չեն պահանջված այնպիսի մեքենաներ, ինչպես՝ պարարտանյութը դաշտ տեղափոխող և շաղ տվող «ՌՊՏ—2» մեքենան, որի կիրառումը հնարավորություն է տալիս 7—9 անգամ կրճատելու աշխատանքային ծախսումները. խոտ և ծղոտ դիզող մեքենան («ՍՏՈՒ—0,7»), որը մոտ 20 անգամ իջեցնում է աշխատանքային ծախսումները. բարձման և դատարկման աշխատանքների համար՝ «ՏՈՒ—5» և «ՍՏ—2» փոխադրիչները, որոնց կիրառումով 10—13 անգամ իջնում են մարդ-օրերի ծախսերը։ Անասնաբուծության մեջ տարվող հիմնական աշխատանքներից 7-ը, որ ներկայումս հիմնականում կատարվում են ձեռքով, հնարավոր է մեքենայացնել, եթե ձեռք բերվի «ՌԻԴՍ—1» նոր ունիվերսալ կթող մեքենա, ներֆերմային տրանսպորտ, որոնք օգտագործվում են կերը ներս բերելու և գոմաղբը դուրս տանելու համար։ Խոզերի և հավերի համար ինքնակերակրիչներ և ջրախմոցներ, կաթի վերամշակման սերզատներ՝ «ՍՈՄ—1000», կամ «ՍՊՄՖ—2000», որոնց՝ կաթի զտման մեկ ժամվա արտադրողականությունը կազմում է 1000—2000 լիտր, ներկայիս 400—600-ի փոխարեն և այլն։*

*Ինչպես նշված ճյուղերում, այնպես էլ կոլտնտեսությունների ավտոպարկերում կան չօգտագործվող ռեզերվներ։ Բավական է ասել, որ 1958 թվականին կոլտնտեսային ավտոպարկը կատարել է 66,8 միլիոն կիլոմետր վազք, որից 38,6-ը՝ բեռով, իսկ 28,2 միլիոն կիլոմետրը, կամ ընդհանուր վազքի 42,2 տոկոսը՝ առանց բեռի։ Մի շարք շրջանների կոլտնտեսությունների ղեկավարները անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում ավտոպարկերի ռացիոնալ օգտագործմանը։ Օրինակ, Բասարգեչարի շրջանի կոլտնտեսություններում ավտոմեքենաների անգործարար վազքի քանակը կազմում է ընդհանուր վազքի 48,7 տոկոսը, Ամասիայում՝ 45, Ազիզբեկովում՝ 44,5 և այլն։ Բերված թվերից կարելի է եզրակացնել, որ ավտոպարկերի ոչ ռացիոնալ օգտագործում նկատվում է հատկապես քաղաքներից հեռու ընկած շրջաններում։ Ավտոպարկերի աշխատանքների բարելավման համար անհրաժեշտ է բեռների երկկողմանի ապահովումը, որը ներկայումս գրեթե չի կազմակերպվում։ Պետք է բարձրացնել ավտոմեքենաների բեռնատարողության օգտակար գործողության գործակիցը՝ ներկայիս 0,55—0,60-ից հասցնելով մինչև 0,70—0,85-ի, միջնորոգման ժամկետների համաձայն ապահովել ավտոմեքենաների որակով նորոգումները, տեխնիկական զննումները և մեքենաները ծածկերի*

տակ պահելը։ Անհրաժեշտ է նաև բարեկարգել միջդաշտային և միջգյուղային ճանապարհները, բարձրացնել ավտովարորդների ու նորոգող բանվորների որակավորումը և այլն։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում անբավարար են օգտագործվում բանող անասունները, մինչ դրանց պահպանման և խնամքի համար կոլտնտեսությունները ծախսում են հսկայական միջոցներ։ Այսպես, 1959 թվականի հունվարի 1-ի դրությամբ կոլտնտեսություններում կար 58,2 հազար գլուխ բանող անասուն (որից եզներ՝ 45 հազար)։ Կոլտնտեսություններում բանող անասունների խնամքի ու պահպանման վրա ծախսվել է շուրջ 47,5 միլիոն ռուբլի (այդ թվում 1.645 հազար աշխօրի արժեքը), կամ մեկ ձիաուժ բանող անասունի վրա ծախսվել է 1480 ռուբլի։ Մինչ, տրակտորային պարկի մեկ միավոր ձիաուժի վրա ծախսվել է 575 ռուբլի, իսկ ավտոպարկի՝ 160 ռուբլի։ Հաշվարկներից պարզվում է, որ կոլտնտեսություններում պահանջվում է զգալի չափով պակաս կենդանի քարշող ուժ, քան այժմ կա։

Այսպես, հաշվարկումները ցույց են տալիս, որ Արարատյան հարթավայրի շրջանների կոլտնտեսություններում եղած 3540 բանող անասունի փոխարեն անհրաժեշտ է ունենալ մոտ 1900 գլուխ, կամ 47 տոկոսով պակաս։ Յուրաքանչյուր կոլտնտեսություն ելնելով իր տնտեսության տեխնիկայի հագեցվածությունից, պետք է կոնկրետ հաշվարկներ կատարի և բանող անասունների այն մասը, որը չի օգտագործվում արտադրության մեջ, փոխարինի մթերատուներով (հատկապես կովերով)։ Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ այդ հարցի լուծմամբ հնարավորություն կստեղծվի ռեսպուբլիկայում, 100 հեկտար հողատարածության հաշվով, կովերի քանակը լրացուցիչ կերպով ավելացնել 2—3 գլխով։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ նշված է, «...Որ գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի XXI համագումարի առաջադրած խնդիրների հաջող կատարման համար նախ և առաջ անհրաժեշտ է ապահովել անընդհատ տեխնիկական առաջադիմությունը մեքենայացման և էլեկտրիֆիկացման ասպարեզում, ուժեղացնել կոլտնտեսություններն ու սովխոզները կոմպլեքսային մեքենայացման նոր տեխնիկայով հագեցնելու տեմպերը և այդ հիման վրա զգալիորեն կրճատել գյուղատնտեսական աշխատանքների կատարման ժամկետները, բարձրացնել հողագործության ընդհանուր կուլտուրան, հասնել աշխատանքի արտադրողականության նոր աճման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման»։

Ահա թե ինչու այժմ ավելի քան երբեք, պարտիական ու սովետական կազմակերպություններից, կոլտնտեսությունների վարչություններից պահանջվում է առավելագույն ուշադրություն դարձնել կոլտնտեսային արտադրության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման հարցերին։

Վերը թվարկած հարցերը միայն մասամբ են բացահայտում գյուղատնտեսական տեխնիկայի ռացիոնալ օգտագործման և արտադրության էլեկտրիֆիկացման հետ կապված ռեզերվները։ Կան նաև բազմաթիվ այլ ռեզերվներ, որոնց կիրառումը խոշոր չափով կնպաստի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առջև դրված խնդիրների հաջող կատարմանը։

---

# ՄԽՋՅԱՆՈՒՄ ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԸ ՎԱՏ ԵՆ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄ

Խ. ԴՐԱՄԲՅԱՆ

Բազմաթիվ կոլտնտեսությունների աշխատանքի փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ ՄՏԿ-ները վերակազմելուց հետո կոլտնտեսություններում հսկայական հնարավորություններ ստեղծվեցին տեխնիկան ավելի լավ օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու համար։

Բայց ոչ բոլոր կոլտնտեսություններն են բավարար չափով օգտագործում ստեղծված այդ հնարավորությունները։ Այդպես է, օրինակ, Արտաշատի շրջանի Մխչյան գյուղի կոլտնտեսությունում, ուր կա 11 տրակտոր, տարբեր տեսակի 20 կախովի և կցովի մեխանիզմներ ու 7 բեռնատար ավտոմեքենա։ Այժմ կոլտնտեսությունը հնարավորություններ ունի լրիվ օգտագործելու եղած մեքենաները։ Սակայն իրականում այստեղ մեքենաները վատ են օգտագործվում. կոլտնտեսությունում «ԴՏ—54» և «ԿԴՊ—35» տիպի տրակտորները ինչպես 1958 թվականին, այնպես էլ 1959 թվականին (տարվա ընթացքում) գործել են ընդամենը 31—35 աշխատանքային օր և կատարել 183—285 հեկտար փափուկ վար (500—600 հեկտար նորմայի դիմաց)։ Ունիվերսալ մարկայի տրակտորներն աշխատել են 35—80 օր, կատարելով 70—180 հեկտար փափուկ վար (նորմայով նախատեսված 350—450 հեկտարի դիմաց)։ Մեկ տրակտորի (15 ձիու ուժանոց) կատարած աշխատանքը, վերածված փափուկ վարի, 1958 թվականին կազմել է 306 հեկտար, իսկ 1959 թվականի 10 ամիսներում՝ 226 հեկտար, որը զգալիորեն ցածր է նույնիսկ ՄՏԿ-ների ժամանակաշրջանի կատարածից։

Ինչպես 1958, այնպես էլ 1959 թվականին թույլ է տրվել վառելիքի զգալի գերածախս. այսպես, մեկ հեկտար փափուկ վարի համար նախատեսված 13,3 կգ-ի փոխարեն ծախսվել է 17,5—20,2 կգ վառելանյութ։ Կոլտնտեսությունը ոչ 1958 և ոչ էլ 1959 թվականին 170 հեկտար բամբակենու պլանտացիաներից ու 50 հեկտար եգիպտացորենի ցանքսերից և ոչ մի հեկտար չի մշակել քառակուսի բնային եղանակով, որը զգալիորեն կբարձրացներ այդ կուլտուրաների բերքատվությունը, կիջեցներ մեկ միավոր արտադրանքի ինքնարժեքը, մեծ չափով կբարձրանար տրակտորների և մյուս մեխանիզմների օգտագործման գործակիցը։

Կոլտնտեսությունը դեռ 1958 թվականին գնել է բամբակ հավաքող մեքենա. սակայն այն չի օգտագործվել և բամբակագործության մեջ ամենադժվար աշխատատար պրոցեսներից մեկը՝ չանքը, կատարվել է ձեռքով։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ միայն բամբակի հավաքման մեքենայաց-

ման շնորհիվ կոլտնտեսությունը 1958 թվականին մեկ ցենտներ բամբակի հումքի հավաքման համար կխնայեր 2,25 աշխատանքային օր, իսկ ընդհանուր առմամբ կտնտեսվեր 11 475 աշխատանքային օր, որը դրամական արտահայտությամբ կկազմեր ավելի քան 400 հազար ռուբլի։ Կոլտնտեսային հողատարածությունների մեջ կան շատ թմբեր ու փոսեր, դրանք հարթեցնելու միջոցով հնարավոր է ավելի մեծացնել հողատարածությունները, որոշ չափով ընդարձակել ցանքատարածությունը։ Այդ աշխատանքները կատարելու համար կոլտնտեսությունն ապահովված է «ԴՏ—54» մարկայի տրակտորներով։ Հաշվումները ցույց են տալիս, որ եթե կոլտնտեսությունը ձեռնամուխ լինի խաղողի այգիների միջև ընկած չօգտագործվող 9 հեկտար հողերի հարթեցմանը, առանց մեծ կապիտալ ներդրումների կունենա 9 հեկտար լրացուցիչ հողատարածություն, որտեղ հնարավոր կլինի մշակել խաղող։ Վերջին երկու տարում կոլտնտեսությունը խաղողի այգիներից միջին հաշվով ստացել է 100 ցենտներ բերք։ Մոտակա տարիներին 9 հեկտար տարածություն դնելով խաղողի այգիների տակ, կոլտնտեսությունը լրացուցիչ կստանա 90 տոննա խաղող, կամ ավելի քան 350 հազար ռուբլի եկամուտ։

Կոլտնտեսության 167 հեկտար խաղողի այգիներից 106-ը տնկված է հին, թմբային սիստեմով, որը հնարավորություն չի տալիս մեքենայացնելու մի շարք աշխատատար պրոցեսներ։ Այգեգործության մեջ աշխատանքի զգալի մասը (թմբերի միջտարածության փխրեցում, բուժում) դեռևս կատարվում է ձեռքով։

Ժամանակակից տեխնիկայի պայմաններում կոլտնտեսությունը հնարավորություն ունի բոլոր այգիները մոտակա տարիներին փոխադրել լարային սիստեմի և այգեգործության մեջ լայնորեն օգտագործել գյուղատնտեսական մեխանիզացիան։

Գիտականորեն և պրակտիկ փորձով ապացուցված է, որ այգեգործության մեքենայացման և մշակության բարելավման շնորհիվ հնարավոր է խաղողի այգիների բերքատվությունը բարձրացնել 20 տոկոսով։ Կոլտնտեսության յոթնամյա պլանով նախատեսված է 1965 թվականին յուրաքանչյուր հեկտար խաղողի այգուց ստանալ 100 ցենտներ բերք՝ այգեգործությունը ներկա սիստեմով վարելու պայմաններում։ Յոթնամյակի վերջում կոլտնտեսության խաղողի այգիների տարածությունը հասնելու է 176 հեկտարի։ Բերքի 20 տոկոսի բարձրացման միջոցով կոլտնտեսությունը լրացուցիչ կստանա 352 տոննա խաղող, կամ՝ մեկ ու կես միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտ։

Մխչյան գյուղում հարթ չեն բամբակենու ցանքատարածությունները. այդ պատճառով ոռոգման ժամանակ հողը հավասար չափով չի ջրվում, բույսերը վատ են աճում, ցածր բերք է ստացվում։ Կոլտնտեսությունը հնարավորություն ունի 170 հեկտար բամբակենու ցանքերը հարթեցնել և ապա ցանել։ Դրա շնորհիվ բամբակենու մշակման և բուժման ընթացքում լայնորեն կօգտագործվեն մեքենաները, և զգալիորեն կբարձրանա բերքատվությունը։

Հին թմբային սիստեմից նոր, լարային սիստեմին անցնելը, հնարավորություն է տալիս տնտեսելու մեծ քանակությամբ աշխատուժ։ Այսպես, օրինակ, տեխնիկան օգտագործելու շնորհիվ խաղողի այգիների մեկ հեկտարի վրա տնտեսվում է՝ այգեփորից 60, սրսկելուց՝ 14, փոշոտելուց՝ 1,8 աշխօր, ընդամենը՝ 75,8 աշխօր։ Եթե կոլտնտեսության 106 հեկտար թմբային սիստեմի այգիները վերածվեն լարային սիստեմի և մշակության համար լայնորեն օգտագործվեն մեքենաները՝ կոլտնտեսությունը տարեկան կտնտեսի 8039 աշխօր, կամ 1958 թվականի մեկ աշխօրի փաստացի արժեքով՝ 257 հազար ռուբլի։



Նույնը կարելի է ասել և բամբակագործության մասին։ Այս բնագավառում մեքենաներն ավելի ինտենսիվ օգտագործելու շնորհիվ պլանտացիան միայն ջրելու և հարթեցնելու համար յուրաքանչյուր հեկտարի վրա կտնտեսվի 6,5 աշխատանքային օր։

Կոլտնտեսությունն ամբողջ փոխադրումները կատարում է 7 բեռնատար ավտոմեքենայի և 19 սայլի միջոցով։ 1958 թվականին տրանսպորտի վրա ծախսվել է 129 հազար ռուբլի, որից 77 հազարը՝ սայլերի պահպանման, 53 հազարը՝ ավտոտրանսպորտի վրա։ Մոտավոր տվյալներով տրանսպորտի պահպանման համար 1959 թվականին ծախսվել է ոչ պակաս, քան 140—150 հազար ռուբլի։

Սայլային տրանսպորտի մեկ կիլոմետրի ինքնարժեքը 1958 թվականին կազմեց 4 ռուբլի 30 կոպեկ, այն դեպքում, երբ ավտոտրանսպորտի տոննա-կիլոմետրի ինքնարժեքը, նույնիսկ նրա անբավարար օգտագործման դեպքում, 34 կոպեկից չգերազանցեց։

Ավտոտրանսպորտը և սայլային տրանսպորտը տնտեսության մեջ օգտագործվում է ոչ նպատակահարմար։ Կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների մասսայական փոխադրումները (40 տոկոսից ավելին) կատարվում են սեպտեմբեր, հոկտեմբեր, նոյեմբեր ամիսներին, այսինքն՝ այն ժամանակ, երբ մեքենա-տրակտորային պարկի օգտագործման գործակիցը կազմում է ընդամենը 0,2 տոկոս, իսկ առանձին (ունիվերսալ) մարկայի տրակտորներինը՝ ավելի քիչ։

Մեր կարծիքով նպատակահարմար և տնտեսապես շահավետ կլինի տնտեսության ներսում կատարվող բոլոր տեսակի փոխադրումների 60 տոկոսից ավելին կատարել լաֆետների միջոցով՝ օգտագործելով գյուղատնտեսական հիմնական աշխատանքներից ազատ տրակտորները։ Կոլտնտեսության 1959 թվականի պլանով նախատեսված էր կատարել ընդամենը 13 150 տոննա տարբեր տեսակի փոխադրումներ, որից 7750 տոննան՝ տնտեսության ներսում։ Հաշվարկումներից երևում է, որ 7750 տոննա փոխադրումների համար բավական է ունենալ երկու տոննանոց 7 լաֆետ, որը հնարավորություն կտա սայլերի թիվը կրճատել և 19-ի փոխարեն թողնել 5-ը։ Մնացած 5400 տոննա բեռների տեղափոխման համար (եթե վազքի միջին հեռավորությունը վերցնենք 20 կմ) անհրաժեշտ կլինի կատարել 100 հազար տոննա-կիլոմետր վազք։ Քանի որ անցյալ տարի ամեն մի 2,5 տոննանոց մեքենան կատարել է 25 հազար տոննա-կիլոմետր վազք (որը չափազանց քիչ է), կարելի է կրճատել նաև ավտոմեքենաների թիվը։ Այս միջոցառման կենսագործմամբ 30—40 տոկոսով կիջնեն տրանսպորտային ուղղակի ծախսերը։ Այդ հնարավորություն կստեղծի եզների փոխարեն զգալիորեն ավելացնելու կովերի գլխաքանակը։

Մոտավոր հաշիվներով միայն վերը նշված միջոցառումների կենսագործման (որը շատ կապիտալ ներդրումներ չի պահանջում) դեպքում Մխչյանի կոլտնտեսությունը յոթնամյակի վերջին տարում լրացուցիչ կերպով կստանա ավելի քան 2 միլիոն ռուբլու եկամուտ։

Ինչպես Մխչյան գյուղի կոլտնտեսության, այնպես էլ հարթավայրերում

եղած մյուս կոլտնտեսությունների համար նպատակահարմար և տնտեսապես շահավետ է տնտեսության ներսում լայնորեն օգտագործել լաֆետներ, որպես քարշիչ օգտագործելով տրակտորները, երբ դրանք ծանրաբեռնված չեն հողագործության մեջ։ Ցավոք սրտի, այդ միանգամայն նպատակահարմար և պրակտիկայում իրեն արդարացրած միջոցը լայն կիրառում չի գտել մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում։ Մխչյան գյուղը 1959 թվականին և ոչ մի լաֆետի պահանջ չի ներկայացրել։

Ներկայումս Միության մի շարք շրջաններում, ինչպես և մեր ռեսպուբլիկայի շատ առաջավոր կոլտնտեսություններում, կազմակերպվում են տրակտորա-դաշտավարական բրիգադաներ։ Դրա առավելությունն այն է, որ բրիգադայի ձեռքում է կենտրոնացվում ո՛չ միայն հողը, այլև բանվորական ուժն ու տեխնիկան։ Տրակտորա-դաշտավարական բրիգադայում տեխնիկան և բանվորական ուժը ամբողջ տարվա ընթացքում օգտագործվում են ավելի էֆեկտիվ, քան առանձին տրակտորային և դաշտավարական բրիգադաներում. զգալիորեն բարձրանում է բրիգադայի պատասխանատվությունը ինչպես աշխատանքի կատարման ժամկետների պահպանման, այնպես էլ կատարված աշխատանքի որակի համար. բարձրանում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Հսկայական նշանակություն ունի նաև այն, թե կոլտնտեսության ղեկավարությունը որքանով ճիշտ է կազմակերպում մեքենա-տրակտորային պարկի օգտագործումը։

Այս փաստերը վկայում են այն մասին, որ Մխչյան գյուղի կոլտնտեսությունում դեռևս չօգտագործվող ռեզերվներ ու հնարավորություններ շատ կան։ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Հոկտեմբերյան պլենումը ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, սովետական օրգանների և կոլտնտեսությունների վարչությունների առջև խնդիր դրեց հայտաբերել և օգտագործել բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, ջանք չխնայել յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

*Մ. ՄԻՆԱՍՅԱՆ*

Ավարտվեց յոթնամյակի առաջին տարին։ Երևանի գործարանների, ֆաբրիկաների, կառույցների, գիտական և արվեստի հիմնարկների յուրաքանչյուր կոլեկտիվ, կոլեկտիվի ամեն մի անդամ հաշիվ է տալիս, թե սովետական ստեղծագործ ժողովրդի բազմամիլիոն ընտանիքում ինչ է արել, ինչ արժանահիշատակ ներդրում է կատարել կոմունիզմի կառուցման գործում։ 1959 թվականը մայրաքաղաքի աշխատավորների համար եղավ ոգևորության, ստեղծագործության, նոր խիզախումների տարի։ Անցած տարվա արտադրական պլանները կատարված են 103,9 տոկոսով. երկրին տրվել է մոտ 150 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Իրացվել են արտադրանքի բազմաթիվ նոր տեսակներ՝ ֆրեզերային հաստոցներ, նոր տիպի կոմպլեկտային-տրանսֆորմատորային ենթակայաններ, կիսաավտոմատ էլեկտրակայաններ, էլեկտրաչափիչ գործիքներ, պոմպեր և այլն։ Շահագործման են հանձնվել մի շարք նոր արդյունաբերական ձեռնարկություններ՝ երկաթ-բետոնե կոնստրուկցիաների, մամլման խոշոր պանելների գործարաններ, ձեռնոցների ֆաբրիկաներ և այլն։ Կառուցվել և շահագործման են հանձնվել նաև բազմաթիվ նոր ցեխեր, կորպուսներ և տեղամասեր։ Խոշոր աշխատանքներ են կատարվել քաղաքային տնտեսության զարգացման ուղղությամբ։

Երևանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման այս հաջողությունների ձեռքբերման գործում վճռական դեր են կատարել պարտիական կազմակերպությունները։ Վերջերս, մասնավորապես պարտիայի XXI համագումարի նյութերի և որոշումների պրոպագանդման կապակցությամբ, նրանք ուժեղացրին մասսայական-քաղաքական աշխատանքը. պետական առաջադրանքների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու նպատակով ավելի լայնորեն սկսեցին օգտագործել դաստիարակչական աշխատանքների բազմազան ձևեր ու մեթոդներ։ Բարելավվել է քաղաքական ագիտացիայի բովանդակությունը. այն դարձել է ամենօրյա, կոնկրետ, ավելի սերտորեն է զուգակցվում կոմունիստական շինարարության գործնական խնդիրների հետ։ Վերանում են դոգմատիզմն ու ֆորմալիզմը ագիտատորի, պրոպագանդիստի աշխատանքի ոլորտից։

Քաղաքական-մասսայական աշխատանքներում վճռական դեր են կատարում մայրաքաղաքի բազմաթիվ հիմնարկ-ձեռնարկությունների ագիտկոլեկտիվները։ Կիրովի անվան, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ալյումինի, փոքր հիդրոտուրբինների, ժամացույցի և այլ գործարանների

պարտիական կազմակերպությունները ավելի մեծ հոգատարություն են ցուցաբերում ագիտատորների ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործում։ Նշված ձեռնարկությունների ագիտատորները լուրջ զրույցներ են կազմակերպում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին և խաղաղասիրական արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերի մասին, մոբիլիզացնում են աշխատավորներին յոթնամյակի պլանները, սոցիալիստական մրցությամբ ստանձնած բոլոր պարտավորությունները կատարելու համար։ Այս կազմակերպություններում ջանում են ագիտատոր ընտրել առաջավոր բանվորներից, ինժեներներից, ցեխերի և բաժինների պետերից։ Ժամացույցի գործարանում, օրինակ, արտադրության շատ առաջավորներ տարիներ շարունակ ագիտատոր են և քաղաքական-մասսայական արդյունավետ աշխատանք են կատարում բանվորների շրջանում։ Այդպիսիներից է գործարանի պտտման ցեխի պետի տեղակալ, լավագույն ռացիոնալիզատոր Հակոբ Էկմեքչյանը։ Նա մեծ հեղինակություն է վայելում ցեխի և ամբողջ գործարանի կոլեկտիվում. ընկ. Էկմեքչյանը սիստեմատիկաբար զրույցներ է կազմակերպում յոթնամյակին վերաբերող թեմաներով, խելացի է օգտագործում տեղական նյութերը։ Նրա զրույցները նվիրված են սարքավորումների ռացիոնալ օգտագործմանը, աշխատանքի առաջավոր ձևերի և մեթոդների պրոպագանդմանը, արտադրանքի որակի բարձրացմանը և ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարին։ Հ. Էկմեքչյանի յուրաքանչյուր զրույց կրքոտ, համոզիչ և անկաշկանդ խոսակցության բնույթ է կրում, անցնում է գաղափարական բարձր մակարդակով և մեծ հետաքրքրություն է առաջացնում ունկնդիրների շրջանում։

Մեր շատ պարտիական կազմակերպություններ ագիտատորների համար սիստեմատիկաբար կազմակերպում են սեմինարներ, կոնսուլտացիաներ, խորհրդակցություններ, աշխատանքի փորձի փոխանակում և այլն։ Նրանք ագիտատորներին սովորեցնում են խոր կերպով վերլուծել կյանքի պրոցեսները, պարտիայի քաղաքականության պրոպագանդան զուգակցել այն կոնկրետ խնդիրների հետ, որոնք դրված են տվյալ կոլեկտիվի առջև։

Վերջին ժամանակներս պարտիայի Երևանի քաղկոմը և շրջկոմները սկսել են ավելի լուրջ աշխատանք կատարել ագիտկոլեկտիվների ղեկավարների հետ, որոնց վրա դրված է տեղերում ագիտատորներին օգնելու և վերահսկելու աշխատանքների ամբողջ ծանրությունը։ Օրինակ, պարտիայի Սպանդարյանի շրջկոմը ագիտկոլեկտիվների ղեկավարների համար սիստեմատիկաբար կազմակերպում է դասախոսություններ, լավագույն ագիտ-կոլեկտիվների փորձի փոխանակում և այլն։ Այստեղ ագիտկոլեկտիվների ղեկավարները զեկուցումներ են լսել՝ «Բուրժուական գաղափարախոսությունը և ժամանակակից ռեվիզիոնիզմի դեմ մղվող պայքարը», «Միջազգային դրության մի քանի հարցեր», «ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայի նյութերը», «Ինչպես կազմակերպել ագիտացիոն զրույցը» և այլ թեմաներով։ Ագիտկոլեկտիվների ղեկավարների առջև զեկուցումներով հաճախակի հանդես են գալիս պարտիայի Սպանդարյանի շրջկոմը և շրջսովետի գործկոմի ղեկավարները։ Նման միջոցառումները ագիտկոլեկտիվների ղեկավարներին օգնում են քաղաքական ագիտացիան դարձնել բազմաբովանդակ, կյանքի հետ սերտորեն կապված։

Քաղկոմի Ստեփան Շահումյանի անվան քաղաքական լուսավորության տանը ագիտկոլեկտիվների ղեկավարների համար սիստեմատիկաբար կազ-



մակերպվում են հրահանգչական-մեթոդական զեկուցումներ, դասախոսություններ, կոնսուլտացիաներ։ Ընդհանրացվում և մասսայականացվում է լավագույն ագիտկոլեկտիվների աշխատանքի փորձը։

Աշխատավորական կոլեկտիվներում տարվող քաղաքական աշխատանքին սկսել են ավելի ակտիվորեն մասնակցել պարտիական, սովետական և տնտեսական աշխատողները։ Այսպես, Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի վարչությունների պետերը, նրանց տեղակալները և մասնագետները զեկուցումներով հանդես են գալիս արդյունաբերական ձեռնարկություններում։ Դա մի կողմից նպաստում է մասսաների ակտիվության զարգացմանը և, մյուս կողմից՝ հարստացնում Ժողտնտխորհի աշխատողների փորձը, ավելի ներգործող է դարձնում նրանց ղեկավար դերը։

Շատ մինիստրներ, գերատեսչությունների պետեր, շրջկոմների քարտուղարներ, շրջսովետի գործկոմների նախագահներ «Երևանը 1959—1960 թվականներին» թեմայով զեկուցումներ են կարդացել հիմնարկ-ձեռնարկություններում և կառույցներում։ Նրանցից շատերը բանվորների հետ հանդիպում են ոչ միայն ժողովներում, այլև արտադրության մեջ ու հանրակացարաններում։ Մարդկանց հետ նրանց շփումը օգնում է ավելի լավ իմանալու գործի վիճակը տեղերում, մոտիկից ծանոթանալու բանվորների կենցաղային պայմաններին, իմանալու նրանց պահանջները։

Հայտնի է, որ քաղաքական-մասսայական աշխատանքը կենդանի, ստեղծագործական աշխատանք է։ Այժմ մեր բազմաթիվ պարտիական կազմակերպություններում քաղաքական-մասսայական աշխատանքի տարածված ձևեր են դարձել բանավոր ամսագրերը, հարց ու պատասխանի, թեմատիկ երեկոները, կուլտուրայի համալսարանները, հանդիպումները գիտության, արվեստի, գրականության գործիչների հետ և այլն։ Երիտասարդության մեջ ջերմ ընդունելություն են գտել «Մարդու մեջ պետք է ամեն ինչ գեղեցիկ լինի», «Միջազգային երիտասարդության շարժումը», «Ուզում եմ ամեն ինչ իմանալ» և այլ թեմաներով անցկացվող երեկոները։

Պարտիայի Լենինյան և Ստալինյան շրջկոմները ավելի մեծ ուշադրություն են նվիրում երիտասարդությանը ռևոլյուցիոն և բանվոր դասակարգի աշխատանքային տրադիցիաներով դաստիարակելու կարևոր հարցին։ Այս շրջանների արտադրական ձեռնարկություններում, կուլտուրայի տներում և գրադարաններում հաճախակի հանդիպումներ են կազմակերպվում հին բոլշևիկների, քաղաքացիական և հայրենական պատերազմի վետերանների, արտադրության նշանավոր մարդկանց հետ։ Լավ արդյունք է տալիս ՀԼԿԵՄ Երևանի Քաղկոմի կողմից կազմակերպված «Լենինյան գվարդիա» դասախոսությունների ցիկլը։

Երևանի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում է աշխատավորներին լենինյան ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու կարևոր գործը։ Բազմաթիվ գործարաններում, ֆաբրիկաներում, կառույցներում և ուսումնական հաստատություններում դասախոսություններ և զեկուցումներ են կազմակերպվում ժողովուրդների բարեկամության, եղբայրական ռեսպուբլիկաներում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական շինարարության հաջողությունների մասին և այլ թեմաներով։ Հայ և Ուկրաինական ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը մեծապես նպաստում է Երևան—Կիև սոցիալիստական մրցությունը։

*Պարտիական կազմակերպությունների վերջին հաշվետու-ընտրական ժողովները բացահայտեցին քաղաքական-մասսայական աշխատանքի շատ թերություններ: Դժբախտաբար որոշ պարտիական կազմակերպություններ բավարար չափով չեն զբաղվում մասսաների կոմունիստական դաստիարակության հարցով: Երբեմն ագիտատորներ են նշանակվում մարդիկ, որոնք քաքաղաքան-մասսայական աշխատանքը վատ են կազմակերպում: Օրինակ, քաղաքի շինարարական և ավտոտրանսպորտային հիմնարկների պարտիական կազմակերպություններում չկան մշտական գործող ագիտկոլեկտիվներ: Ագիտացիան հաճախ կրում է դեկլարատիվ և մակերեսային բնույթ, չի շաղկապվում տեղամասի, ցեխի, բրիգադայի և ամեն մի բանվորի առջև դրված կենսական խնդիրների հետ, որի պատճառով էլ այն հաճախ հարկավոր ազդեցություն չի գործում արտադրական խնդիրների լուծման վրա:*

*Մի քանի ձեռնարկություններում հասարակական ներազդեցության մթնոլորտ չի ստեղծվում հասարակական կարգը խախտողների, սոցիալիստական համակեցության կանոնները ոտնահարողների շուրջը: Ագիտացիոն որոշ զրույցներում խելացիորեն չի օգտագործվում դրական օրինակի ուժը: Եվ պատահական չէ, որ մի շարք ավտոտրանսպորտային տնտեսություններում չեն կատարում պետական պլանները, ընկած է կարգապահությունը:*

*Շատ շինարարական կազմակերպություններում ցածր է աշխատանքի որակը, վատ են օգտագործվում մեխանիզմները, մրցությունը ձևական բնույթ է կրում: Չնայած տեմպերի արագացմանը, թերակատարվում են բնակարանային շինարարության պլանները:*

*Ավտոպահեստամասերի գործարանը Երևանի այն ձեռնարկություններից է, որն առաջինը որոշեց սոցիալիստական մրցության մեջ մտնել՝ յոթնամյակը 6 տարում կատարելու համար: Սակայն այժմ գործարանը չի կատարում ոչ միայն ստանձնած պարտավորությունները, այլև պետական առաջադրանքները: Դրա հիմնական պատճառն այն է, որ ձեռնարկության պարտիական կազմակերպությունն անհրաժեշտ քաղաքական-մասսայական աշխատանք չծավալեց կոլեկտիվում ստեղծագործ աշխատանքի մթնոլորտ ստեղծելու ուղղությամբ:*

*Մայրաքաղաքի աշխատավորները լուրջ անելիքներ ունեն յոթնամյակի երկրորդ տարվա նոր, էլ ավելի պատասխանատու խնդիրները պատվով կատարելու համար: Այդ գործում կարևոր է աշխատավորների քաղաքական դաստիարակության կազմակերպումը: Անհրաժեշտ է արմատականորեն բարելավել ագիտատորների ընտրության և դաստիարակության գործը, ագիտատոր նշանակել հեղինակություն ունեցող, գիտելիքներով զինված ընկերների:*

*Ագիտատորը արտադրության, սոցիալիստական մրցության կազմակերպիչ է. այս տեսանկյունից է հարկավոր գնահատել նրա աշխատանքը: Ղեկավար ընկերները պետք է ավելի ակտիվ քաղաքական աշխատանք տանեն աշխատավորների շրջանում, այդ կարևոր գործի նկատմամբ պատասխանատու և լուրջ վերաբերմունքի օրինակ տան: Անհրաժեշտ է շրջկոմներում, հիմնարկ-ձեռնարկություններում և կառույցներում ստեղծել ագիտատորի կաբինետ, որտեղ պետք է նյութեր ունենալ մեր կյանքի տարբեր բնագավառների վերաբերյալ, գրականություն՝ ագիտատորի փորձի մասին, զրույցների թեմատիկ պլան և այլն: Հարկավոր է սիստեմատիկաբար կազմակերպել զրույցներ, դասախոսություններ, զեկուցումներ և սեմինարներ, մշտական*



*հսկողություն սահմանել ագիտատորների գործունեության նկատմամբ, պարտիական կազմակերպությունների ժողովներում և պարտիական կոմիտեներում հաճախակի լսել ագիտատորների հաշվետվություններն իրենց կատարած աշխատանքների մասին: Մեր առաջնահերթ խնդիրն է՝ կանոնավոր հունի մեջ դնել ագիտկոլեկտիվների ղեկավարների մշտական գործող սեմինարները, ուսումնասիրել, ընդհանրացնել քաղաքական-մասսայական աշխատանքի առաջավոր փորձը:*

*Պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է գտնվի քաղաքական-մասսայական աշխատանքի բարելավումը: Քաղաքական ագիտացիայի հիմնական նպատակը՝ պարտիայի XXI համագումարի որոշումների, իր վիթխարիությամբ նմանը չունեցող յոթնամյակի հոյակապ խնդիրների պարզաբանումն է: Հարկավոր է աշխատավորներին դաստիարակել մեր մեծ Հայրենիքի նկատմամբ հպարտության ոգով, ցույց տալ Կոմունիստական պարտիայի վճռական դերը երջանիկ կյանքի ստեղծման գործում: Խիստ կարևոր է ընկ. Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցելության վերաբերյալ նյութերի հետագա պարզաբանումը: Պետք է ցույց տալ, որ ընկեր Խրուշչովի այցը միջազգային մեծ նշանակություն ունեցող երևույթ է և խոր հետք է թողել ամերիկյան ժողովրդի և ընդհանրապես միջազգային իրադարձությունների վրա: Ագիտացիոն զրույցներում հարկավոր է առանձին տեղ տալ արտադրական խնդիրներին:*

*Անհրաժեշտ է, որ մեր ագիտատորները ունկնդիրներին ասեն կրքոտ և հուզող խոսք, նրանց մեջ արթնացնեն ազնիվ մտքեր ու զգացումներ, բարձրացնեն սեփական արժանապատվության գիտակցությունը, որպես աշխարհի ամենաառաջնակարգ հասարակության անդամի: Հարկավոր է հանգամանորեն, կոնկրետ փաստերով խոսել կոմունիստական կյանքի նոր նվաճումների և ծիլերի մասին, ուշադրություն դարձնել աշխատանքում բարոյական գործոնների զարգացման հարցերին, զրույցներ կազմակերպել կենցաղի և կուլտուրայի վերաբերյալ:*

*Քաղաքական-մասսայական աշխատանքը կազմակերպելիս հարկավոր է անպայման նկատի ունենալ արտադրության բնույթը, կոլեկտիվի կազմը, տրամադրություններն ու պահանջները, մարդկանց պատրաստության մակարդակը և այլն: Ագիտատորը պետք է լավ իմանա յուրաքանչյուր ունկնդրին և գտնի նրա վրա ազդելու մեթոդ: Միայն այդ դեպքում է հնարավոր ապահովել քաղաքական-մասսայական աշխատանքի հաջողությունը:*

*Մեր աշխատանքների լուրջ թերություններից է նաև այն, որ դեռևս բավարար չափով լայն չէ քաղաքական ներազդեցության, ընդգրկման ոլորտը: Ազգաբնակչության մի մասը դուրս է մնացել պարտիական պրոպագանդայի տեսադաշտից: Անհրաժեշտ է մեր պարտիական կազմակերպությունների գաղափարական ազդեցությունը տարածել և խորացնել ավելի լայն մասսաների վրա, սովետական յուրաքանչյուր քաղաքացու ոտքի հանել փառապանծ գործերի, նոր սխրանքների համար:*

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՄԻԼԻՈՆՆԵՐԻ ԳՈՐԾ Է

## Խ. ԵՐԻՑՅԱՆ

*Սոցիալիստական մրցությունը որպես սոցիալիստական շինարարության մեթոդ, գիտականորեն հիմնավորել է Վ. Ի. Լենինը։ Բացահայտելով մրցության նշանակությունը նոր, սոցիալիստական հասարակարգի հաղթանակի համար, Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ միայն սոցիալիզմի ժամանակ են երևան գալիս իսկական մրցություն ծավալելու հնարավորությունները, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը։*

*Լենինյան այդ գաղափարներն իրենց վառ արտահայտությունը գտան հենց այն պահից, երբ կապիտալի կապանքներից ազատված աշխատավոր մարդը սկսեց խորտակել հինը և կառուցել նորը։*

*1919 թվականի գարնանն էր։ Սովետական երկիրը վեր էր ածվել ռազմական ճամբարի։ Նրա բախտը որոշվում էր ոչ միայն ռազմաճակատում, այլև թիկունքում։ Ահա այդ ժամանակ Մոսկվա—Կազան երկաթուղում ծնունդ առան առաջին կոմունիստական շաբաթօրյակները։*

*Վ. Ի. Լենինը խոսելով թիկունքում բանվորների հերոսության, հատկապես կոմունիստական շաբաթօրյակների մասին, գրում էր. «Այդ տեսակետից ուղղակի հսկայական նշանակություն ունի Կոմունիստական շաբաթօրյակների կազմակերպումը բանվորների կողմից, իրենց սեփական նախաձեռնությամբ... Դա սկիզբն է մի հեղաշրջման, որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական է, քան բուրժուազիայի տապալումը, որովհետև այդ նշանակում է հաղթահարել սեփական անշարժությունը, սանձարձակությունը, մանրբուրժուական էգոիզմը,—այդ սովորությունները, որ անիծյալ կապիտալիզմը ժառանգություն է թողել բանվորին և գյուղացուն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 503—504)։*

*Կոմունիստական շաբաթօրյակների ծնունդը ռևոլյուցիա էր աշխատանքում։ Դա այն հսկայական ստեղծագործական և հերոսական աշխատանքի սկիզբն էր, որ այնուհետև ծավալվեց մեր երկրում սոցիալիստական շինարարության տարիներին։ Կոմունիստական շաբաթօրյակները լայն ուղի հարթեցին մրցության համար, որը դարձավ սոցիալիստական շինարարությունը խթանող վիթխարի ուժ։*

*Սովետական երկրի զարգացման խոշորագույն թռիչքը պատմական կարճ ժամանակաշրջանում առաջին հերթին պետք է վերագրել նաև նրան, որ մրցությունը դարձավ միլիոնավոր կառուցողների կենսական պահանջ։ Այդ են վկայում այն խոշոր նվաճումները, որ մեր երկրին բերեց 1959 թվականը, կոմունիզմի ծավալուն շինարարության առաջին տարին։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ նշված է, որ հերոսական բանվոր դասակարգի ջանքերով 1959 թվականի տասնմեկ ամիսնե-*



*րի արդյունաբերական արտադրության պլանը գերակատարվել է։ Պլանից ավելի արտադրվել է ավելի քան 40 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Այդ ժամանակամիջոցում, 1958 թ. համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի թողարկումը պլանով նախատեսված 7,7 տոկոսի փոխարեն ավելացել է 11,3 տոկոսով։ Այսպիսով, յոթնամյակի առաջին տարվա արդյունքները ցույց են տալիս, որ մեր արդյունաբերությունն ավելի արագ տեմպերով է զարգանում, քան նախատեսված է յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով։*

*Գյուղատնտեսության աշխատողները սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ՝ չորս-հինգ տարում կատարելու և բնակչության մեկ շնչին ընկնող մսի ու անասնաբուծական մյուս մթերքների արտադրությամբ կարճ ժամանակում ԱՄՆ-ին հասնելու համար։ Չնայած երկրի մի շարք խոշոր հացահատիկային շրջաններում եղած երաշտին, անցած տարում պետությունը գնեց բավարար չափով հացահատիկ։ Արագ տեմպերով շարունակում է զարգանալ հանրային անասնաբուծությունը։ 1959 թվականին ՍՍՌՄ-ը գերազանցեց ԱՄՆ-ին կաթի համախառն արտադրանքի գծով, ինչպես և մեկ շնչին ընկնող յուղի քանակով։ Այս ամենը խոսում են այն մասին, որ անսպառ են սովետական ժողովրդի ուժերը, որոնք լիովին ծառայում են նրա բարօրության համար, երբ պարտիան կուռ շարքերով նրան առաջնորդում է դեպի կոմունիզմ։ Ամենօրյա աշխատանքային պայքարում մարդիկ ձգտում են ստեղծել ավելի շատ, ավելի որակով, փնտրում և գտնում են աշխատանքի, կենցաղի և կուլտուրայի նոր ձևեր։*

*Ժողովրդական մասսաների ստեղծագործության չտեսնված վերելքի պայմաններում ծնվեց կոմունիստական աշխատանքի բրիգադաների, կոլեկտիվների և հարվածայինների պատվավոր կոչման արժանանալու շարժումը։ Այն մեծ պատմություն չունի, նրանից անցել է ընդամենը մեկ տարի մի քանի ամիս, բայց որքա՜ն մեծ են նրա մասշտաբները ժամանակի համեմատությամբ։ ՍՄԿԿ XXI համագումարի նախօրյակին շատ քիչ էր կոմունիստական աշխատանքի բրիգադաների թիվը։ Իսկ այժմ արդեն ամբողջ երկրում կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչման համար պայքարում է մոտ 190 հազար կոլեկտիվ։ Մեր ռեսպուբլիկայում այդ շարժումն ընդգրկում է մոտ 800 կոլեկտիվ, որից 49-ը արժանացել է այդ կոչման։ Կոմունիստական աշխատանքի հարվածայնության համար պայքարում է 2000 հոգի, որից 65-ն արդեն կրում է այդ կոչումը։*

*Այդ շարժումը նշանավորեց սոցիալիստական մրցության նոր էտապ։ Եվ ոչ միայն նրա համար, որ այն խնդիր է դնում օգտագործել բոլոր արտադրական կարողությունները, այլև անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Այժմ պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում են ոչ միայն առանձին առաջավորների, այլև բրիգադաների, ցեխերի, ամբողջ կոլեկտիվի, լինի նա մեծ, թե փոքր, հաջողությունները։ Այսպիսով, սոցիալիստական մրցությունը գնալով ընդունում է ավելի մասսայական բնույթ, որը տարածվում է ամենուրեք, աշխատանքային սխրագործությունները բազմապատկվում են օրեցօր։*

*Երևանի Մարտի 8-ի անվան կարի ֆաբրիկայի կոլեկտիվը, որը գերազանցապես բաղկացած է կոմերիտականներից և երիտասարդներից, պայքարում է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչման հա-*

*մար։ Շատ բրիգադաներ այստեղ արտադրական առաջադրանքները կատարում են 200—300 տոկոսով։ Պատանիների և աղջիկների մեծ մասն արդեն տիրապետել է մի քանի մասնագիտության։ Սոցիալիստական մրցության լավագույն կազմակերպումը ֆաբրիկայում վճռական նշանակություն ունեցավ անցյալ տարվա արտադրական պլանները ժամանակին կատարելու, արտադրանքի որակը բարձրացնելու համար։*

*Սոցիալիստական մրցության ներկա էտապի բնորոշ գծերից է այն, որ մրցությունը տեղի է ունենում բարեկամական այնպիսի մթնոլորտում, երբ արտադրության առաջավոր դիրքերում գտնվողները մշտական օգնության ձեռք են մեկնում ետ մնացողներին, որպեսզի ամբողջ կոլեկտիվը դառնա առաջավոր։ Վալենտինա Գագանովայի օրինակով երկրում այժմ ծավալվող մասսայական շարժումը ասում է այն մասին, որ մեզ մոտ տեղի է ունենում կոմունիստական հասարակարգի անհատի ձևավորում։ Արտադրության առաջավոր տեղամասից անցնել ետ մնացող տեղամաս, անձնականը զոհել կոլեկտիվի շահերի համար, նշանակում է օժտված լինել անշահախնդիր փոխադարձ օգնության, հասարակական բարձր գիտակցության ոգով, որը բնորոշ է մեր հասարակարգի մարդուն։*

*Վ. Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությունը տարածվում է նաև ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում։ Նրա օրինակին հետևողների թիվը ռեսպուբլիկայում արդեն 100-ից անցել է։*

*Երևանի Կիրովի անվան, Կիրովականի քիմիական, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, մանվածքային, գուլպայի, կարի ֆաբրիկաների պարտիական կազմակերպությունները միջոցառումներ են մշակել Գագանովայի առաջավոր փորձը տարածելու ուղղությամբ։ Նրանք օգտագործում են ագիտացիոն-մասսայական աշխատանքի զանազան միջոցներ՝ պատի թերթեր, ցուցադրական ագիտացիա, զրույցներ, հանդիպումներ, փոխադարձ այցելություններ և այլն։ Կատարված աշխատանքի նախնական արդյունքներն իրենց զգալ են տալիս։ Անվանի տեքստիլագործ Գագանովայի օրինակին հետևեց Լենինականի տեքստիլ կոմբինատի մանվածքի ֆաբրիկայի մանող ցեխի առաջավոր բրիգադավար Սերյոժա Գասպարյանը։ Նա աշխատանքի գնաց ետ մնացող բրիգադա, որն այժմ քայլում է առաջավորների շարքում։ Սերյոժայի նմանները Լենինականի ձեռնարկություններում արդեն շատ կան։ Գագանովայի օրինակին հետևեցին նաև Կիրովականի կարի ֆաբրիկայի բրիգադիր Տոնոս Մանուկյանը, Երևանի Շահումյանի շրջանի Լենինի անվան մետաքսի կոմբինատի կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար Երեմ Ասլանյանը և ուրիշներ։*

*Ի՞նչն ստիպեց այդ մարդկանց թողնել իրենց առաջավոր բրիգադաները և գնալ նոր տեղամաս, որտեղ շատ դժվարություններ կան հաղթահարելու, ուր պահանջվում է ավելի քրտնաջան աշխատանք, ուժերի ավելի լարվածություն։ Չէ՛ որ նրանց այդ քայլը ոչ ոքի կողմից նախապես չէր թելադրված։*

*Այն ծնվեց նոր շարժման ընթացքում, կյանքն ինքը թելադրեց այդ մարդկանց՝ տրոնելու և գտնելու արտադրության ավելի ուժեղ թափով առաջ մղելու ուղիները։ Բարձր գիտակցականությունը, որը զուգակցվում է աշխատանքային վարպետության հետ, նրանց մղեց դեպի հասարակական մեծամեծ գործեր։*



*Սոցիալիստական մրցության այժմյան էտապի բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ «աշխատել և ապրել կոմունիստաբար» կոչը նշանակում է պայքարել ո՛չ միայն նյութական բարիքների առատություն ստեղծելու, այլև հասարակության անդամների ընդհանուր կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար։ Եվ դա հասկանալի է։ Ովքեր ցանկանում են լինել կոմունիզմ կառուցողների առաջավոր շարքերում, նրանք պետք է օժտված լինեն գիտելիքներով, լինեն կուլտուրապես զարգացած մարդիկ։*

*Անցյալ տարի ամբողջ երկրին հայտնի դարձավ կոմերիտական ինժեներ Եվգենի Պրոնկինի անունը։ Նա օգնում է աշխատանքի նույն տեղամասի իր երկու ընկերներին բարձրացնելու իրենց գիտելիքները և կատարելագործելու որակավորումը։ Այդ նախաձեռնությանը հետևեցին շատերը։*

*Այս տեսակետից չափազանց մեծ նշանակություն ունի ՀամԼԿԵՄ Կենտկոմի VI պլենումի որոշումը, որը կոչ արեց երիտասարդության համամիութենական արշավ կազմակերպել գիտության տիրապետման համար։ Յուրաքանչյուր պատանի և աղջիկ պետք է հարստացնի իր հանրակրթական գիտելիքները, արտադրական ունակությունները, քաղաքական և կուլտուրական մտահորիզոնը։ Սոցիալիստական մրցությունը, անշուշտ, ավելի արդյունավետ կլինի, երբ մրցում են միմյանց հետ բարձր գիտակցություն ունեցող անձնավորություններ, որոնք ճիշտ կիրառում են այդ գիտելիքները, իրենց ուժն ու կարողությունը։*

*Սակայն այս չափազանց կարևոր նշանակություն ունեցող խնդիրը, այսինքն երիտասարդության ուսման և դաստիարակության հարցը, անհրաժեշտ ուշադրության չի արժանանում առանձին պարտիական կազմակերպությունների, ձեռնարկությունների ղեկավարության կողմից։ Կան դեռևս առանձին պարտիական և տնտեսական ղեկավարներ, որոնք մտածում են այսպես՝ եթե այս կամ այն երիտասարդ բանվորը օրինական ճանապարհով մի քանի ժամով բացակայում է գործարանից բաներիտ դպրոց հաճախելու համար, դրանով մեծ վնաս է բերում գործարանին։ Բայց այդ ընկերները աչքաթող են անում այն կարևոր հանգամանքը, որ ուսուցումը բաներիտ դպրոցում, երեկոյան տեխնիկումում կամ ինստիտուտում բանվորի հաջող աշխատանքի, արտադրության պրոգրեսի հիմնական պայմաններից մեկն է։ Այս տեսակետից չի կարելի չնշել այն անհոգությունը դեպի երիտասարդ բանվորների կրթությունը, որ ցուցաբերում են Լենինականի միկրոշարժիչների գործարանի ղեկավարները, հեծանիվի և մահճակալի գործարանների առանձին ցեխերի պետեր։ Այս երևույթն անշուշտ մեր այսօրվա բուռն առաջընթացին խանգարում է և այն պետք է վերացվի մեր աշխատանքի ոլորտից։*

*Կոմունիստական աշխատանքի բրիգադաների շարժումը նոր բովանդակություն հաղորդեց սոցիալիստական մրցությանը, ավելի բարձրացրեց կոմունիզմի առաջավոր կառուցողի պատիվը։ Այսօր չի կարելի մարդու վարքագծին կենցաղում նայել որպես երկրորդական բանի, կամ չնկատել մեր կարգերին խորթ արարքները։ Մի՞թե կարելի է առաջավոր համարել այն մարդուն, որն արտադրության մեջ արդարացնում է իրեն, գովասանքի արժանանում, բայց զբաղվում է հարբեցողությամբ, խուլիգանությամբ։ Առաջավոր չի կարելի համարել նաև այն երիտասարդին, որը օրինակելի է կենցաղում, բայց արտադրության մեջ աշխատում է առանց կրակի, առանց նախաձեռնության, չի սի-*

գում աշխատանքը և չի ապրում նրանով, ուստի առաջավոր լինելու չափանիշը ոչ միայն օրինակելիությունն է արտադրության մեջ, այլև կենցաղում:

Ինքնըստինքյան հասկանալի է, որ աշխատանքում և կենցաղում առաջավոր, օրինակելի մարդ լինելու խնդիրն ինքն իրեն չի լուծվում։ Այն պահանջում է պարտիական և կոմերիտական կազմակերպություններից՝ լրջորեն մոտենալ այս հարցին, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի դաստիարակությանը վերաբերվել որպես առաջնակարգ խնդրի։ Այս առումով էլ սոցիալիստական մրցության կազմակերպումը, այդ բնագավառի յուրաքանչյուր քայլը պետք է ուղղված լինի ոչ միայն արտադրական պլանների կատարմանը, այլև մարդկանց դաստիարակությանը, ամեն տեսակետից մեր հասարակության ընդհանուր բարօրության բարելավմանը։

Ուրեմն դաստիարակությունը պետք է տարվի ոչ միայն աշխատանքային պրոցեսում՝ սոցիալիստական պարտավորությունների կենսագործման, այլև հասարակության նկատմամբ նաև մյուս պարտականությունների կատարման ուղղությամբ։ Սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս անհրաժեշտ է առաջավորների աշխատանքի լավագույն փորձը վեր հանել բազմակողմանիորեն, նշել ամենաէականը, նորը և դարձնել այն բոլորի սեփականություն։ Այս առումով խրախուսելի է Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի պարտիական կազմակերպության աշխատանքը։ Այստեղ կարևորն այն է, որ պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպության միջոցառումներին ակտիվորեն մասնակցում են գործարանի բանվորները։ Լավ է աշխատում գործարանի կարմիր անկյունը։ Այստեղ սիստեմատիկորեն ամփոփում են սոցմրցման արդյունքները և տարածում առաջավորների փորձը։ Սոցմրցման արդյունքներին նվիրված երեկոներն անցնում են հետաքրքրական և ունենում են խոշոր դաստիարակչական նշանակություն։ Գործարանի պարտիական և կոմերիտական կազմակերպություններն իրենց լավագույն նախաձեռնությամբ կարողանում են երիտասարդության ուշադրությունը գրավել ավելի էական հարցերի վրա, ներարկել նրանց արտադրության և կենցաղում օրինակելի լինելու, կոլեկտիվի շահերը պաշտպանելու լավագույն հատկություններ։

Սոցիալիստական մրցության առաջավոր դիրքերում անշուշտ միշտ պետք է գտնվեն կոմունիստները և կոմերիտականները։ Այդ կապակցությամբ ուշադրության արժանի է Լենինականի սարքաշինական գործարանի պարտիական կազմակերպության նախաձեռնությունը։ Այս կազմակերպության վերջին ռնբաց ժողովը նվիրված էր կոմունիստական աշխատանքի հարցին, որի քննարկումը հնարավորություն տվեց պարզել, թե ինչպես են կատարում կոմունիստները սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունները։ Նման ժողովների լավ նախապատրաստումը և անցկացումը օգնում է կոմունիստներին ավելի լավ իմանալու գործարանի ընդհանուր վիճակը, մոբիլիզացնում նրանց սոցմրցման պարտավորությունները բարեխղճորեն կատարելու համար։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ամբողջ սովետական ժողովուրդը պայքարում է կոմունիզմի ծավալուն կառուցման, առաջին յոթնամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Այս շարժմանը ռեսպուբլիկայում առաջին արձագանքողներից էին նաև Երևանի Ձերժինսկու անվան, ավտո-պահեստամասերի, կոմպրեսորների, հիդրոպոմպերի գործա-



-րանների կոլեկտիվները։ Վերջերս ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեն քննության առավ այդ կոլեկտիվների կողմից վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը։ Հարցի քննարկումը ցույց տվեց, որ կատարված դրական աշխատանքի հետ միասին մի շարք պարտավորությունների կատարումը ձախողում է։ Ավտոպահեստամասերի գործարանը ոչ միայն չապահովեց վերցրած պարտավորությունների, այլև անցյալ տարվա արտադրանքի թողարկման պլանի կատարումը։ Չեն կատարված նաև արտադրական պրոցեսների մեքենայացման, առաջավոր տեխնոլոգիան արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ վերցրած պարտավորությունները։

Նշված թերությունների հիմնական պատճառներից մեկն այն է, որ այդ գործարանի պարտիական կազմակերպությունները պարտավորությունները վերցնելուց հետո թուլացրին սոցիալիստական մրցության գործի ղեկավարությունը։ Ցեխային պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները ժամանակին չամփոփեցին վերցրած պարտավորությունների կատարումը։ Չգիտենալով գործարանների իրական վիճակը, նրանք չկարողացան ժամանակին օգնել ցեխերի և տեղամասերի պետերին՝ լիկվիդացնելու արտադրության նեղ տեղերը։ Եվ ահա տարին անցավ, նրանք կանգնեցին անախորժ փաստի առջև. գործարանի կոլեկտիվի խոստումը մնաց որպես խոստում։

Սոցիալիստական մրցության նկատմամբ ձևական վերաբերմունք կա նաև Երևանի Մյասնիկյանի անվան, հացի առաջին գործարանների և այլ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների կողմից։

Վերևում հիշատակված գործարանների պարտիական կազմակերպությունները չպետք է աշխատեն անցյալ տարվա նման։ Մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարմանը պետք է հետևել ամեն օր, ժամանակին կոլեկտիվի անդամներին տեղյակ դարձնել պարտավորությունների կատարման վիճակին, ետ մնացողներին օգնել առաջավորներին հասնելու համար։

Յոթնամյա պլանի հաջող կատարման գործում կարևոր նշանակություն ունի արդյունաբերական ձեռնարկության, սովխոզի կամ կոլտնտեսության պլանով նախատեսված կոնկրետ խնդիրների մասսայականացումը։ Առաջավոր պարտիական կազմակերպությունների ղեկավարները այս բանը լավ են հասկանում. բացի բանավոր խոսքից, նրանց մոտ ցուցադրական ագիտացիան կրում է սիստեմատիկ բնույթ, այն արտահայտում է ոչ միայն հեռանկարային, այլև ամենամոտակա խնդիրները։ Սակայն առանձին պարտիական կազմակերպություններ կարևոր չեն համարում ցուցադրական ագիտացիայի միջոցով աշխատավորներին ցույց տալ տվյալ կոլեկտիվի կոնկրետ խնդիրները յոթնամյակում։ Այսպես, օրինակ, Վեդու շրջանի Վեդի կոլտնտեսության ակումբի ստենդներում մինչև վերջերս էլ չեն ցուցադրված յոթնամյակում կոլտնտեսության առջև դրված խնդիրները։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունները յոթնամյակի առաջին տարում հիմք են հանդիսանում 1960 թվականին ավելի մեծ արդյունքների հասնելու։ Քաղաքային, շրջանային պարտիական կոմիտեներն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները միջոցառումներ են նշում մրցությունն ավելի կոնկրետացնելու ուղղությամբ։ Ամփոփելով անցյալ տարվա մրցության արդյունքները, ռեսպուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմա-

կերպությունները համոզվում են, որ վերցրած պարտավորությունները շատ դեպքում չեն համապատասխանում եղած լայն հնարավորություններին։

Ռեսպուբլիկայի մի քանի շրջանների (Շահումյանի, Թալինի, Աղինի, Իջևանի) գյուղատնտեսության բնագավառի աշխատողները, ինչպես այդ նշվեց ՀԿՊ Կենտկոմի վերջին պլենումում, անցյալ տարի աշխատեցին իրենց հնարավորություններից ցածր։ Նպատակ ունենալով շարժման մեջ դնելու բոլոր հնարավորությունները գյուղատնտեսական մթերքների արտադրությունն անշեղորեն ավելացնելու համար, պարտիական կազմակերպությունները պետք է անդադրում աշխատանք տանեն ոյազանցինների, ինչպես և ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր առաջավորների փորձը լայնորեն մասսայականացնելու ուղղությամբ։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի առաջին տարում նոր աստիճանի հասավ միլիոնների ստեղծագործական աշխատանքը։ Ոգեշնչված տնտեսության, գիտության և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերած մեծագույն հաղթանակներով, մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատավորները յոթնամյակի երկրորդ տարին թևակոխեցին ավելի գոտեպնդված։ Սովետական լայնածավալ Հայրենիքի զանազան վայրերից ամեն օր լուրեր են ստացվում սովետական մարդկանց աշխատանքային նոր հրաշագործությունների, ստեղծագործական նոր նախաձեռնությունների, տեխնիկայի, գիտության նոր նվաճումների մասին։ Օրեցօր ավելանում է կոմունիստական աշխատանքի բրիգադների, կոլեկտիվների և հարվածայնության պատվավոր կոչման համար պայքարողների թիվը։ Միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, որը մեր հաջողությունների անսպառ ուժն է, ընթացիկ տարում, անկասկած, ավելի լայն թափ կհաղորդի սոցիալիստական մրցությանը, «աշխատել և ապրել կոմունիստաբար» հայրենասիրական շարժմանը։ Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է, հմտորեն գլխավորել արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում նոր նվաճումների համար մղվող համաժողովրդական պայքարը, մրցության մեջ ընդգրկել բոլոր կոլեկտիվներին, մոբիլիզացնել նրանց ուժերը պարտավորությունները պատվով կատարելու համար։

---

# ՊԱՐՏՐՅՈՒՐՈՆ ԵՎ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԸ

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

Վերջին երեք տարում խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել Երևանի ավտոդողերի գործարանում։ Մեծապես ընդարձակվել են նրա արտադրական տարածությունները, ստեղծվել աշխատանքային նոր տեղամասեր և, որ ամենակարևորն է, հիմնովին տեխնիկական վերակառուցման են ենթարկվել նրա ցեխերը։ Այդ ամենը հնարավորություն ընձեռեցին ավելի քան երկու անգամ մեծացնելու արտադրության ծավալը։

1959 թվականը հանդիսացավ ստեղծագործական խիզախումների նոր տարի։ Յոթնամյակի առաջին տարում այստեղ զգալի գործ կատարվեց արտադրության տեխնիկական վերազինման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ուղղությամբ։

— Մեր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողներն անցյալ տարի լավ աշխատեցին,— ասում է գործարանի դիրեկտոր Սերգեյ Գավրիլովիչ Բայախչեր,— ժամկետից շուտ կատարվեց արտադրական ծրագիրը, տեխնիկական-կազմակերպական միջոցառումների պլանի համաձայն վերափոխվեցին ու ավտոմատացվեցին մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ, ներդրվեց նոր տեխնիկա։ Շահագործման են հանձնվել ժամանակակից երկու նոր ռետինախառնիչներ, մոնտաժման պրոցեսում են ևս երկուսը։ Ցեխերում տեղադրվեցին հավաքման հաստոցներ, ավտոդողերի ու ավտոկամերայի եփման կաղապարներ, նոր հոսքային գծեր ու հարմարանքներ, ժապավենավոր փոխադրիչներ և այլն։ Յուրացվեց նոր չափսի ավտոդողի թողարկումը, զգալիորեն ավելացավ մեկ քառակուսի մետր արտադրական տարածությունից ստացվող արտադրանքի քանակը։ Այդ ամենը վկայում են մեր կադրերի և, մասնավորապես, տեխնիկական ինտելիգենցիայի մտավոր աճման ու ստեղծագործական ակտիվության բարձրացման մասին։

— Ի՞նչ պլաններ ունի ձեր կոլեկտիվն ընթացիկ տարում։

— 1960 թվականին շարունակվելու են արտադրության տեխնիկական կատարելագործման ու բարելավման աշխատանքները,— պատասխանեց ընկ. Բայախչեր,— այն, ինչ արված է, մեզ երբեք իրավունք չի տալիս հանգստանալու։ Դեռևս մեր աշխատանքում քիչ չեն թերությունները, կան և չլուծված հարցեր։ Մեր ինժեներների ու բանվորների ջանքերով դրանք կհաղթահարվեն։

***

Չի կարելի առաջ մղել արտադրությունը, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման ենթարկել նրա տեխնոլոգիական պրոցեսները, առանց այդ գործին ինժեներների ու տեխնիկների ակտիվ մասնակցության, առանց

նրանց ստեղծագործական մտքի խիզախումների։ Այդ լավ են գիտակցում ավտոդողերի գործարանի կոմունիստները, որոնք ջանում են, որ ամեն մի մասնագետ իր պոստում աշխատի ստեղծագործաբար, հանդես բերի նախաձեռնություն ու նորարարություն։

Միայն անցյալ տարի այստեղ աշխատանքի անցան շուրջ հինգ տասնյակ ինժեներներ ու տեխնիկներ. Ներկայումս գործարանում կա տեխնիկական ինտելիգենցիայի մի ստվար, երկու հարյուր հոգուց բաղկացած կոլեկտիվ, որի ճնշող մեծամասնությունն ունի բարձրագույն ու միջնակարգ տեխնիկական կրթություն։ Հրամանատարական պոստերում կան նաև արտադրությունը լավ իմացող, նախաձեռնող ու կազմակերպական ունակությունների տեր մարդիկ, որոնք դեռևս այսօր իրենց ձեռքում չունեն տեխնիկական ուսումնական հիմնարկի ավարտական դիպլոմ. դրանցից շատերն առանց արտադրությունից կտրվելու սովորում են ինստիտուտներում ու տեխնիկումներում։

Առիթներ եղան զրուցելու շատ մասնագետների հետ, ծանոթանալու նրանց մտահղացումներին ու պրակտիկ գործերին։ Դրանք մեծ մասամբ հետաքրքրասեր, իրենց մասնագիտությամբ ու հարազատ ձեռնարկությամբ հմայված երիտասարդ մարդիկ են։ Այդ նրանք են, որ առաջավոր բանվորների հետ համատեղ առաջ են մղում արտադրության տեխնիկական պրոգրեսի գործը։

Հենց այդպիսիներից մեկն է կոմունիստ ինժեներ Վաղարշակ Առուստամյանը։ Ինը տարի առաջ ավարտելով Մոսկվայի Լոմոնոսովի անվան Նուրբ քիմիայի տեխնոլոգիական ինստիտուտը, նա աշխատանքի անցավ գործարանում։ Երիտասարդ մասնագետը սկզբում ցեխում վարպետ էր, ապա նշանակվեց հերթափոխության պետ, ցեխի տեխնիկական ղեկավար և ահա արդեն երկրորդ տարին է, ինչ ղեկավարում է վուլկանիզացիայի (եփման) ցեխը։ Դա ինչ-որ սովորական մագլցում չէ պաշտոնական ծառայության սանդուղքի աստիճաններով, այլ վկայությունը նրա մտքի հասունացման, աճման։ Եվ գործարանում ում էլ հարցնեք Վաղարշակի մասին, ձեզ կասեն, որ նա լավ մասնագետ է և կավելացնեն՝ համեստ ու բարեխիղճ մարդ է, լավ ընկեր։

Այն ցեխը, որը գլխավորում է Վ. Առուստամյանը, պահանջում է տեխնոլոգիական նուրբ ռեժիմային աշխատանք։ Իսկ ցեխի պետի հոգսերը քիչ չեն. հարկավոր է լավ նախապատրաստել բանվորական տեղը ու ճիշտ դասավորել աշխատողներին, կարգավորել հաշվառման գործը, հետևել արտադրության տեխնոլոգիական ռեժիմին, ժամանակին կատարել ցեխի համար նախատեսված տեխնիկական կազմակերպական միջոցառումների պլանը, զբաղվել աշխատողների տեխնիկական ուսուցման ու դաստիարակության գործով և այլն։ Բոլորն էլ կարևոր են, բոլորն էլ անհետաձգելի։ Եվ արտադրության լավ կազմակերպիչը նա է, ով չի փորձում այդ ամբողջ ծանրությունը վերցնել միայն իր ուսերին, աշխատել բոլորի փոխարեն։ Չնայած կազմակերպական աշխատանքում ունեցած նրա որոշ թերություններին, այնուամենայնիվ Վաղարշակը արտադրության լավ հրամանատար է. նա մշտապես հոգում ու հետևում է կադրերի աճմանը, սովորեցնում նրանց ինքնուրույն աշխատել։

Յոթերորդ ամիսն է, ինչ ցեխի տեխնիկական ղեկավարի պոստում է երիտասարդ ինժեներ Հովհաննես Բարսեղյանը։

— Ընկեր Առուստամյանը,— ասում է նա,— հոգատար է իմ նկատմամբ, և ինչո՞ւ միայն իմ նկատմամբ։ Նա ամեն կերպ օգնում է ինձ՝ թափանցելու



արտադրության «գաղտնիքների» մեջ, դառնալու ցեխի տեխնիկական իսկական ղեկավար։ Մեծ համբերությամբ շտկում է իմ սխալները. վթարի կամ անկանոնության դեպքում նա հենց տեղն ու տեղը բացատրում է դրանց առաջացման պատճառները, օգնում այն վերացնելու։

Վաղարշակ Առուստամյանն անվանի նորարարի համբավ ունի գործարանում։ Նրա միտքը միշտ պրպտող է, որոնող։ Միայն 1959 թվականին նա արել է ինը ռացիոնալիզատորական առաջարկություն։ Առանձնապես բարձր գնահատվեց այդ առաջարկություններից մեկը. տեխնիկ Սամսոն Եղիազարյանի հետ միասին նա վուլկանիզացիայի ցեխի լիցքավորման տեղամասում ստեղծեց մի հարմարանք, որով բարելավվեց աշխատանքը, խնայվեցին պարապուրդները։ Այդ առաջարկության ներդրումով ձեռնարկությունը տարեկան կշահի 80 հազար ռուբլի։ Բայց ամեն ինչ չի կարելի գնահատել ու չափել դրամով. տվյալ ռացիոնալիզատորական առաջարկության ոչ պակաս կարևոր օգտավետությունն այն է, որ արտադրության տվյալ պրոցեսում նկատելի կերպով թեթևացել է բանվորի աշխատանքը և այն դարձել տեխնիկապես անվտանգ։ Միաժամանակ Վ. Առուստամյանը խրախուսում է ցեխի աշխատողներին հանդես գալու ռացիոնալիզատորական առաջարկներով, օգնում նրանց իր խորհրդով, գիտելիքներով. միայն մեկ տարում գործարանում ստացված ռացիոնալիզատորական առաջարկությունների ավելի քան մեկ քառորդը արվել է վուլկանիզացիայի ցեխի բանվորների ու մասնագետների կողմից։

Դրվատանքի արժանի են նաև գործարանի մյուս շատ մասնագետներ. նրանք իրարից տարբերվում են խառնվածքով, հակումներով, տարբեր են նրանց գիտելիքներն ու պրակտիկ փորձը։ Բայց նրանք բոլորն էլ տոգորված են հայրենասիրական մի ջերմ մղումով՝ տեխնիկական պրոգրեսի ճանապարհով կրճատել յոթնամյա պլանով նախատեսված անցնելիք տարածությունը։

Գործարանի պարտբյուրոյի քարտուղար Մելիք Գիժլարյանը փորձված ինժեներ է, մեկ տարի առաջ ղեկավարում էր ձեռնարկության խոշոր ցեխերից մեկը։ Նա իր իսկ անձնական փորձով գիտե, թե որքան խոշոր է մասնագետի դերը արտադրության մեջ։

— Պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն,— ասում է նա,— ձգտում են իրենց ամենօրյա պրակտիկ աշխատանքում հենվել մասնագետների վրա։ Արտադրության այս կամ այն կարևոր հարցերը լուծելիս մենք հաճախ դիմում ենք ինժեներների և տեխնիկների օգնությանը, խորհրդակցում նրանց հետ, նրանց միջոցով էլ ներազդում արտադրության վրա, լուծում արտադրության տեխնիկական զարգացման խնդիրները։

Նա պատմում է, թե ինչպես ակտիվ մասնակցություն են ցուցաբերել մասնագետները գործարանի տեխնիկական վերակառուցման պլանի մշակման ու նրա պրակտիկ իրականացման, բանվորների տեխնիկական ուսուցման, ռացիոնալիզատորական շարժման ծավալման ուղղությամբ։ Միայն 1959 թվականին տեխնիկական ուսուցման խմբակների միջոցով ու անհատական կարգով այստեղ սովորել ու որակավորվել են 570 բանվոր։ Ինժեներա-տեխնիկական աշխատողները կազմակերպելով բանվորների տեխնիկական ուսուցումը, միաժամանակ օգնում են նրանց՝ ռացիոնալիզատորական առաջարկներով բարելավելու աշխատանքային պրոցեսները։ Արդյունքը վատ չէ։ Մեկ տարում ստացված 267 ռացիոնալիզատորական առաջարկությունից ընդուն-

վել է 188-ը, որից արդեն ներդրվել է 166-ը. գործարանի ռացիոնալիզատորներն արդեն յոթնամյակի ֆոնդն են մուծել 632 հազար ռուբլի։ Ստեղծվել է գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերության սկզբնական կազմակերպություն, որում ընդգրկված են ավելի քան երկու հարյուր բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ։

Ավտոդողերի գործարանի պարտիական կազմակերպությունը որոշ աշխատանք է կատարում ինժեներա-տեխնիկական աշխատողների ուսուցման ու դաստիարակության ուղղությամբ։ Առանձին ցեխերում արտադրություն նոր եկած երիտասարդ մասնագետներին ցույց է տրվում լուրջ օգնություն, նրանց համար կազմակերպվում են զրույցներ, պարապմունքներ։ Մասնագետների որակավորումը բարձրացնելու նպատակով կազմակերպվել են ռետինի արդյունաբերության զարգացման արդի պրոբլեմներին նվիրված գիտա-տեխնիկական դասախոսություններ, տեխնիկական կոնֆերանսներ, ուր զեկուցումներով ու ռեֆերատներով հանդես են եկել մի շարք ինժեներներ. այդ նույն նպատակով անցյալ տարի մի խումբ մասնագետներ գործուղվել են Միության գիտա-հետազոտական ինստիտուտներն ու ավտոդողերի գործարանները։

Ինժեները ոչ միայն մասնագետ է ու արտադրության կազմակերպիչ, այլև հասարակական-քաղաքական ակտիվ գործիչ։ Գործարանի պարտյուրոն ինժեներա-տեխնիկական աշխատողներից շատերին ներգրավել է հասարակական ակտիվ գործունեության մեջ։ Այսպես, ագիտկոլեկտիվի 42 անդամներից 26-ը պարտիական ու անպարտիական ինժեներներ ու տեխնիկներ են, որոնք մասսաներին են հաղորդում պարտիայի խոսքը, պարզաբանում պարտիայի ու կառավարության որոշումները, տեխնիկական առաջընթացի հարցերը։ Նրանց մեջ քիչ չեն այն մարդիկ, որոնք օրինակելիորեն են կատարում պարտիական հանձնարարությունը։ Ցեխերում մասնագետներն օգնում են պատի թերթերի լույս ընծայմանը. գործարանի «Երևանի շիննիկ» ամենօրյա պատի թերթի (որն, ի դեպ, լույս է տեսնում միաժամանակ հայերեն ու ռուսերեն լեզուներով) խմբագրական կոլեգիայի ինն անդամներից վեցը ինժեներներ ու տեխնիկներ են։ Մասնագետներից 17 հոգի հասարակական կարգը պահպանող դրուժինայի անդամ են, շատերն ակտիվորեն մասնակցում են պարտիական վերահսկողության հանձնաժողովների աշխատանքին։ Առանձին պատրաստված ընկերներ պրոպագանդիստներ, գործարանային զեկուցողների խմբի անդամներ են։ Պարտիական, կոմերիտական, արհմիութենական և հասարակական մյուս կազմակերպությունների ակտիվիստների շարքում ևս շատ մասնագետներ կան։ Ինժեներա-տեխնիկական աշխատողների զգալի մասը սովորում է պարտիական ու կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցում։

Արդյո՞ք այստեղ ամեն ինչ արված է տեխնիկական ինտելիգենցիայի գաղափարական դաստիարակության, նրա ակտիվության բարձրացման համար։ Այդ հարցի պատասխանը տրվեց գործարանի պարտիական կազմակերպության վերջին հաշվետու-ընտրական ժողովում, ուր այդ կապակցությամբ պարտբյուրոյի հասցեին արվեցին քննադատական լուրջ դիտողություններ։

Եվ հիրավի։ Պարտիական կազմակերպության ու նրա բյուրոյի աշխատանքում կան ստվերոտ կողմեր, որի մասին վկայում են մի շարք փաստեր։

Մի քանի ամիս առաջ գործարանից ինքնակամ հեռացավ երիտասարդ ինժեներ Ժ. Ազնաուրյանը։ Որոշ մարդիկ, թերևս, կասեն, թե դրանում մի



անսովոր բան չկա, մարդը չուզեց այս գործարանում աշխատել և հեռացավ։ Բայց դա հարցի միայն մի կողմն է։ Ինստիտուտն ավարտելուց հետո նա երկու տարի աշխատեց գործարանում, այստեղ սովորեց ավտոդողերի պատրաստման գործը, ձեռք բերեց արտադրական որոշ փորձ. երիտասարդը վարպետից դարձավ հերթափոխության պետ։ Շատերը նրան ճանաչում էին որպես բարեխիղճ և խոստումնալից մասնագետի։

Եվ մի օր էլ նա թե.

— Գիտեք, ես այլևս գործարանում չեմ կարող աշխատել, բնակարանս հեռու է, աշխատանքը՝ ծանր։

Աշխատանքից ազատվելու նրա դրդապատճառները հիմնավոր չէին։ Երիտասարդի հետ զրուցեցին գլխավոր ինժեները, պարտբյուրոյի քարտուղարը՝ համոզելով նրան մնալ գործարանում։ Ապարդյուն։ Ժ. Ազնաուրյանը անգամ չունկնդրեց նրանց և այն խնդրանքին, թե՝ մի քիչ սպասիր մինչև քեզ փոխարինող ճարվի։ Այդ ինժեները, որն իր գրպանում ուներ կոմերիտական անդամատոմս, աշխատանքի թեժ օրերին թողեց իր բնագիծը։ Իսկ ինչո՞ւ նա հեռացավ գործարանից, ի՞նչն էր դրա պատճառը։ Պետք էր պարզել. անհրաժեշտ էր կոլեկտիվ հրապարակային խոսակցություն բաց անել նրա հետ։ Դա, անկասկած դաստիարակչական նշանակություն կունենար, թե՛ երիտասարդ մասնագետների, և թե՛ հենց իր՝ Ազնաուրյանի համար. միաժամանակ ակընհայտ կերևար գործարանի հասարակական կազմակերպությունների թերացումը, որոնք անցած երկու տարում չկարողացան լավ ճանաչել ու դաստիարակել երիտասարդ մասնագետին, հաղթահարելով նրա մեջ էգոիզմը, անձնական բարօրությունը հանրային կոլեկտիվ շահերից բարձր դասելու նրա միտումը։

Երեք ամիս առաջ այստեղ պատահեց մի այսպիսի դեպք։ Վեց ամիս գործարանում աշխատելուց հետո ընկերական դատարանի որոշմամբ աշխատանքից հեռացվեց էլեկտրատեխնիկ Ռ. Վարդանյանը։ Նա հերթապահության ժամանակ խմել էր և ինքնակամ լքել պոստը։

Այս և այլ նման կարգի փաստեր ասում են այն մասին, որ պարտբյուրոն և ցեխային պարտիական կազմակերպությունները պետք է կարողանան մոտիկից ճանաչել երիտասարդ մասնագետներին, մշտապես հետաքրքրվել նրանց աշխատանքով ու անձնական կյանքով, տեղյակ լինել նրանց խոհերին ու մտորումներին, անհատական մոտեցում ունենալ նրանցից յուրաքանչյուրի նկատմամբ։ Մարդուն դաստիարակելը բարդ պրոցես է և այդ ուղղությամբ կատարված աշխատանքը չի կարելի չափել միայն կարդացված զեկուցումների քանակով, խորհրդակցություններով և այլն։ Դաստիարակել երիտասարդ մարդուն, երբեք էլ չի նշանակում դաժանություն անել նրա նկատմամբ, հանդես բերել ավելորդ խնամակալություն ու սենտիմենտալիզմ։ Պարտիական կազմակերպությունը պետք է դաստիարակչական աշխատանքն այնպես կառուցի, որ երիտասարդ մասնագետի մոտ զարգանա պարտքի զգացումը Հայրենիքի նկատմամբ, կարողանա հաղթահարել աշխատանքում հանդիպող դժվարությունները, սովորի իր իսկ սեփական սխալների վրա։

Պատահում են և այսպիսի դեպքեր։

1959 թվականի օգոստոս ամսի վերջին էր։ Գլխավոր ինժեների կաբինետը մտան երկու երիտասարդներ՝ Ա. Այվազյանը և Գ. Գևորգյանը։

— Ուզում ենք Ձեզ մոտ աշխատել, նոր ենք ավարտել Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտը. ահա մեր դիպլոմները։

— Ուրախ եմ, շատ ուրախ,—սիրալիր պատասխանեց ընկ. Ոսկանովը,— ավելի լավ չէ՞ր լինի մինչև ընդունման հրամանի ձևակերպումը ծանոթանայիք արտադրության հետ։ Ման եկեք, տեսեք, գուցե մեր գործարանը Ձեզ դուր չի գա։

Երիտասարդներն ուրախությամբ ընդունեցին այդ հրավերը։ Նրանք եղան ցեխերում, թեթևակի ծանոթացան տեխնոլոգիական պրոցեսների հետ և գոհ իրենց զննումից՝ վերադարձան կաբինետ։

Հետևյալ օրը նրանք նշանակվեցին հավաքման ցեխի վարպետներ։

Չորս ամիս հետո այդ երիտասարդներից մեկին՝ Ա. Այվազյանին հանդիպեցինք մի խորհրդակցության ժամանակ. նա հակիրճ ելույթ ունեցավ.

— Ես նոր մարդ եմ հավաքման ցեխում և լավ ծանոթ չեմ ավտոդողերի արդյունաբերությանը, նրա տեխնոլոգիային։ Մեզ սիրալիր ընդունեցին գործարանում, բայց նույն սիրալիրությամբ չեն օգնում արագ կերպով տիրապետելու մասնագիտությանը։ Մենք կարիք ունենք լուրջ օգնության, բայց այն չենք ստանում։

— Հավաքման ցեխում,—նրանցից հետո խոսեց լավագույն վարպետ Մ. Ռումյանցևը,— երիտասարդ մասնագետներին շատ քիչ են օգնում և նրանք ստիպված են տապակվելու իրենց սեփական յուղի մեջ։

Արտադրության առանձին հրամանատարներ դեռևս չեն կարողանում ինչպես հարկն է կազմակերպել աշխատանքը ցեխերում, սահմանափակում են իրենց աշխատանքը ընթացիկ գործերով։ Աշխատանքի նման ոճը հասցնում է գործամոլության, զրկում նրանց աճելու և զարգանալու հնարավորությունից։

Լավ մասնագետ է համարվում կալանդրի ցեխի պետ, ինժեներ Ա. Մարգարյանը։ Բայց աշխատանքային ժամերից դուրս՝ մինչև ուշ երեկո նրան կարելի է տեսնել ցեխում և իր իսկ խոստովանությամբ շատ քիչ ժամանակ է գտնում կարդալու, զբաղվելու իր ցեխի աշխատողների ուսուցման, դաստիարակության գործով։ Կամ՝ տասը տարի է, ինչ այստեղ է աշխատում Ա. Հարությունյանը. այժմ նա ցեխի պետ է։ Նա արտադրությունը լավ գիտի, բարեխիղճ ու նվիրված աշխատող է։ Բայց երևում է, որ նա որպես արտադրության կազմակերպիչ ունի որոշ թուլություններ, լավ չի տիրապետում ղեկավարման արվեստին։ Թեկուզ այն բանը, որ նա փորձում է միայնակ կրել ղեկավարման ծանրությունը, վկայում է այդ մասին։ Փոխանակ գործուն օգնություն ցույց տալու, սովորեցնելու, նրան անընդհատ քամահրում են։ Բավական է ասել, որ միայն մեկ տարում նա ստացել է վարչական չորս տույժ։ Ոչ ոք չի ժխտում ադմինիստրատիվ միջոցառումների դաստիարակիչ ներգործությունը։ Բայց այդ չի բնորոշը մեր դաստիարակչական աշխատանքում։ Մի՞թե դաստիարակչական աշխատանքի թուլության արդյունք չէ այն, որ ինժեներատեխնիկական աշխատողների մոտ մեկ քառորդը անցյալ տարի ստացել է վարչական զանազան տույժեր։

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովից հետո գործարանում որոշ քայլեր են արվում ինժեներա-տեխնիկական աշխատողների հետ տարվող աշխատանքն ուժեղացնելու համար։ Պարտբյուրոյի քարտուղար ընկ. Գիժլարյանը ծանոթացնում է ձեռնարկված միջոցառումների հետ. շաբաթը մեկ անգամ գործարանում հրավիրվում է հերթափոխային մասնագետների տեխնի-



կական խորհրդակցություն, ուր քննարկվում են արտադրության տեխնոլոգիայի հարցեր. մասնագետների որակավորման նպատակով նախատեսված է 1960 թվականին մեծ թվով ինժեներների ու տեխնիկների գործուղել Միության գիտա-հետազոտական ինստիտուտներն ու գործարանները. կարգավորվելու է ցեխերում երիտասարդ մասնագետների ուսուցման գործը, հաճախակի կազմակերպելու են տեխնիկական սեմինարներ. մշակվել են միջոցառումներ տեխնիկական պրոպագանդայի գործը բարելավելու և տեխնիկական կաբինետ բացելու ուղղությամբ և այլն։ Անշուշտ, այդ ամենը ուրախալի է։

Ավտոդողերի գործարանի պարտիական կազմակերպությունը հարատև ու ծրագրված աշխատանք պետք է կազմակերպի ինտելիգենցիայի հետ, նրանց գիտելիքներն ու ջանքերը ամբողջապես ուղղի արտադրության հետագա վերելքի խնդիրներին, նրանց նախաձեռնությունը զարգացնելով։ Պետք է նրանց պայքարի հանել արտադրության կուլտուրայի բարձրացման, թողարկվող արտադրանքի բարելավման համար։

Հարկավոր է ոչ միայն սովորեցնել ու ճիշտ ուղղություն տալ, հետևել նրանց աշխատանքին, այլև մոտիկից զբաղվել նրանց կյանքով ու կենցաղով, ժամանակին նկատել յուրաքանչյուրի աշխատանքի ստվերոտ կողմերը։ Անհրաժեշտ է ուժեղացնել կատարվող քաղաքական աշխատանքը մասնագետների շրջանում և նրանց լայնորեն ներգրավել հասարակական գործունեության մեջ։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել պրակտիկներին, ամեն կերպ բարձրացնել նրանց տեխնիկական գիտելիքների մակարդակը։

Գործարանի պարտիական կազմակերպությունը մշտապես պետք է զարգացնի տեխնիկական ինտելիգենցիայի ստեղծագործական ակտիվությունը, բարձրացնի նրանց դերը տեխնիկական ակտուալ պրոբլեմների մշակման, բանվոր դասակարգի նոր սերնդի դաստիարակության գործում։

---

# ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՋԱԽՆԵՐԸ

Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ, Ս. ՊՈՂՈՍՅԱՆ

Կար ժամանակ, երբ Վ. Ի. Լենինը երազում էր Ռուսաստանում ունենալ հիսուն հազար գրադարան։ Այդ թիվը վաղուց գերազանցվել է։ Սովետական իշխանության տարիներին գրադարանների թիվն ավելացել է ավելի քան 10 անգամ, իսկ նրանց գրքերի ֆոնդը՝ 69 անգամ։ Ներկայումս մեր երկրում կա 400 հազար գրադարան՝ մեկ միլիարդ 350 միլիոն գրքով։ Իրենց սեփական ակումբներն ու գրադարաններն ունեն գրեթե բոլոր գործարանները, ֆաբրիկաները, կոլտնտեսությունները, սովխոզները, ուսումնական հաստատություններն ու պետական հիմնարկները։

Միայն մեր ռեսպուբլիկայում գործում են ավելի քան 1200 ակումբ, 2801 գրադարան, որոնց գրքային ֆոնդը հասնում է 15 միլիոն օրինակի։ Այժմ Հայաստանում գործում են այնպիսի խոշոր գրադարաններ, ինչպիսիք են՝ Ալ. Մյասնիկյանի անվան հանրային գրադարանը (չորս ու կես միլիոն գիրք), Երևանի Պետական համալսարանի գրադարանը (600 հազար գիրք) և այլն։

Վերջին տարիներս պարտիական կազմակերպությունների իրագործած միջոցառումների շնորհիվ շատ ակումբներ ու գրադարաններ աշխուժացրել են իրենց աշխատանքը։ Այժմ արդեն դժվար է հանդիպել մի ակումբ կամ գրադարան, որին կից չգործեն գեղարվեստական ինքնագործունեության, հանրակրթական, տեխնիկական, գյուղատնտեսական և այլ տիպի խմբակներ։

Ռեսպուբլիկայի ակումբներին կից գործում են 2100 գեղարվեստական ինքնագործունեության խմբակ։ Գյուղի աշխատավորների ու հատկապես երիտասարդության հետ կատարվող աշխատանքի օրինակելի կենտրոն է դարձել Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կոլտնտեսության ակումբը։ Ակումբին կից գործում են գեղարվեստական ինքնագործունեության 3 խմբակ, գրադարան՝ շուրջ 500 ընթերցողով, սպորտային 7 սեկցիա, ռադիոհանգույց, մշտական կինո և այլն։ Երբ իջնում է երեկոն և կոլտնտեսականները դաշտից տուն են վերադառնում, ակումբում սկսվում է եռուզեռը։ Ոմանք ընթերցարանում թերթեր ու ամսագրեր են կարդում, իսկ ոմանք ակումբի մեծ դահլիճում կինո են դիտում, կամ համերգ լսում։ Սպորտային հրապարակում պարապում են սպորտսմենները, իսկ մի այլ տեղ կազմակերպվում են մասսայական պարեր։

Երևանի քաղաքային գրադարանը կազմակերպում է տեխնիկական գրականության թեմատիկ ցուցադրումներ, սիստեմատիկաբար անց է կացնում ընթերցողների կոնֆերանսներ՝ նվիրված տեխնիկական պրոգրեսի հարցերին։ Կոնֆերանսներին մասնակցում են արդյունաբերական ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու արտադրության առաջավորները։ Հենց վերջերս գրադարանի ընթերցողների առաջ հանդես եկան Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները։



Այսպիսի աշխատանքի արդյունքը կարելի է համարել այն, որ մոտ 1000 բանվորների կարդացած գրքերի մոտ կեսը տեխնիկական գրականություն է։ Արթիկի շրջանի մի շարք գրադարաններ խրախուսելի աշխատանք են կատարում անասնապահության բնագավառում աշխատողների շրջանում՝ մասնագիտական գրականությունը պրոպագանդելու ուղղությամբ։

Սակայն դեռևս վատ է բնագիտական-տեխնիկական գրականության պրոպագանդան։ Գրեթե բոլոր գրադարաններում կազմակերպված գրքերի ցուցահանդեսները, կոնֆերանսները, քննարկումները, բարձրաձայն ընթերցանությունները մեծ մասամբ նվիրված են գեղարվեստական գրականությանը։ Թերևս դա այն պատճառներից մեկն է, որ Սովետաշենի մասսայական գրադարանից վերջին հինգ ամսվա ընթացքում կարդացված 2331 գրքերից միայն 8-ն է բնագիտական։ Նոր Արեշի գրադարանից նույն ժամանակամիջոցում կարդացվել է 5000 կտոր գիրք, որից բնագիտական՝ միայն 28, իսկ տեխնիկական՝ 24։

Գրադարանների աշխատանքների վրա խիստ բացասաբար է անդրադառնում նաև այն, որ շատ գրադարանների գրադարակներ լեփ-լեցուն են իրենց գիտա-տեխնիկական արժեքը կորցրած գրքերով։ Ընթերցողը չի կարողանում նոր, թարմ գրքեր ստանալ։ Աշտարակի շրջանի Ոսկեհատ գյուղի գրադարանի գրքերի կեսից ավելին վաղուց կորցրել են իրենց թարմությունը և ծածկված են փոշու հաստ շերտով։ Այստեղ ո՛չ միայն ընթերցողը, այլև ինքը՝ գրադարանավարը պահանջվող գիրքը դժվարությամբ է կարողանում գտնել։ Շատ գրադարաններում փոքր է գրքի շրջանառությունը և չնչին՝ ընթերցողների թիվը։

Դժբախտաբար դեռևս փոքր չէ նաև այն ակումբների ու գրադարանների թիվը, որոնք գոյություն ունեն միայն ձևի համար, օրերով փակ են, իսկ երբ բաց են լինում, ոչինչ չի կազմակերպվում։ Օրինակ, Բասարգեչարի շրջանի Փոքր Մազրա գյուղն ունի ակումբի բավականին լավ շենք՝ ընդարձակ դահլիճով և օժանդակ սենյակներով, բայց ակումբը երկար ժամանակ անգործության էր մատնված և վերածված էր տորֆի պահեստի։

Շատ ակումբներում և գրադարաններում անբավարար են պրոպագանդվում պարտիայի XXI համագումարի նյութերը, չի ուժեղացվում ցուցադրական ագիտացիան, դեռևս շատ քիչ են կազմակերպվում ընթերցողների կոնֆերանսներ, բանավոր ամսագրեր, հարց ու պատասխանի, գրական-գեղարվեստական թեմատիկ երեկոներ և հանդիպումներ արտադրության առաջավորների, գիտության ու կուլտուրայի գործիչների հետ։

Որոշ ակումբներում ու գրադարաններում քաղաքական-մասսայական աշխատանքները զուրկ են նպատակասլացությունից և տարվում են խիստ ցածր մակարդակով։ Ակումբա-գրադարանային որոշ աշխատողներ հենց իրենք վատ են զբաղվում քաղաքական ինքնակրթությամբ։ Նրանցից ոմանք չեն խորանում մարքսիստական տեսության, պարտիայի քաղաքականության, արտադրական տվյալ ձեռնարկության աշխատանքի էության մեջ և դրա հետևանքով ցածր մակարդակով են անցնում նրանց զրույցները։

Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմը քննարկելով երկրում գրադարանային գործը բարելավելու հարցը, նշեց, որ գրադարանների աշխատանքի բովանդակությունն ու մակարդակը դեռևս լրիվ չեն համապատասխանում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման խնդիրներին։ Շատ գրադարաններ հեռու են կոմունիստական շինարարության պրակտիկայից, վատ են բավարարում աշխատավորների աճող պահանջմունքները քաղաքական, արդյունաբե-

*բական, գեղարվեստական, գիտա-տեխնիկական և տեղեկատու գրականության
նկատմամբ։*

*ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դրել մոտ ժամանակներս լուծել գրադարաննե-
րի կողմից յուրաքանչյուր բնակավայրի, յուրաքանչյուր ընտանիքի սպասարկ-
ման խնդիրը։ Ուրեմն, գրադարանների աշխատանքները պետք է այնպես վե-
րակառուցել, որ այսուհետև ավելի ու ավելի խտանան գրքի բարեկամների
շարքերը, մեծանա գրքերի ֆոնդերի շրջանառությունը։ ՍՄԿԿ Կենտկոմը ան-
հրաժեշտ է համարել միավորել մոտ տարածության վրա գտնվող փոքր գրա-
դարանները, իսկ փոքրաքանակ բնակչություն ունեցող վայրերում կազմակեր-
պել գրադարանների բաժանմունքներ, շրջիկ գրադարաններ, գրքի բացթողման
կետեր։*

*Ակումբներն ու գրադարանները հսկայական անելիքներ ունեն աշխատա-
վորության գեղարվեստական դաստիարակության գործում։ Այդ ուղղությամբ
ձեռք են բերված միայն մասնակի հաջողություններ։ Շատ ակումբներ ու
գրադարաններ դեռևս չեն դարձել աշխատավորության կուլտուրական հան-
գստի կազմակերպման կենտրոններ։ Այստեղ հազվադեպ են կազմակերպ-
վում կուլտ-մասսայական հետաքրքիր միջոցառումներ։ Լուրջ թերություններ
կան գեղարվեստական ինքնագործունեության կազմակերպման աշխատանք-
ներում։ Հաճախ էլ ինքնագործունեության անվան տակ բեմ են բարձրանում
անճաշակ ու անարվեստ խմբեր ու կատարողներ. այդ բացասաբար է անդ-
րադառնում աշխատավորության դաստիարակության և նրա էսթետիկական
ճաշակի մշակման վրա։ Գեղարվեստական ինքնագործունեության զարգաց-
ման, նրանց ռեպերտուարի ընտրության և կատարողական վարպետության
բարձրացման հարցերով դեռևս վատ է զբաղվում Կուլտուրայի մինիստրու-
թյան Կուլտ-լուս հիմնարկների վարչությունը և ժողովրդական ստեղծագոր-
ծության տունը։ Շատ ակումբներ և նույնիսկ կուլտուրայի տներ գեղարվես-
տական ինքնագործունեության ղեկավարներ չունենալու պատճառով ձախո-
ղում են այդ գործը։*

*Պարտիայի առանձին շրջկոմներ, սկզբնական կազմակերպություններ և
կուլտուրայի շրջանային բաժիններ բոլորովին անուշադրության են մատնել
ակումբներն ու գրադարանները բանիմաց, կարող կադրերով ապահովելու
գործը։ Դրա հետևանքով որոշ տեղերում ակումբային աշխատանքները վարում
են այնպիսի մարդիկ, որոնք կրթությամբ, հակումներով և ունակություններով
ակումբա-գրադարանային աշխատանքների հետ ոչ մի ընդհանուր բան չունեն։
Այդպիսիները ոչ թե աշխատում, այլ աշխատավարձ են ստանում։ Անհրա-
ժեշտ է, որ համապատասխան պարտիական ու սովետական օրգանները ար-
մատապես բարելավեն ակումբա-գրադարանային կադրերի ընտրության և
ուսուցման գործը. առանց դրա ակումբների և գրադարանների աշխատանքնե-
րի վճռական բարելավման մասին խոսք լինել չի կարող։*

*Շատ ակումբների ու գրադարանների աշխատանքներում ավելի ու ավելի
կարևոր տեղ են գրավում երիտասարդության նախաձեռնությունն ու ինքնա-
գործունեությունը։ Վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի որոշ քաղաքներում
և շրջաններում (Կիրովական քաղաք, Ապարան, Հոկտեմբերյան, Եղեգնաձոր)
կազմակերպվեցին և հաջողությամբ գործում են երիտասարդական զանազան
ինքնագործ ակումբներ, որոնք իրենց բովանդակալից ու հետաքրքիր աշխա-
տանքով լայն հեղինակություն են ձեռք բերել։ Արդեն գործում են նաև 12*



*կուլտուրայի համալսարան, երկու ժողովրդական թատրոն։ Սակայն ակումբա-
գրադարանային աշխատանքներում դեռևս վատ են օգտագործվում երիտա-
սարդության ուժերը։ Երիտասարդությունը ակումբի և գրադարանի սիրտն է,
որքան լայնորեն նրան ներգրավեն այդ աշխատանքներում, այնքան հարուստ
ու բովանդակալից կլինի ակումբի և գրադարանի գործունեությունը։*

*Այժմ, երբ պարտիան առանձնահատուկ կարևոր նշանակություն է տա-
լիս աշխատավորական լայն զանգվածների դաստիարակությանը, միանգա-
մայն անհանդուրժելի է, որ ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջաններում
դեռևս գոյություն ունեն մեծ թվով գերատեսչական «փակ» դահլիճներ ու
գրադարաններ, որոնցից օգտվում են խիստ սահմանափակ թվով մարդիկ.
դահլիճներից ու գրադարաններից շատերի (հատկապես դահլիճների) դռները
ամիսներով փակ են լինում։ Ինչո՞ւ, օրինակ, այնպիսի հոյակապ դահլիճներ,
ինչպիսիք են՝ Հայքաղգյուղ նախագծային ինստիտուտինը, Կոմպոզիտորների
միությանը, Ճարտարապետների տանը, Ժողտնտխորհինը, չպետք է տրամա-
դրվեն երիտասարդական լայն մասսաներին։*

*Մի շարք ակումբներ ու գրադարաններ ապահովված չեն բարեկարգ ու
հարմարավետ շենքերով։ Նույնիսկ Երևանի քաղաքային մասսայական խոշոր
գրադարանը տեղավորված է տարրական հարմարություններից զուրկ մի շեն-
քում։ Այժմ կառուցվում են 100-ից ավելի ակումբի շենքեր։ Բայց մի շարք
կոլտնտեսություններ ու շինարարական ձեռնարկություններ զանազան պատ-
ճառներով ձգձգում են ակումբների ու գրադարանների շինարարությունը։
Ակումբների ու գրադարանների շինարարության գործում պետք է լայնորեն
ներգրավել երիտասարդությանը։ Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանում երիտա-
սարդության ուժերով կառուցվեց ամառային մի կինո-թատրոն և կապիտալ
վերանորոգման ենթարկվեցին երկու ակումբների շենքեր։*

*Իրենց աշխատանքները պլանավորելիս և կազմելիս ակումբներն ու գրա-
դարանները հաճախ հաշվի չեն առնում աշխատավորների հետաքրքրություն-
ները, ընկնում են ձևականության և շաբլոնի հետևից. մինչդեռ ակումբի և
գրադարանի աշխատանքները պետք է լինեն կենդանի ու հետաքրքիր, բազ-
մազան ու նպատակասլաց։*

*ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի
խնդիրների մասին» վերջին որոշումը պատասխանատու դեր է հատկացնում
նաև ակումբա-գրադարանային աշխատողներին, որոնց պատվավոր պարտա-
կանությունն է՝ օգնել աշխատավորության կոմունիստական դաստիարակու-
թյան գործին, վճռականորեն բարելավել իրենց գործունեությունը և ընթանալ
մեր ժամանակին համաքայլ։*

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԽԱՂԱՂ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Կապիտալիզմից սոցիալիզմին անցումը, ինչպես ցույց են տվել մարքս-
իզմի հիմնադիրները, բոլոր երկրներում անխուսափելիորեն տեղի է ունենա-
լու պրոլետարական ռևոլյուցիայով, որի իրագործման ուղիներն ու եղանակ-
ները, սակայն, կարող են բազմազան լինել։ Անցման այդ բազմազան ձևերը
սոցիալիստական ռևոլյուցիայի մարքսիստական տեսության ընդհանուր
սկզբունքների, մասնավորություններում կոնկրետ ձևով հանդես եկող տար-
բերակներն են, որոնք պայմանավորվում են և կպայմանավորվեն ինչպես
հասարակական զարգացման այս կամ այն էտապի կոնկրետ առանձնահատ-
կություններով, այնպես էլ տարբեր երկրների ազգային ու ազգային-պետա-
կան բնորոշ գծերով։ Վ. Ի. Լենինն իրավամբ նշում էր, որ պրոլետարական
շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը պահանջում է կոմու-
նիզմի հիմնական սկզբունքների այնպիսի կիրառում, որ մասնավորություն-
ներում ճիշտ ձևափոխեր այդ սկզբունքները, ճիշտ համակերպեր ազգային,
պետական, տնտեսական և այլ տարբերությունները։ Այլ կերպ լինել էլ չի կա-
րող, քանի որ մասսաներին կարելի է ռևոլյուցիոն շարժման մեջ քաշել միայն
այն ուղիով, որը համապատասխանում է տվյալ երկրին ու տվյալ կոնկրետ
պայմաններին։ Անգամ միևնույն երկրում անցման ձևերը զարգացման զա-
նազան էտապներում միատեսակ լինել չեն կարող, այնպես որ յուրաքանչյուր
երկրում պրոլետարիատի դասակարգային պայքարի լավագույն տակտիկան
այն կլինի, որն ավելի շուտ ու ավելի հաստատապես է նպատակին հասցը-
նում։ Մարքսիզմը պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումները, ռևոլյուցիայի
իրագործման եղանակները չի կապում մեկընդմիշտ տրված շարժման մեկ
որոշ ձևի հետ։*

*Պրոլետարիատի պայքարի տակտիկան մեկընդմիշտ տրված անփոփոխ
մեծություն չէ։ Սերտորեն առնչված լինելով հասարակական կյանքի զար-
գացման հետ, այն ամեն մի կոնկրետ դեպքում իր վրա է կրում օբյեկտիվ
իրականության կնիքը։ Նա բխեցվում է ինչպես երկրի ներսում, այնպես էլ
միջազգային մասշտաբով, դասակարգային ուժերի հարաբերակցության ման-
րակրկիտ հաշվառումից։ Այդ իմաստով պրոլետարիատի դասակարգային
պայքարի տակտիկան բացարձակ ու անփոփոխ չէ, իր բնույթով նա հարաբե-
րական է։*

*Երբ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը հետազոտեցին XIX դարի եվրոպական
մայր ցամաքի կապիտալիստական երկրների զարգացման տնտեսական ու
քաղաքական պայմանները, գտան, որ այդ երկրներում սոցիալիստական ռե-
վոլյուցիան «կարող է լինել արյունոտ ու կատաղի», քանի որ բուրժուազիան
դաշնակցած ռեակցիոն կալվածատիրության հետ, պրոլետարիատի ռևոլյու-
ցիոն շարժումները ճնշում էր պայքարի բացառապես բռնի մեթոդներով։*



*Սոցիալական ռևոլյուցիայի իրականացման հիմնական լծակը XIX դարի
առաջին կեսին Անգլիայում և Ամերիկայում նույնպես բռնի ռևոլյուցիան էր։
Դրա համար էլ Ֆ. Էնգելսը չարտիստական շարժման «բարոյական ուժի կողմ-
նակիցներին» քննադատում էր, երբ նրանք անհիմն կերպով պրոլետարական
ռևոլյուցիայի իրականացման լավագույն ուղին խաղաղ անցումն էին համա-
րում։ 1845 թվականին Ֆ. Էնգելսն իրավացիորեն գրում էր. «...պետք է հրա-
ժարվել սոցիալական խնդիրն Անգլիայում խաղաղ ճանապարհով լուծելու
ամեն մի հույսից։* Միակ հնարավոր ելքը բռնի ռևոլյուցիան է մնում...» *(ընդ-
գծումը մերն է—Ս. Ֆ.), (Ֆ. Էնգելս, Բանվոր դասակարգի դրությունը Անգ-
լիայում, Երևան, 1934, էջ 398)։*

*Մարքսիզմի հիմնադիրները հաստատելով երկրների մի զգալի մասում
սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման բռնի եղանակների անխուսա-
փելիությունը, դրա հետ մեկտեղ, ինչպես վերը նշվեց, ընդունել են նաև
առանձին երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման
հնարավորությունները։ Սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման
հարցը Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը քննարկել են դեռևս XIX դարի 40-ական
թվականներին, որին ավելի հանգամանորեն անդրադարձան նույն դարի 70-
ական թվականներին։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գիտական խոր վերլուծության
հիման վրա հավաստեցին, որ այդ երկրներում սոցիալիստական ռևոլյուցիան
կարող է իրագործվել նաև խաղաղ եղանակով։ Այդ գաղափարը Կ. Մարքսն
ավելի կոնկրետ ձևով արտահայտեց 1872 թվականին I Ինտերնացիոնալի
Հաագայի կոնգրեսից հետո, Ամստերդամում կայացած ժողովրդական միտին-
գում արտասանած ճառում, նշելով, որ Անգլիայում և Ամերիկայում «...բան-
վորները կարող են իրենց նպատակին հասնել խաղաղ միջոցներով»* (К. Маркс,
Ф. Энгельс, Соч. т. 13, ч. II, стр. 669):

*Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գտնում էին, որ Անգլիայում և Ամերիկայում
ընդհանուր ընտրական իրավունքի նվաճմամբ պրոլետարիատը և գյուղա-
ցիությունը դաշնակցած հասարակության պրոգրեսիվ և դեմոկրատական մյուս
խավերի հետ, կարող են պառլամենտներում ճնշող մեծամասնություն ստա-
նալ և բուրժուական «լակեյական պառլամենտը» բուրժուազիայի դիկտատու-
րայի գործիքից խաղաղ ճանապարհով վերածել պրոլետարիատի դիկտատու-
րայի գործիքի՝ «ռևոլյուցիոն պառլամենտի»։*

*Մարքսիզմի հիմնադիրներն Անգլիայի և Ամերիկայի վերաբերյալ իրենց
արած դիտողություններում նկատի ունեին երկու կարևոր հանգամանք՝ այդ
երկրների համեմատաբար նվազ ռազմականացումը և պետական բյուրոկրա-
տական ապարատի թուլությունը։ Բացի դրանից, այդ երկրներում կային մի
շարք հանգամանքներ, որոնք հիմնավորում էին սոցիալիստական ռևոլյու-
ցիայի խաղաղ զարգացման հնարավորության գաղափարը։ Նախ, բացի պե-
տական բյուրոկրատական ապարատի նվազ ռազմականացումից, այդ երկու
երկրներում էլ պրոլետարիատը հասել էր բացառիկ կազմակերպվածության և
քաղաքական զարգացման։ Երկրորդ՝ պրոլետարիատը, հատկապես Անգլիա-
յում, կազմում էր բնակչության մեծագույն մասը։ Անգլիայում համարյա
գյուղացիություն չկար։ Գյուղացիները դարձել էին գյուղատնտեսական բան-
վորներ, ձեռք բերելով բավականին կազմակերպվածություն, իրենց դասակար-
գային խնդիրները գիտակցելու և առաջ քաշելու ունակություն։ Պատահական
չէ, որ դեռևս 1850 թվականին Ֆ. Էնգելսը գտնում էր, որ «...ընդհանուր ընտ-*

րական իրավունքը Անգլիայում, որի բնակչության երկու երրորդը արդյունաբերական պրոլետարներ են, նշանակում է, պրոլետարիատի քաղաքական բացարձակ գերիշխանություն» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 8, стр. 110)։ Այսպիսի իրադրության մեջ ընդհանուր ընտրական իրավունքի նվաճումը, առանց որևէ սահմանափակումների, պետք է միջոց հանդիսանար այդ երկրներում կապիտալիզմից սոցիալիզմին անցումն իրագործելու անարյուն ռևոլյուցիայի միջոցով։

Ընդհանուր ընտրական իրավունքի պահանջը անգլիական ու ամերիկյան բանվոր դասակարգի համար ծառայում էր որպես «ռազմական խորհրդանշան». դա ժողովրդական մասսաների պահանջն էր, որն իր բնույթով հակադիր էր մանրբուրժուական խաղաղ ռեֆորմիստական պահանջին։ Եվ, վերջապես, խաղաղ անցման հնարավորությունները այդ երկրներում պայմանավորվում էին քաղաքական ազատությունների առկայությամբ, ինչպես նաև անգլիական ու ամերիկյան կապիտալիստների տրադիցիա դարձած «...քաղաքական և տնտեսական հարցերը կոմպրոմիսով լուծելու երկարատև սովորությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 420)։ Քաղաքական իշխանության նըվաճումից հետո տնտեսության սոցիալիստական վերափոխումը նույնպես խաղաղ ճանապարհով կընթանար, քանի որ այդ երկրներում ետգնման, փոխհատուցման հնարավորությունները մեծ էին։

Փարիզի կոմունայի պարտությունից հետո, մոլեգնող ռեակցիայի պայմաններում, պայքարի լեգալ միջոցների օգտագործումը դարձավ առաջնահերթ խնդիր։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գտնում էին, որ պայքարի լեգալ միջոցների օգտագործումը պետք է գնահատվի որպես պրոլետարական ռևոլյուցիայի նախապատրաստման աստիճանը տրոշող «մանոմետր», «սեփական ուժերի հաշվառք»։ Բայց գերմանական բանվորական շարժումն այնպիսի հզոր թափ ստացավ, որ պայքարի լեգալ միջոցներն ավելի հարուստ բովանդակություն ձեռք բերեցին։ Գերմանիայում ընդհանուր ընտրական իրավունքը ազդու զենք դարձավ քաղաքական իշխանության համար մղվող պայքարում։ Ռայխստագի ընտրություններում գերմանական պրոլետարիատի ունեցած հաջողությունները այնքան ակնառու էին, որ բուրժուազիան և յունկերությունը բանվորական պարտիայի լեգալ գործունեությունից և ընտրություններում նրա ունեցած հաջողություններից սկսեցին ավելի շատ վախենալ, «քան ապստամբության հաջողություններից»։

Ելնելով Գերմանիայի տնտեսական ու քաղաքական զարգացման առանձնահատկություններից՝ Ֆ. Էնգելսը Մարքսի «Դասակարգային պայքարը Ֆրանսիայում 1848—1850 թ.» գրքի 1895 թվականին գրած ներածության մեջ հայտարարեց, որ համախմբված պարտիան երկուս ու կես միլիոն ձայն ունենալու դեպքում կարող է ստիպել գերմանական յունկերական կառավարությանը կապիտուլյացիայի ենթարկվելու։ Ֆ. Էնգելսի կողմից 90-ական թվականներին Գերմանիայում սոցիալական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորության գաղափարը շարադրված է ոչ միայն այդ ներածականում, այլև նրա մի շարք հոդվածներում ու նամակներում։ Սակայն պետք է նշել, որ նա այդ հնարավորությունը ընդունում էր որոշ վերապահումներով։ 1895 թվականի ապրիլի 3-ին Պոլ Լաֆարգին գրած նամակում քննադատելով սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հարցի օպորտունիստական խեղաթյուրումները, նա նշում էր. «...Այդ տակտիկան երաշխավորում եմ միայն



այսօրվա Գերմանիայի համար, այն էլ բավականին վերապահումով։ Ֆրանսիայի, Բելգիայի, Իտալիայի, Ավստրիայի նկատմամբ ամբողջապես կառչել այդ տակտիկայից չէր կարելի, իսկ Գերմանիայի համար նա արդեն վաղը կարող է անընդունելի լինել» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 29, стр. 406)։

Դեմոկրատական ազատությունների պայմաններում պրոլետարիատի ղեկավարությամբ ռևոլյուցիոն ու դեմոկրատական ուժերի ընդհանուր ճակատի ստեղծումն ընդդեմ բուրժուազիայի, սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման կարևորագույն պայմաններից է։ Էնգելսը գրել է. «...Հին հասարակությունը կարող էր խաղաղորեն վերաճել նորի այնպիսի երկրներում, որտեղ ժողովրդական ներկայացուցչությունն իր ձեռքում է կենտրոնացնում ամբողջ իշխանությունը, որտեղ կոնստիտուցիոն եղանակով կարելի է ամեն ինչ անել, ինչ որ ցանկանաս, եթե միայն քո հետևից ունես ժողովրդի մեծամասնությունը...» (ընդգծումը մերն է—Ս. Ֆ.), (К. Маркс, Ф. Энгельс, Соч. т. 16, часть II, стр. 108)։ Այսպիսով, սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը վերոհիշյալ երկրներում տեղի կունենար դեմոկրատական լայն հիմքերի վրա։ Էքսպրոպրիատորների էքսպրոպրիացան կիրագործվեր տևական պրոցեսում, ետգնման միջոցով։ Պրոլետարիատը հնարավորություն կունենար իր շուրջը համախմբել ոչ միայն չքավոր գյուղացիությանը, այլև քաղաքի ու գյուղի մանրբուրժուական խավերին։ Պրոլետարիատի դիկտատուրան՝ դասակարգային դաշինքի այդ հատուկ ձևը 1917 թվականին Ռուսաստանում, ինչպես ստորև կտեսնենք, նույնպես կհաստատվեր դեմոկրատական լայն հիմքի վրա, եթե սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացումն իրագործվեր։ Վ. Ի. Լենինի, բոլշևիկյան պարտիայի կոչը՝ համաձայնողականների ու բոլշևիկների միջև կոմպրոմիս կնքելու սոցիալիստական հեղաշրջումը խաղաղ ճանապարհով իրականացնելու համար, իր մեջ բովանդակում է այդ հարցադրման կոնկրետ ապացույցը։ Չէ՛ որ էսեռներն ու մենշևիկները հիմնականում ներկայացնում էին քաղաքի և գյուղի մանրբուրժուական խավերին։

Ժողովրդի մեծամասնության նվաճումը դեռևս բավական չէ, որպեսզի բուրժուազիան հրաժարվի բռնի ուժ գործադրելուց։ Դրա հետ մեկտեղ պրոլետարիատն իր դաշնակիցներով հանդերձ պետք է մաքսիմալ չափով զինված լինի։ Պրոլետարիատը, ինչպես վերը նշվեց, պետք է կարողանա քայքայել բուրժուազիայի զինված ուժերը՝ գցելով նրանց անօգնական վիճակի մեջ։ Մարքսը ճիշտ կերպով նկատել է, որ խաղաղ անցման ժամանակ ընտրական բյուլետենների հետևում պետք է թաքնված լինեն «սալարկի քարերը», անհրաժեշտության դեպքում գործողության մեջ դնելու համար։

***

Սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հարցի հետագա մշակումն ու բազմակողմանի զարգացումը կապված է Վ. Ի. Լենինի անվան հետ։ Վ. Ի. Լենինը դեռևս 1899 թվականին գրել է, որ «Բանվոր դասակարգը, իհարկե, կգերադասեր խաղաղորեն իր ձեռքը վերցնել իշխանությունը...» (Երկեր, հ. 4, էջ 348)։ Բայց նա կապիտալիզմից սոցիալիզմին խաղաղ անցման հնարավորության հարցն ավելի հանգամանորեն քննարկեց 1917 թվականին։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակից հետո Ռուսաստանում բացառիկ նպաստավոր պայմաններ էին ստեղծվել ռևոլյուցիայի առաջին էտապից անցավագին կերպով անցնելու նրա երկրորդ էտապին՝ սոցիալիստական ռևոլյուցիային։ Նախ՝ փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, օգտագործելով ստեղծված քաղաքական ազատությունները, բոլշևիկյան պարտիան հնարավորություն ստացավ դուրս գալու ընդհատակից. երկրորդ՝ երկիշխանության գոյությունը բուրժուազիային թույլ չէր տալիս բռնի ուժ գործադրել, քանի որ զենքը հիմնականում գտնվում էր ժողովրդի ձեռքին՝ հանձինս Սովետների։ Վ. Ի. Լենինն իրավացիորեն գրում էր. «Զենքը ժողովրդի ձեռքին (ընդգծումը մերն է — Ս. Ց.), ժողովրդի վրա գործադրվող արտաքին բռնության բացակայությունը,— ահա թե որն էր գործի էությունը։ Ահա թե ինչն էր բաց անում և ապահովում ամբողջ ռևոլյուցիայի դեպի առաջ զարգանալու խաղաղ ճանապարհը» (Երկեր, հ. 25, էջ 224)։ Երրորդ՝ պրոլետարիատը հենվում էր իր իսկ ստեղծած պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևը հանդիսացող կազմակերպությունների՝ Սովետների վրա, նա ռևոլյուցիոն պայքարի բովում ձեռք էր բերել բավականին կազմակերպվածություն ու քաղաքական պայքարի մեծ փորձ։ Չորրորդ՝ ռուսական ռևոլյուցիայի համար ստեղծվել էր բարենպաստ միջազգային իրադրություն։ Զբաղված լինելով իմպերիալիստական պատերազմով, բուրժուական երկրները ոչ ժամանակ և ոչ էլ ուժ ունեին միջամտելու ռուսական գործերին։ Եվ, վերջապես, որոշիչ նշանակություն ուներ այն հանգամանքը, որ ռուսական պրոլետարիատին ղեկավարում էր պայքարում կոփված բոլշևիկյան պարտիան, որը կարողացել էր պրոլետարիատին դաստիարակել մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, անհրաժեշտ ոգի մշակել ընդդեմ ամեն տեսակի օպորտունիստական դրսևորումների բանվորական շարժման մեջ։

Երկրի ներսում դասակարգային ուժերի կոնկրետ փոխհարաբերությունից և միջազգային նպաստավոր պայմաններից ելնելով, բոլշևիկյան պարտիան Վ. Ի. Լենինի անմիջական ցուցումներով վերանայեց Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման պրոլետարիատի պայքարի տակտիկան։ Դեռևս «Նամակներ հեռվից»-ում և «Ապրիլյան թեզիսներ»-ում Վ. Ի. Լենինը բացահայտեց, որ Ռուսաստանի ներկա պայմաններում հնարավոր է դարձել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի խաղաղ անցումը սոցիալիստական ռևոլյուցիայի։ Նա պարզորոշ կերպով նշում էր. «Աշխարհում միայն մեկ երկիր կկարողանա այժմ քայլեր անել դադարեցնելու իմպերիալիստական պատերազմը դասակարգային մասշտաբով, ընդդեմ կապիտալիստների, առանց արյունալի ռևոլյուցիայի, միայն մեկ երկիր, և այդ երկիրը Ռուսաստանն է» (Երկեր, հ. 25, էջ 15)։

Վ. Ի. Լենինի մշակած սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման տակտիկան հավանության արժանացավ 1917 թվականի ապրիլին գումարված ՌՍԴ(բ)Պ Պետրոգրադի կազմակերպության կոնֆերանսում, իսկ այնուհետև, իր հաստատումը գտավ ՌՍԴ(բ)Պ Համառուսաստանյան 7-րդ ապրիլյան կոնֆերանսի որոշումներում։ Պատերազմի վերաբերյալ բանաձևի նախագծում, ելնելով երկրի դասակարգային ուժերի հարաբերակցությունից, Վ. Ի. Լենինն ընդգծեց, որ «...աշխարհում ոչ մի տեղ չի կարող այդքան հեշտ և այդքան խաղաղ կերպով կատարվել ամբողջ պետական իշխանության անցումը ժողովրդի իսկական մեծամասնության, այսինքն՝ բանվորների և ամենա-



չքավոր գյուղացիների ձեռքը» (Երկեր, հ. 24, էջ 188—189)։ Այդ ժամանակաշրջանում «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը դարձավ սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման լոզունգ։

Այս նպաստավոր իրադրության մեջ բոլշևիկյան պարտիային մնում էր ամենից առաջ ժողովրդական մասսաներին կազմակերպել և նրանց ազատել համաձայնողական պարտիաների ազդեցությունից, որոնք կարողացել էին սովետներում մեծամասնություն նվաճել ու իրենց մանրբուրժուական պատրանքներով կաշկանդել ժողովրդական մասսաների գործունեությունը, նրանց ռևոլյուցիոն ձեռներեցությունը։ Դրա համար էլ տվյալ էտապում զարգացման շղթայի կարևորագույն օղակը համարվում էր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը։ Լենինը գրում էր. «Այդ թվում է «միայն» պրոպագանդիստական աշխատանք։ Իրականում այդ ամենագործնական ռևոլյուցիոն աշխատանքն է, որովհետև չի կարելի առաջ շարժել ռևոլյուցիան, որը կանգ է առել, ֆրազակոխ է եղել, «քայլում է կանգնած տեղում», ոչ թե արտաքին արգելքների, ոչ թե բուրժուազիայի կողմից գործադրված բռնության պատճառով (...), այլ մասսաների դյուրահավատ անգիտակցականության շնորհիվ» (Երկեր, հ. 24, էջ 57)։

Բոլշևիկյան պարտիան լենինյան դիրեկտիվներով զինված, ամբողջ ուժով լծվեց Սովետների բոլշևիկացման գործին, այն դիտելով որպես սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման կարևորագույն կովաններից մեկը։

Լենինը Ռուսաստանում խաղաղ ճանապարհով սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման տարբեր վարիանտներ էր կանխատեսում։ Նա հնարավոր էր համարում, որ ժամանակավոր բուրժուական կառավարության գոյության պայմաններում պրոլետարիատն առանց համաձայնողական պարտիաների հետ քաղաքական դաշինք ունենալու, կարող էր Սովետների վերընտրությամբ անցնել իշխանության գլուխ։ Դրա հետ մեկտեղ նա ընդունում էր և այն, որ համաձայնողականների կողմից բոլշևիկների աջակցությամբ քաղաքական իշխանության գրավումը նույնպես հնարավորություն կստեղծեր հետագայում Սովետների ներսում պարտիաների խաղաղ պայքարի միջոցով իշխանությունը հանձնել բոլշևիկյան պարտիային։ Լենինն այս վերջին հնարավորությունն առավել նպատակահարմար էր համարում, հատկապես կոռնիլովշչինայի ջախջախումից հետո։ Նա ընդունում էր, որ անգամ փետրվարյան ռևոլյուցիայի ժամանակ համաձայնողականները կարող էին քաղաքական իշխանությունը բուրժուազիայից ամբողջությամբ գրավել, որի շնորհիվ ռեալ պայմաններ կստեղծվեր ռևոլյուցիայի խաղաղ զարգացման համար։ Բայց բուրժուազիայի հետ էսեռ-մենշևիկյան պարտիաների կորստաբեր համագործակցությունը հնարավորություն չէր տալիս ստեղծելու բանվորական շարժման միասնություն՝ խաղաղ անցումն իրագործելու համար, դեռ ավելին, համաձայնողականների աջակցությամբ բուրժուազիան անցավ պայքարի բռնի եղանակների կիրառման, որն իր ցայտուն արտահայտությունը գտավ 1917 թվականի հուլիսյան սպանդի մեջ։

Բոլշևիկյան պարտիան հաշվի առնելով փոփոխված իրադրությունը, ՌՍԴ(բ)Պ VI համագումարում զինված ապստամբությամբ սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման կուրս ընդունեց։ Բայց կոռնիլովշչինայի ջախջախումից հետո դեպքերի անսպասելի ու կտրուկ շրջադարձն արմատապես

փոխեց դասակարգային ուժերի փոխհարաբերակցությունը։ Լենինը, բոլշևիկյան պարտիան ճիշտ գնահատելով փոփոխված իրադրությունը, գտան, որ կոռնիլովշչինայի ջախջախումից հետո սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման նոր հնարավորություններ են գոյացել։ Դա մարքսիզմը ստեղծագործաբար կիրառելու մի փայլուն օրինակ էր։ Ավելորդ արյունահեղությունից խույս տալու համար բոլշևիկները փորձեցին օգտագործել ռևոլյուցիայի անցավագին զարգացման այս հնարավորությունը ևս։ Լենինն իր մի շարք հոդվածներում ցույց է տվել, որ կոռնիլովշչինայի ջախջախմանը նախորդած առաջին երկու շաբաթվա ընթացքում համաձայնողական պարտիաները, բոլշևիկների հետ համագործակցելով, կարող էին քաղաքական իշխանությունն ամբողջությամբ իրենց ձեռքը վերցնել և, հակառակ իրենց կամքի, ապահովել ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ այդ ժամանակաշրջանում կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի դիմադրությունը քաղաքացիական պատերազմի չէր հասցնի։ «...որպեսզի դիմադրությունը քաղաքացիական պատերազմի հասնի,—գրում էր Վ. Ի. Լենինը,— դրա համար հարկավոր են գեթ որևէ մասսաներ, որոնք ընդունակ լինեին պատերազմելու և հաղթելու Սովետներին։ Իսկ այդպիսի մասսաներ բուրժուազիան չունի և ոչ մի տեղից վերցնել էլ չի կարող» (Երկեր, հ. 26, էջ 25)։

Բոլշևիկյան պարտիան, որի հետ համաձայնողականները կոռնիլովյան օրերին կոմպրոմիսի մեջ էին մտել, գտնում էր, որ այդ կոմպրոմիսը հնարավոր է տևական դարձնել սոցիալիստական ռևոլյուցիայի արմատական հարցերը լուծելու համար։ Լենինը, ելնելով փետրվարյան ռևոլյուցիայի և մասնավորապես կոռնիլովշչինայի ժամանակաշրջանի ռևոլյուցիոն պայքարի փորձից, իրավամբ, պնդում էր, որ տվյալ էտապում «բացառապես» բոլշևիկների և համաձայնողականների դաշինքն ընդդեմ բուրժուազիայի անհնարին կդարձներ քաղաքացիական պատերազմը Ռուսաստանում։ Բոլշևիկներից և համաձայնողականներից կազմված կառավարությունը կհանդիսանար պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն դեմոկրատական դիկտատուրան, պրոլետարիատի հեգեմոնիայի ապահովմամբ։

Բայց համաձայնողականները հրաժարվեցին բոլշևիկների հետ համագործակցելուց ու նորից բռնեցին կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի հետ «ոճրագործ համագործակցության» ուղին։ Բոլշևիկյան պարտիան, այնուամենայնիվ, փորձեց օգտագործել ռուսական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման վերջին «շանսը» ևս, որը կապված էր Սահմանադիր ժողովի գումարման հետ։ Բայց էսեռներն ու մենշևիկները հրաժարվեցին բոլշևիկների հետ միասնական գործողություններից և դրանով կրկին վիժեցրին ռևոլյուցիայի խաղաղ առաջխաղացումը։

Վ. Լենինը, դեռևս մինչև Սահմանադիր ժողովի գումարումը, մերկացնելով մենշևիկների և էսեռների դավաճանական վարքագիծը, նշում էր. «...Սովետները, որոնք ամբողջ իշխանությունը խաղաղ կերպով վերցնելու մի մոմենտ էլ (ընդգծումը մերն է — Ս. Ց.) ձեռքից բաց թողին Կոռնիլովի ապստամբության լիկվիդացիայի մոմենտին, այդ Սովետները հանցավոր են դառնում ոչ միայն համաձայնողականության մեջ, այլ արդեն ոճրագործ համաձայնողականության մեջ» (Երկեր, հ.25, էջ 402)։

Օգտվելով համաձայնողական պարտիաների պառակտողական քաղաքա-



կանությունից, կոնտրռևոլյուցիոն բուրժուազիան ի մի բերեց ռեակցիայի ուժերը և անցավ հարձակման։ Երկրում իրադրությունն արմատապես փոխվեց։

Փոփոխված իրադրության հանրագումարը տրվեց 1917 թվականի հոկտեմբերի 10-ին գումարված ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի պատմական նիստում։ Նիստում ընդունված բանաձևում, որը կազմված էր Լենինի անմիջական ցուցումներով, ասվում էր, որ ռուսական ռևոլյուցիայի ներքին ու միջազգային դրությունը պահանջում է անհապաղ զինված ապստամբությամբ տապալել կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի դիկտատուրան։ Դեպքերի հետագա ընթացքը հաստատեց Լենինի, բոլշևիկյան պարտիայի իրավացիությունը։ 1917 թվականի հոկտեմբերին մեր երկրում զինված ապստամբությամբ հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, մեկընդմիշտ տապալելով բուրժուազիայի կոնտրռևոլյուցիոն դիկտատուրան։

***

Հետպատերազմյան շրջանում միջազգային ասպարեզում տեղի ունեցած արմատական փոփոխությունների շնորհիվ մեծ տեղաշարժ կատարվեց իմպերիալիզմի և սոցիալիզմի ուժերի հարաբերակցության մեջ՝ հօգուտ սոցիալիզմի։ Այդ փոփոխությունների մեջ որոշիչ նշանակություն ունեցավ Հարավ-Արևելյան Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների մեկընդմիշտ անջատվելը իմպերիալիզմի ընդհանուր շղթայից։ Վերոհիշյալ երկրների մեծ մասում պրոլետարիատը հմտորեն օգտագործելով ստեղծված օբյեկտիվ նպաստավոր պայմանները, համեմատաբար խաղաղ ճանապարհով թոթափեց կապիտալի լուծը։ Արմատական այս փոփոխությունների շնորհիվ սոցիալիզմը դուրս եկավ մի երկրի շրջանակներից և դարձավ համաշխարհային սիստեմ։ Այժմ սոցիալիզմի լագերն անհնար է դարձնում իմպերիալիստական տերությունների երբեմնի անարգել գործունեությունը միջազգային կյանքի տարբեր ասպարեզներում։ Համաշխարհային իմպերիալիստական սիստեմը ստիպված է իր գործունեության ոլորտները սահմանափակել, իր ամեն մի քայլը հավասարակշռել ու հաշվի նստել համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետ։

Միջազգային դեպքերի զարգացումը այժմ կախված է ոչ միայն իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների կամքից։ Հզոր ուժ է դարձել համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումը։ Նախապատերազմյան շրջանի հետ համեմատած կոմունիստական ու բանվորական պարտիաների անդամների թիվը մեծացել է ութ անգամ, որոնք երկրների մի զգալի մասում դարձել են քաղաքական կյանքի զարգացման վճռական ուժը։ Պառլամենտական ընտրությունների ժամանակ Ֆրանսիական Կոմպարտիան ամեն անգամ միջին թվով ստանում է հինգ միլիոնից ավելի ձայն, Իտալական Կոմպարտիան՝ վեց միլիոն ձայն, Ինդոնեզիայի Կոմպարտիան՝ հինգ միլիոն ձայն և այլն։ Մեծ չափերի են հասել գործադուլներն ու մասսայական ցույցերը կապիտալի երկրներում։ Իմպերիալիզմի ընդհանուր ճգնաժամը խորացնող և դրա հետ մեկտեղ ժողովուրդների՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցման պրոցեսն արագացնող կարևոր գործոն է նաև իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը։

Միջազգային ասպարեզում, ինչպես նաև յուրաքանչյուր երկրի ներսում տեղի ունեցած արմատական փոփոխություններն անխուսափելիորեն պարտա-

դրրում են, որպեսզի կոմունիստական ու բանվորական պարտիաները ճշտեն դասակարգային պայքարի ստրատեգիական ու տակտիկական պլանները, ընտրեն պայքարի նոր ձևեր ու մեթոդներ։

Միջազգային ասպարեզում տեղի ունեցած այդ արմատական փոփոխությունների գիտական խոր վերլուծություն տրվեց ՍՄԿՊ XX համագումարում։ Համագումարը, ելնելով միջազգային ասպարեզում տեղի ունեցած արմատական փոփոխություններից, նշեց, որ արդի դարաշրջանում կապիտալիզմից սոցիալիզմին անցումը կապիտալիստական որոշ երկրներում հնարավոր է, որ տեղի ունենա նաև առանց քաղաքացիական պատերազմի ու զինված ապստամբության։ Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XX համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ արդի պայմաններում «...սոցիալիզմին անցնելու ձևերը ավելի ու ավելի բազմազան կդառնան։ Ընդսմին պարտադիր չէ, որ այդ ձևերի իրագործումը բոլոր պայմաններում կապված լինի քաղաքացիական պատերազմի հետ»։

Կապիտալիստական մի շարք երկրներում կոմունիստական և բանվորական պարտիաները ՍՄԿՊ XX համագումարի լույսի տակ գնահատելով միջազգային ասպարեզում դասակարգային ուժերի նպաստավոր փոխհարաբերակցությունը, նշեցին, որ պրոլետարիատը սոցիալիստական ռևոլյուցիան կարող է իրագործել նաև անցավագին եղանակով՝ բուրժուական պառլամենտը օգտագործելու միջոցով։ Ֆրանսիական կոմպարտիան 1956 թվականին իր XIV համագումարում ընդգծեց, որ պարտադիր չէ ֆրանսիական պրոլետարիատը դեպի սոցիալիզմ գնա անպայման զինված ապստամբության ու քաղաքացիական պատերազմի ուղիով։ Իտալիայում սոցիալիզմին խաղաղ անցման հնարավորության առկայությունը հավաստեց նաև Իտալական Կոմպարտիայի VIII համագումարը։ Նույնպիսի դիրքորոշում ընդունեցին նաև կապիտալիստական երկրների կոմունիստական ու բանվորական այլ պարտիաներ։

Եթե քննարկվող հարցին մոտենանք ապագայի տեսանկյունից, կտեսնենք, որ միջազգային ասպարեզում կապիտալիզմի և սոցիալիզմի ուժերի հարաբերակցությունը գնալով անխուսափելիորեն նոր փոփոխություններ կկրի հօգուտ սոցիալիզմի, որն էլ ավելի հավանական կդարձնի մի շարք երկրների կապիտալիզմից սոցիալիզմին խաղաղ անցումը։ Նման ենթադրության կարևորագույն հիմքը սոցիալիստական լագերի երկրների և ամենից առաջ ՍՍՌՄ հզորության բուռն աճն ու նրա հետագա զարգացման վիթխարի հեռանկարներն են, որոնք իրենց արտացոլումը գտան ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի կողմից ընդունված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում։ Յոթնամյա պլանի իրականացումն ունի միջազգային քաղաքական-պատմական հսկայական նշանակություն։ ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովն իրավամբ նշեց, որ յոթնամյա պլանի կատարումն այն աստիճան կմեծացնի ՍՍՌՄ տնտեսական պոտենցիալը, որ սոցիալիստական մյուս երկրների տնտեսական պոտենցիալի աճման հետ միասին միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության գործում կապահովվի վճռական գերակշռությունը հօգուտ սոցիալիզմի, որն է՛լ ավելի բարենպաստ պայմաններ կստեղծի պայքարելու հանուն սոցիալիզմի ու խաղաղության։ Սոցիալիզմի երկրների և հատկապես ՍՍՌՄ ժողովուրդների ձեռք բերած մեծ նվաճումներն էլ ավելի կընդլայնեն կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի մտահորիզոնը և պատկերացումները, որոնք ոչ միայն



ոգևորվում են այդ հաջողություններով, այլև ավելի մարտական են դառնում ընդդեմ սեփական բուրժուազիայի։

Սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորությունների առկայությունը, իհարկե, դեռևս չի նշանակում թե խաղաղ զարգացումը լիովին ապահովված է։ Այդ հնարավորության իրականության վերածելը մեծ չափով կախված կլինի բուրժուազիայի վարքագծից։ Պրոլետարիատը միշտ ձգտել ու ձգտում է սոցիալիստական ռևոլյուցիան իրականացնել համեմատաբար անցավագին-խաղաղ ճանապարհով, բայց այդ բանը միշտ չէ, որ նրան հաջողվում է, քանի որ բուրժուազիան սովորաբար դիմում է զինված պայքարի մեթոդին։ Այդ պատճառով էլ զինված ապստամբությունն ու քաղաքացիական պատերազմներն անտագոնիստական հասարակության մեջ միշտ եղել են դասակարգային պայքարի բնական, որոշ պայմաններում անխուսափելի շարունակությունն ու նրա հետագա զարգացումը։ Սակայն բուրժուազիայի իդեոլոգները և նրանց կամակատարներ աջ սոցիալիստական պարտիաների լիդերները, անտեսելով պրոլետարիատի կողմից որոշակի պայմաններում հարկադրաբար բռնության դիմելու անխուսափելիությունը, զրպարտել և զրպարտում են կոմունիստներին, որ իբր նրանք բոլոր պայմաններում, առանց բացառության, գերադասում են սոցիալական հեղաշրջման բռնի մեթոդները։ Դա, իհարկե, ամբողջովին հերյուրանք է կոմունիստների հասցեին, անհաջող փորձ՝ ստվերի տակ պահելու բուրժուազիայի կողմից սանձազերծվող զինված պայքարը՝ իր բոլոր դրսևորումներով։

Մարքսիզմ-լենինիզմը սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման հարցը չի կապում բացառապես պայքարի բռնի եղանակների հետ, ինչպես փորձում են պնդել ռեֆորմիստները ու ռևիզիոնիստները։ Մարքսիզմը ելնում է այն բանից, թե պրոլետարիատի վերջնական նպատակին հասնելու համար տվյալ իրադրության մեջ պայքարի ո՞ր ձևերն են ավելի նպատակահարմար։ Կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծություն—սա է պրոլետարիատի դասակարգային պայքարի տակտիկայի մշակման հիմնական սկզբունքը։ Ռևոլյուցիայի և ռեֆորմի միջև եղած տարբերությունը պետք է որոնել ոչ թե այն բանում, որ մի դեպքում բռնի ուժ է գործադրվում, իսկ մյուսում՝ ոչ, այլ քաղաքական իշխանության նկատմամբ ունեցած վերաբերմունքի մեջ։ Տվյալ հարցում օպորտունիզմի և ռևոլյուցիոնիզմի միջև եղած էական տարբերությունը հանգում է հին վերնաշենքի տապալմանը և պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճմանը՝ բռնի, թե խաղաղ միջոցներով, միևնույնն է։ Քաղաքական իշխանության հարցը այն ուղենիշ սյունն է, որն անջրպետում է ռևոլյուցիոնիստներին օպորտունիստներից։ ՍՄԿՊ XX համագումարում Ա. Ի. Միկոյանը իրավացիորեն հայտարարեց, որ «...ռևոլյուցիան խաղաղ թե ոչ խաղաղ, միշտ էլ ռևոլյուցիա կլինի, իսկ ռեֆորմիզմը միշտ կմնա որպես անպտուղ դոփում նույն տեղում» (Ա. Ի. Միկոյան, Ճառ ՍՄԿՊ XX համագումարում, 1956 թ., էջ 17)։ Այս հանգամանքն անտեսել նշանակում է չըմբռնել մարքսիզմի ստեղծագործական ոգին, նրա ողջ էությունը, նշանակում է աղավաղել ռևոլյուցիայի մարքս-լենինյան ուսմունքը, կանգնել դոգմատիզմի դիրքերում։

Ս. ՖՐԱՆԳՈՒԼՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԹՈՒՐՔԻԱՆ ԱՅՍՕՐ

Հետպատերազմյան իրադարձությունները ցույց են տալիս, որ Թուրքիան լծվել է իմպերիալիստների ագրեսիվ մարտակառքին, իր թե՛ արտաքին, թե՛ ներքին քաղաքականությունը ենթարկել է այդ պլաններին, թշնամական դիրք բռնելով սոցիալիստական երկրների նկատմամբ:

36 տարի առաջ ծնունդ առած թուրքական ռեսպուբլիկան Օսմանյան կայսրությունից խղճուկ ժառանգություն ստացավ: Թուրքիան այն ժամանակներում փաստորեն հանդիսանում էր խոշոր իմպերիալիստական տերությունների կիսագաղութը, հետամնաց գյուղատնտեսության երկիր, որը գտնվում էր ֆինանսական տեսակետից ծայրահեղ վատ վիճակում: Ժամանակակից Թուրքիան, ճիշտ է, բավական առաջ է անցել սուլթանական ժամանակների համեմատությամբ, կգալիորեն կարգացել են արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, բայց և այնպես չի լուծել ինդուստրացման խնդիրները և անցյալի նման մնում է որպես առավելապես ագրարային, տնտեսապես թույլ կարգացած երկիր: Ներկայումս արդյունաբերությանը բաժին է ընկնում ամբողջ ազգային արդյունքի մոտ 25 տոկոսը և «Եվրոպական տնտեսական համագործակցության» 16 երկրների արդյունաբերական արտադրանքի մեջ Թուրքիայի տեսակարար կշիռը մեկ տոկոսից էլ չի անցնում:

Պետական կապիտալիզմի՝ էթաթիզմի կարգացումը խրախուսելու քաղաքականությունը, որը Քեմալ Աթաթյուրքի ժամանակ երկրին վատ արդյունքներ չբերեց, հետպատերազմյան շրջանում ամբողջապես մի կողմ նետվեց: Երկրում աշխույժ գործունեություն ծավալեց օտարերկրյա կապիտալը, խոչընդոտելով հայրենական արդյունաբերության կարգացումը: Արդյունաբերության մեջ հիմնականում գերակշռում է սպառման առարկաների, հումքի (օգտակար հանածոներ) արտադրությունը, որը պարկորոշ կերպով ցույց է տալիս երկրի տնտեսության կախյալ վիճակը:

Ցեմենտի, երկաթի, պողպատի, նավթի, ինչպես նաև տեքստիլ ու շատ այլ ապրանքների արտադրությունը միայն մասնակիորեն է բավարարում երկրի ներքին պահանջմունքները: Առանձնապես ետ է մնում մեքենաշինության կարգացումը: Սեփական մեքենաշինական արդյունաբերությունը բավարարում է երկրի կարիքների միայն 5 տոկոսը, իսկ մետալուրգիան ամբողջ արդյունաբերության արտադրանքի մեջ բռնում է 3 տոկոսը:

Վերջին տարիներին պետական և մասնավոր կապիտալիստական սեկտորներում խիստ փոխվել է կապիտալների ներդրման հարաբերակցությունը: 1950 թվականից մինչև 1957 թվականը պետական կապիտալների ներդրումները 50 տոկոսից իջան 31 տոկոսի: Օտարերկրյա և, գլխավորապես, ամերիկյան մոնոպոլիաների ճնշման տակ, որոնք տարիներ շարունակ թուրքական կառավարությանն ստիպում են հրաժարվել էթաթիզմի քաղաքականությունից, Թուրքիայի կառավարությունը 1951 և 1954 թվականներին այնպիսի օրենքներ ընդունեց, որոնք խրախուսում են օտարերկրյա կապիտալների ներհոսումը և խթանում մասնավոր նախաձեռնությունը: Միաժամանակ պետական շատ ձեռնարկություններ հանձնվում են մասնավոր մարդկանց, ինչպես նաև պետական և մասնավոր կապիտալների մասնակցությամբ ստեղծվում են ակցիոներական խառն ընկերություններ: Մասնավոր նախաձեռնությունների խրախուսման համար ըստեղծվեց «Արդյունաբերական կարգացման բանկ», որն, ըստ էության, «Վերակառուցման ու կարգացման միջազգային բանկի» ֆիլիալն է, որտեղ իշխող դերը պատկանում է ամերիկյան կապիտալին:

Թուրքիայի գյուղատնտեսության մեջ շարունակում են տիրապետել ֆեոդալիզմի մնացուկները: Մի շարք վիլայեթներում գյուղատնտեսական արտահանվող կուլտուրաներ արտադրող շրջաններում արտադրական հարաբերությունները կարգանում են կապիտալիստական ուղիով: Մշակվող հողատարածությունների մեծ մասը պատկանում է կալվածատերերին և կուլակներին: Կալվածատերերի ձեռքին է գտնվում մշակվող հողերի մոտ կեսը: Գյուղական բնակչության ավելի քան 86 տոկոսը կազմող միջակ և չքավոր գյուղացիներին է պատկանում ամբողջ հողային ֆոնդի մեկ երրորդից էլ պակաս մասը: Բոլոր հողատարածությունների համարյա 20 տոկոսը, որ պատկանում է խոշոր կալվածատիրական տնտեսություններին,



մշակվում է սակավահող և հողազուրկ գյուղացիների ու բատրակների ուժերով:

Հողային ռեֆորմի մասին 1945 թվականին ընդունված օրենքը բոլորովին չշոշափեց կալվածատիրական հողատիրությունը և երկրում չլուծեց ագրարային հարցը: Այդ օրենքի մեջ հետագայում կատարված առանձին ուղղումներն է՛լ ավելի ամրապնդեցին խոշոր հողատերերի դիրքերը: Նույնիսկ այդ պռչատ օրենքի կիրառումը կյանքում հանդիպեց մեծ դժվարությունների: Երկու տարվա ընթացքում չբաշխվեց նույնիսկ մեկ դենյում (մոտ 0,1 հեկտար) հող: Հետագայում արևմտյան երկրներին և, մասնավորապես, ՆԱՏՕ-ի երկրներին (որոնք վալյուտա չունեն ԱՄՆ-ում գյուղատնտեսական մթերքներ գնելու համար) գյուղատնտեսական մթերքներ, հատկապես հացահատիկ, բամբակ և այլ տեսակի հումք մատակարարելու համար թուրքական կառավարությունը ձեռնամուխ եղավ այդ կիսատ-պռատ օրենքի իրականացմանը:




Թուրքական կառավարության այս արևմտյան դիրքորոշումը և հետպատերազմյան ժամանակաշրջանում ԱՄՆ-ի թափանցումը Թուրքիա, երկրի ներքին ու արտաքին քաղաքականությունը ենթարկեցին արևմտյան տերությունների իմպերիալիստական պլաններին: Ամերիկա-թուրքական բազմաթիվ համաձայնագրերը՝ «Տրումենի դոկտրինան» (ռազմական օգնություն), «Մարշալլի պլանը» (տնտեսական օգնություն, որը 1951 թվականին փոխարինվեց «Անվտանգության փոխադարձ ապահովման մասին օրենքով»), «Կուլտուրական համագործակցության մասին» համաձայնագիրը (1949 թ.) վերջապես Թուրքիայի ներգրավումը ՆԱՏՕ-ի մեջ (1952 թ.), Բաղդադի պակտը (1955 թ.), և ապա ՍԵՆՏՕ-ն և այլ ստրկացուցիչ պայմանագրեր երկիրը զրկեցին քաղաքական ու տնտեսական անկախությունից, նրա էկոնոմիկան ենթարկելով ռազմականացման ու սպառազինության մրցավազքի քաղաքականությանը:

Թուրքիայի տնտեսության վրա ամերիկյան իմպերիալիզմի ներգործությունն իրականացվում է Միացյալ Նահանգների կողմից նրան տնտեսական, տեխնիկական և ռազմական «օգնություն» ցույց տալու միջոցով:

Թուրքիայում ներդրված օտարերկրյա կապիտալների մեջ առաջին տեղը պատկանում է ԱՄՆ-ին: ԱՄՆ-ից ստացած ռազմական «օգնությամբ» Թուրքիան ստանում է տանկեր, թնդանոթներ, հրացաններ, ռեակտիվ ինքնաթիռներ, սուզանավեր, ռազմանավեր, ռազմամթերք ու հանդերձանք, կապի միջոցներ և այլն: 1958 թվականի սկզբին ԱՄՆ-ի տնտեսական «օգնությունը» Թուրքիային կազմում էր 938 միլիոն դոլլար: Թուրքիային տրամադրված ամերիկյան բոլոր տեսակի «օգնության» ձևով տրված հատկացումները 1958 թվականին կազմում էին մոտ 3 միլիարդ ամերիկյան դոլլար: Տնտեսական «օգնության» համաձայնագրերի քիչ թե շատ ուշադիր քննարկումը ցույց է տալիս, որ այդ հատկացումների կզալի մասը նույնպես օգտագործվում է ռազմական նպատակների համար:

Մեջլիսին պեկուցելով 1957—1958 թվականների բյուջեի նախագծի մասին, Թուրքիայի ֆինանսների մինիստր Պոլատկանանը հայտարարեց. «Եթե ուշադրությամբ քննարկենք մյուս գերատեսչությունների բյուջեները, ապա պարզ կլինի, որ ազգային պաշտպանության համար անհրաժեշտ հատկացումները չեն սահմանափակվում միայն 1054 միլիոն լիրայով (այսինքն՝ միայն ազգային պաշտպանության մինիստրության ծախքերով)»: Հաշվումները ցույց են տալիս, որ տնտեսական «օգնության» անվան տակ հատկացումների ավելի քան 40 տոկոսը նույնպես ծախսվում է ռազմական նպատակների համար:

Եթե ուշադրության առնենք այն, որ հետպատերազմյան տարիների (1947—1958) ընթացքում Թուրքիայի բյուջեից ուղղակի ռազմական նպատակների համար ծախսվել է մոտ 14 միլիարդ լիրա, ապա ստացվում է, որ ամերիկյան տնտեսական «օգնության» չափը այնպիսի ձևով, ինչպես ներկայացնում են ամերիկյան և թուրքական գործիչները, հինգ անգամ փոքր է Թուրքիայի պետական բյուջեով կատարված ռազմական ծախքերից: Չնայած այն ամբողջ օտարերկրյա «օգնությանը», որ Թուրքիան ստանում է ռազմական նպատակների համար, թուրքական կառավարությունը հարկադրված է ամեն տարի ավելացնել իր ռազմական բյուջեն: Թուրքիայի բանակի և պաշտպանության ծախքերը 1954/1955 թ. ֆինանսական տարում հատկացված 600 միլիոն լիրայի դիմաց 1959—1960 ֆինանսական տարում աճել և կազմում են 1 146,2 միլիոն թուրքական լիրա: Ռազմական ծախքերը կատարվում են ի հաշիվ երկրի էկոնոմիկայի հյուծման, նրա ֆինանսական քայքայման: Ռազմական ծախքերը ֆինանսավորելու և պետական բյուջեի պարտքերը փակելու նպատակին ուղղված արտաքին ու ներքին փոխառությունները հասցրին այն բանին, որ 1958 թվականի օգոստոսի վերջին Թուրքիայի ընդհանուր պետական պարտքը 64 տոկոսով գերազանցեց 1957 թվականի մակարդակը և կազմեց 7,3 միլիարդ դոլլար՝ երկրի 4,5 միլիարդ դոլլար բյուջեի դիմաց: Արագորեն աճում են նաև Թուրքիայի մյուս պարտքերը: Տնտեսությունը ռազմականացնելուն ուղղված Թուրքիայի քաղաքականությունը երկիրը կանգնեցրել է վալյուտային-ֆինանսական կցալի դժվարությունների առաջ: Թուրքական լիրայի արժեզրկումը և պարտքերը մարելու հնարավոր անկարողությունը հասցրին այն բանին, որ ԱՄՆ-ը և արևմտաեվրոպական այլ պետություններ դադարեցրին Թուրքիային նոր վարկեր տրամադրել:

Թուրքական կառավարության լիդերները 1958 թվականի ընթացքում շատ ակտիվ բանակցություններ էին վարում ԱՄՆ-ի, «Միջազգային վալյուտային ֆոնդի» և «Եվրոպական տնտեսական համագործակցության» կազմակերպության անդամ երկրների ներկայացուցիչների հետ՝ Թուրքիային նոր վարկեր տրամադրելու և հին պարտքերի վճարման ժամկետները երկարաձգելու շուրջը:

ԱՄՆ-ի և արևմտաեվրոպական երկրների ճնշման տակ թուրքական կառավարությունը հարկադրված եղավ 1958 թվականի օգոստոսի 4-ին մի շարք խոշոր փոփոխություններ անել նրանց, որոնք թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական ասպարեզում Թուրքիան դնում են ավելի ու ավելի կախյալ վիճակում: Անցկացվեց թուրքական լիրայի կուրսի փոփոխում, ըստ որի նրա արժեքն իջավ ավելի քան 3 անգամ, խիստ հսկողություն սահմանվեց վարկերի վրա և կիրառվեցին մի շարք այլ միջոցներ: Այդ փոփոխությունների գնով Թուրքիան 1958 թվականի վերջին ստացավ նոր վարկ՝ 359 միլիոն դոլլարի չափով, ընդ որում ԱՄՆ-ի «օգնությունը» կազմում է 234 միլիոն դոլլար, Եվրոպական տնտեսական համագործակցության կազմակերպության փոխառությունը՝ 100 միլիոն դոլլար, միջազգային վալյուտային ֆոնդի վարկը՝ 25 միլիոն դոլլար:

Սակայն այս վարկերը ևս, ինչպես և անցյալինը, ամենևին էլ չեն նպաստում Թուրքիայի տնտեսության ու ֆինանսական դրության կայունացմանը: ԱՄՆ-ը հրաժարվում են փոխառություն տալ ծանր արդյունաբերության զարգացման համար: Ամերիկյան«Նյու-Յորք թայմս» թերթը խոստովանել է, որ ԱՄՆ-ի նոր փոխառությունը «չի թեթևացնում այն դրությունը, որի մեջ գտնվում է երկրի բնակչությունը»: Շատ բնորոշ է, որ թուրքական կառավարությունը դա համարում է իր արտաքին քաղաքականության հաջողությունը: Այդ կապակցությամբ Ժողովրդա-ռեսպուբլիկական պարտիայի նախագահ, օպոզիցիայի լիդեր Իսմեթ Ինոնյուն նկատել է. «Եթե մենք նորից այդպիսի հաջողություն ձեռք բերենք, ապա մենք կզրկվենք որպես ազգ գոյություն ունենալու հնարավորությունից»:

Լինելով երկու ագրեսիվ ռազմական խմբավորումների՝ ՆԱՏՕ-ի (Հյուսիս-ատլանտյան պակտ) և ՍԵՆՏՕ-ի (Բաղդադի պակտ) անդամ, Թուրքիան մի շարք ռազմական պարտավորություններ է ստանձնել, որոնք նրանից ավելի շատ կոհողություններ են պահանջում: Ինչպես հայտնի է, համաձայնություն է կայացվել Թուրքիայի և ԱՄՆ-ի միջև Թուրքիայի տերիտորիայում ամերիկյան հրթիռային-միջուկային զենքի բազաներ կառուցելու վերաբերյալ: Թուրքիան դարձել է ԱՄՆ-ի հրթիռա-ատոմային գլխավոր բազան Մերձավոր և Միջին Արևելքի շրջանում: ՆԱՏՕ-ի պլաններով, թուրքական պաշտոնական տվյալների համաձայն, երկրում կառուցվում են տասնյակ նոր ռազմա-օդային և ռազմա-ծովային բազաներ և բազմաթիվ այլ ռազմական օբյեկտներ: Վերևում բերված քարտեզը ցույց է տալիս միայն հիմնական ռազմական բազաները: Ընդհանուր առմամբ Թուրքիայի տերիտորիայում ավելի քան 100 օդանավակայան և վայրէջքի հրապարակ կա: Իսկ Թուրքիայի բոլոր ինքնաթիռների համար 10 օդանավակայանից ավելի չի պահանջվի: Պարզ է, որ մնացած մասը հատկացվում է ամերիկյան ռազմաօդային ուժերին, որոնց գործողություններն ուղղված են Թուրքիայի խաղաղասեր հարևանների՝ ինչպես սոցիալիստական երկրների, այնպես էլ արաբական ժողովրդների դեմ: Թուրքական բազաները հենց վերջերս օգտագործվեցին արաբների ազգային-ազատագրական շարժման դեմ: Թուրքիան ամբողջապես կախման մեջ է ընկել Պենտագոնի ագրեսիվ պլաններից, վերածվել ռազմական պլացդարմի և դրանով իսկ լուրջ վտանգ ստեղծել խաղաղության գործի համար ամբողջ Մերձավոր Արևելքում:



Թուրքիայի պրեմիեր մինիստր Ադնան Մենդերեսը վերջերս այցելեց ԱՄՆ: Ինչպիսին էլ որ լինեին նրա այցի պաշտոնական նպատակները, մի բան պարզ է, որ այն «սառը պատերազմը» հրահրելու համար էր: ԱՄՆ-ում արտասանած իր յուրաքանչյուր ճառի մեջ Մենդերեսը հարձակումներ էր գործում ՍՍՌՄ-ի խաղաղասիրական քաղաքականության վրա և արդարացնում ագրեսիվ ռազմական բլոկների գործունեությունը: Մենդերեսը և նրա համախոհներն ամեն ինչ անում են թուրքական հասարակական կարծիքը համոզելու Թուրքիայի ռազմականացման քաղաքականությունը շարունակելու համար: Ամենուրեք նրանց միակ կոչն է՝ սպառազինվել և սպառազինվել: Թուրքական կառավարող ռազմամոլ շրջանների այս տենդենցն ավելի ցայտուն արտահայտվեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերի Թուրքիա կատարած այցելության ժամանակ, երբ նրանք հաշվի չառնելով համաշխարհային ասպարեզում խաղաղության օգտին կատարված մեծ տեղաշարժերը, կառչեցին «սառը պատերազմի» դիրքերից, շարունակելով խաղալ կրակի հետ: Թուրքական կառավարող շրջանների այդպիսի հակազգային քաղաքականությունը միայն վնասում է երկրի շահերին, սրում նրա ներքին դրությունը:

Պատահական չէ, որ վերջին տարիներս ավելի է վատացել թուրք աշխատավորների վիճակը: Շատ ապրանքներ, այդ թվում նաև մի շարք սննդամթերքներ, իսպառ վերացել են շուկաներից: Իջել է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, վատացել է բնակչության լայն խավերի նյութական դրությունը:

1958 թվականի հունիսին հայտարարվեց ածխի, թղթի և բամբակյա գործվածքեղենի, տրանսպորտի բոլոր տեսակների գների նոր, կզալի բարձրացման մասին: Մի քանի ապրանքների գները բարձրացան մեկ և կես, երկու անգամ: Եվ դա այն ժամանակ, երբ աշխատավարձը խիստ կերպով ետ է մնում գների աճից: Պաշտոնական տվյալների համաձայն, միայն 1958 թվականի երկրորդ կեսին շաքարի գինը բարձրացել է երկու անգամ, դեղորայքինը՝ երեք անգամ, թեյը թանկացել է 60 տոկոսով, ծխախոտը՝ 50, բենզինը՝ 63 տոկոսով: «Թուրքիան,— գրել է «Հուրիեթ» թերթը,— ապրուստի գների աճի տեսակետից ռեկորդ է խփել»: Եվ, իսկապես, եթե 1938 թվականին ապրուստի գների ինդեքսը ընդունենք 100, ապա 1958 թվականի մարտին այն արդեն կազմում էր 623:

Ոտնահարելով ազգային շահերը և երկիրը ենթարկելով ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանների քաղաքականությանը, թուրքական կառավարողները չնչին հատկացումներ են անում հատկապես առողջապահությանը: Եվ սա այն երկրում, ուր մոլեգնում են թոքախտը, մալարիան, տրախոման և շատ այլ հիվանդություններ: Բնակչության 60 տոկոսն անգրագետ է, իսկ 17 հազար գյուղ նույնիսկ տարրական դպրոցներ չունի: Թե ինչպիսի ուշադրություն է նվիրում կրթության գործին թուրքական կառավարությունը, երևում է այն բանից, որ, օրինակ, 1956/1957 ֆինանսական տարում դպրոցական շինարարության համար ծախսվել է ավելի փոքր գումար, քան արժե ամերիկյան «Բ—52» մեկ ռմբակոծիչը:

Վերջին ժամանակներս օպոզիցիոն քաղաքական պարտիաները և նրանց պարագլուխները հրապարակային ելույթներում ու մամուլում խիստ քննադատության են ենթարկում և դատապարտում Մենդերեսի կառավարության քաղաքականությունը, որը երկիրը հասցրել է այդպիսի ծանր դրության:

Աճում է դժգոհությունը Մենդերեսի կառավարության վարած տնտեսական քաղաքականությունից, հենց կառավարող՝ դեմոկրատական պարտիայի ներսում: Կառավարող պարտիայի և կառավարության ներսում եղած լարված վիճակի վկայությունն է այն, որ 1958 թվականի սեպտեմբերին Մենդերեսի կառավարության կազմից դուրս եկան և հրաժարական տվեցին չորս մինիստր:

Երկրի ռազմականացմանն ուղղված Թուրքիայի կառավարության արատավոր կուրսը ծանր բեռի նման ընկած է աշխատավոր ժողովրդի ուսերին: Աշխատավորությանը լրացուցիչ ֆինանսական շահագործման ենթարկելու մեթոդներից մեկը մասսայական հարկերն են, որոնք տարեցտարի ավելի մեծ չափով ուռճանում են: 1958 թվականի մարտին հարկերի գումարը հասավ ռեկորդային թվի՝ 444,8 միլիոն թուրքական լիրայի, որը 28 տոկոսով գերազանցում է 1957 թվականի մարտ ամսվա համապատասխան ցուցանիշը: Համեմատության համար արժե նշել, որ 1950 թվականին հարկերի գումարը կազմում էր 96,2 միլիոն լիրա:

Բանվորական արհմիությունների միավորման հայտարարության համաձայն, 1.400 հազար բանվորներ (երկրի բոլոր բանվորների մոտ 80 տոկոսը) ստանում են այնքան աշխատավարձ, որը երկու և կես, երեք անգամ պակաս է միջին ընտանիքի ապրուստի նվազագույն պահանջներից: Բանվոր դասակարգի աղքատացումն ուժեղանում է: Մեծ չափերի է հասել գյուղացիների հողազրկումը: Թանկության, առաջին անհրաժեշտության ապրանքների բացակայության և աշխատավորների կենսամակարդակի նվազման հետևանքով հնարավոր չէ բավարարել մարդկանց ամենատարրական պահանջմունքները: Մեծացել է գործազուրկների բանակը: Ոչ լրիվ տվյալներով, որ երևան են գալիս թուրքական մամուլում, երկրում գործազուրկների թիվը անցնում է մեկ միլիոնից: Թուրք բան-

վորներն աշխատում են անասելի ծանր պայմաններում: Չնայած այն բանին, որ ձևականորեն գոյություն ունի աշխատանքի մասին օրենք, բայց ձեռնարկատերերն իրենց հայեցողությամբ կիրառում են արտաժամյա աշխատանք: Թուրք բանվորի արձակուրդը չի վճարվում:

Աշխատավորության առանց այդ էլ ծանր դրությունն ավելի ու ավելի է խորանում երկրում գոյություն ունեցող բնակարանային ճգնաժամի հետևանքով: Ներքին գործերի մինիստրի հայտարարության համաձայն, երկրի միայն երեք խոշոր քաղաքներում՝ Ստամբուլում, Անկարայում և Իզմիրում 522 հազար մարդ ապրում է, այսպես կոչված, «գեջեքոնդ»-ներում (արկղներից կամ այլ իրերից պատրաստված հյուղակներ) : Անկարայում այդպիսի վիճակում ապրում է քաղաքի բնակչության համարյա կեսը:

Քաղաքական ամենատարրական ազատությունների բացակայության, երկրում հաստատված ոստիկանական ռեժիմի հետևանքով աշխատավորության պայքարը հանուն իրենց դրության բարելավման մղվում է ծայրահեղ դժվարին պայմաններում: Բայց, չնայած այդ ամենին, հաճախակի են դարձել բանվորների գործադուլները և հուզումները: Ճիշտ է, այդ գործադուլները տնտեսական պահանջներ են առաջադրում և զուրկ են քաղաքական սրությունից, բայց այդ երևույթներն էլ ինքնըստինքյան վկայում են՝ հակակառավարական պայքարի ուժեղացման մասին: Այդ պայքարի հետևանքն էր, որ 1957 թվականի մարտին կառավարությունը որոշ խոստումներ տվեց աշխատավարձի հարցերը կարգավորելու մասին: Բայց այդ խոստումները միայն խոստում էլ մնացին: Բացարձակապես ծանր վիճակում է թուրք գյուղացիությունը: Խոշոր կալվածատերերի ու կուլակների ձեռքում հողատարածությունների անընդհատ կենտրոնացման տենդենցը, որը հնարավորություն է տալիս գործադրել գյուղատնտեսական մեքենաներ, կրճատում է բանվորական ուժը և դուրս մղում վարձակալներին:

Գյուղացիության հիմնական զանգվածները շարունակում են աշխատել վաղուց հնացած գործիքներով: Գյուղացիների հոծ զանգվածը հարկադրված է հողը վարձակալությամբ վերցնել հողատերերից՝ բերքի զգալի մասը նրանց տալու պայմանով: Թուրք գյուղացուն կողոպտում են նաև վաշխառուները, որոնք օգտվում են այն դրությունից, որ գյուղատնտեսական բանկերը գլխավորապես վարկեր են բաց թողնում խոշոր տնտեսություններին: Մանր գյուղացիական տնտեսություններին մեծ վնաս են պատճառում քաղաքի և գյուղի միջև արտադրանքների ոչ համարժեքային փոխանակությունը և զանազան անուղղակի հարկերը: Գյուղատնտեսական մթերքների գնման գները շատ ցածր են: Մինչդեռ քաղաքներում ապրանքների գները, որպես կանոն, աճում են: Փոքր տնտեսություն ունեցող գյուղացին չի կարողանում ձեռք բերել նույնիսկ ամենաանհրաժեշտ ապրանքները: Դրա համար գյուղացիության գերակշռող մեծամասնությունը, ավարտելով դաշտային աշխատանքները, աշխատանք ու «բախտ» որոնելու նպատակով քաղաք է մեկնում: Հողազուրկ շատ գյուղացիներ գյուղից հեռանում են ընդմիշտ:

Գյուղացիների անընդհատ հոսանքը դեպի քաղաք սկսել է սպառնալից բնույթ կրել: Հատկապես շատ գաղթականներ են գալիս այնպիսի կենտրոններ, ինչպիսիք են՝ Ստամբուլը, Անկարան և Իզմիրը: Հանդիպելով հսկայական դժվարությունների և համապատասխան աշխատանք չգտնելով, գյուղացիները ձեռնամուխ են լինում ամեն մի գործի, միայն թե մի քիչ փող աշխատեն: Նրանք հիմնականում դառնում են բեռնակիրներ ու սևագործ բանվորներ: Շատ շատերին չի հաջողվում նույնիսկ այդպիսի աշխատանք գտնել և նրանք համալրում են առանց այդ էլ մեծ թիվ կազմող գործազուրկների բանակը:

Թուրքական թերթերում ավելի հաճախ կարելի է հանդիպել նմանօրինակ հաղորդումների. Արաֆլար գյուղում մի երիտասարդ մայր, հնարավորություն չունենալով կերակրել ընտանիքը, սպանել է իր երեք երեխաներին: «Ես որոշեցի սպանել իմ երեխաներին, որպեսզի նրանց ազատեմ սովամահությունից»,— հայտարարել է նա հարցաքննության ժամանակ:

Լճացում արդյունաբերության մի շարք ճյուղերում, ինֆլյացիա, արտաքին առևտրական հաշվեկշռի հսկայական դեֆիցիտ, գների կատաղի աճ. ժողովրդի աղքատացում՝ այսպիսին են թուրքական կառավարության ներկայիս կուրսի հետևանքները:

Թուրք ժողովուրդը պահանջում է հրաժարվել «սառը պատերազմի» և ռազմականացման քաղաքականությունից, որն ամբողջապես հակասում է իր ազգային անկախության շահերին:

Սովետական Միության հետ բարեկամական հարաբերությունների, սոցիալիստական լագերի բոլոր երկրների հետ տնտեսական կապերի ամրապնդումը վճռական դեր կխաղա Թուրքիայի տնտեսության զարգացման գործում: Վերջին ժամանակներս Թուրքիայում ողջամիտ շատ մարդիկ սկսում են ըմբռնել Սովետական Միության արտաքին քաղաքականության խաղաղասիրական բնույթը, ինչպես նաև տնտեսական տեսակետից թույլ զարգացած երկրներին ցույց տրվող անշահախնդիր օգնության նշանակությունը:

Դրա վառ օրինակն է թուրք հայտնի տնտեսագետ Էսադ Թեկելի՝ «Ամերիկայի ու Ռուսաստանի համեմատությունը օտարերկրյա օգնության հարցում» հոդվածը, որ հրապարակեց «Ջումհուրիեթ» թերթը 1958 թվականի փետրվարի 7-ին: Խոսելով ՍՍՌՄ-ի կողմից Արևելքի երկրներին հատկացված վարկերի մասին, հեղինակը դրանք համեմատում է «Վերակառուցման ու զարգացման միջազգային բանկի» վարկերի հետ և գրում է. «Ռուսների փոխառությունները բաց են թողնվում ամենանպաստավոր պայմաններով: Մյուս երկրների համեմատությամբ տոկոսը մեծ չէ՝ 2—2,5 տոկոս, այն ժամանակ, երբ Վերակառուցման ու զարգացման միջազգային բանկի տոկոսը հավասար է 4—4,5 տոկոսի: Բացի դրանից, փոխառություն տրամադրելով, ռուսները չեն միջամտում երկրի տնտեսական քաղաքականությանը»:

Վերջին ժամանակներս թուրքական գործարար շրջանները մեծ հետաքրքրություն են ցուցաբերում Սովետական Միության հետ տնտեսական կապեր հաստատելու նկատմամբ: Այս կապակցությամբ, օրինակ, կարելի է հիշատակել Թուրքիայի «Գործարար բանկի» պատվիրակության այցելությունը Մոսկվա, երբ համաձայնություն կայացվեց Համամիութենական «Տեխնոէքսպորտ» միավորման հետ՝ ապակու գործարանի նախագծման, սարքավորումների մատակարարման ու մոնտաժի վերաբերյալ: Բացի այդ, համաձայնագիր կնքվեց 70 հազար տոննա կարողությամբ սոդայի գործարան կառուցելու վերաբերյալ:

Սակայն, Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ Թուրքիայի ունեցած արտաքին տնտեսական կապերը դեռևս աննշան են: Իսկ այդպիսի կապերի ընդլայնումը միայն կնպաստի Թուրքիայի էկոնոմիկայի անկախ զարգացմանը:

Թուրքիայի արտաքին քաղաքականության այժմյան կուրսի փոփոխությունը, պատերազմի պատրաստության քաղաքականությունից հրաժարվելը. երբ Սովետական Միության կողմից ոչ մի վտանգ չի սպառնում Թուրքիային, հուսալի հիմք կծառայեին այդ երկրների հետ բարեկամական հարաբերությունների վերականգնման ու զարգացման համար: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա միշտ էլ ցանկացել է բարեկամական, բարի դրացիական հարաբերություններ պահպանել Թուրքիայի հետ: ՍՍՌՄ Գերագույն Սովետի III սեսիայում Սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը նորից հայտարարեց, որ «Մենք անկեղծորեն ուզում ենք, որ մեր հարաբերությունները կառուցվեն բարեկամության և համագործակցության ոգով, որոնք բնորոշ էին համեմատաբար մոտ անցյալի համար, երբ Թուրքիայի քաղաքականությունը վճռում էր այնպիսի ականավոր գործիչ, ինչպիսին էր Քեմալ Աթաթյուրքը»:

Միջազգային լարվածության մեղմացումը, որը հետևանք է Սովետական Միության հետևողական խաղաղասիրական քաղաքականության, չի կարող իր ազդեցությունը չունենալ նաև «սառը պատերազմի» թուրքական պաշտպանների վրա: Ժողովրդական առածն ասում է՝ ով թքում է քամուն հակառակ, նա թքում է իր երեսին: Համաշխարհային հասարակայնությունը դատապարտում է բոլոր նրանց, ովքեր շարունակում են կառչել հին դիրքերից, կուրորեն չնկատել այն մեծ տեղաշարժերը, որ կատարվել են աշխարհում համընդհանուր խաղաղություն հաստատելու և պատերազմի վտանգը կանխելու գործում:

Ա. ԵՆԳԻԲԱՐՈՎ

մացծի մեծության չափի, որի ժամանակ աստղի ձգողության ուժի ազդեցության տակ խախտվել է Արեգակի հավասարակշռությունը և առաջացած մակընթացային ալիքն այնքան հզոր է եղել, որ Արեգակից շիթի ձևով դուրս է շպրտվել հսկայական քանակությամբ արեգակնային նյութ։ Սակայն աստղի հեռավորության մեծացման հետ աստիճանաբար փոխադարձ ձգողական ուժը փոքրացել է և շիթի արտանետումը, ինչպես նաև նրա շարժումը դեպի աստղ դադարել է։ Դրա փոխարեն այդ շիթը սկսել է պտտվել Արեգակի շուրջը։ Հետագայում շիթը բաժանվել է առանձին մասերի, որոնցից էլ իբր կազմվել են մոլորակները։ Արբանյակների առաջացումը նույնպես Ջինսը բացատրում է նույն ձևով, ինչպես մոլորակներինը։ Այս անգամ Արեգակը խաղացել է մոտեցող աստղի դեր, իսկ մոլորակները՝ Արեգակի։ Մոլորակներից անջատված շիթերը պտտվել են նրանց շուրջը, որոնցից հետագայում և ձևավորվել են արբանյակները։ Քանի որ շիթը պետք է իլիկաձև լիներ, այսինքն՝ կենտրոնական մասերում ավելի հաստ քան ծայրերում, ուստի և Արեգակին մոտ և հեռու մասերում պետք է առաջանային համեմատաբար փոքր չափի ու զանգվածների մոլորակներ, իսկ միջին հեռավորության մոլորակները, ընդհակառակը՝ պետք է լինեին մեծ չափի ու մասսիվ. մի հատկություն, որը իրականում նկատվում է մոլորակային ընտանիքում։ Բացի դրանից Ջինսի հիպոթեզը կարծես բացատրում էր նաև մեծ մոլորակների ուղեծրային շարժումներում գոյություն ունեցող մեծ պտտման մոմենտների առկայությունը։

Աստղերի փոխադարձ հեռավորությունը նրանց չափերի համեմատությամբ բավականին մեծ է։ Այսպես, օրինակ, եթե աստղերը և միջաստղային տարածությունը պատկերացնենք այնքան անգամ փոքրացված, որ աստղերն ունենան կորեկի հատիկի մեծություն, ապա Անդրկովկասի տերիտորիայի չափ տարածությունում կգտնվեն ընդամենը 3—4 այդպիսի հատիկներ։ Եթե սրան ավելացնենք նաև այն, որ աստղային սիստեմում երկնային մարմիններից յուրաքանչյուրը շարժվում է իր որոշակի ուղեծրով, ապա պարզ կլինի, որ աստղերի հանդիպման հավանականությունը միանգամայն փոքր կլինի՝ մեկ տասը միլիարդերորդականից էլ փոքր։ Ստացվում է, որ աստղերի նման մերձեցումները հազվագյուտ երևույթ են։ Այստեղից էլ հետևություն, որ մեր մոլորակային համակարգությունը միլիարդավոր աստղերի ընտանիքում բացառություն է կազմում, իսկ դրանից էլ բխում է այն հակագիտական հետևությունը, որ մեր Երկիրը միակն է, ու միայն նրա վրա կյանք կա։ Ահա թե ինչու Ջինսի հիպոթեզը մեծ ոգևորությամբ ընդունվեց բոլոր երանգի իդեալիստների ու հոգևորականության կողմից։

Սակայն շուտով այդ հիպոթեզը կասկածանքի տակ առնվեց և բազմաթիվ տեսական ու գիտողական տվյալներ սուր հակասության մեջ մտան նրա հետ։ Իսկ սովետական աստղագետ Ն. Պարիյսկու մանրամասն հետազոտություններն այդ ուղղությամբ ամբողջովին հերքեցին նման ձևով մոլորակային համակարգության առաջացման հնարավորությունը։ Ջինսի հիպոթեզից հետո արտասահմանյան գիտնականների կողմից մի շարք նոր հիպոթեզներ առաջադրվեցին, սակայն նրանք բոլորն էլ բազմաթիվ թերություններ ունեին, որոնց պատճառով մեկը մյուսի հետևից կարճ ժամանակամիջոցում շարքից դուրս եկան։ Այդ գիտնականների մի մասն էլ դրանից այն հետևությունն արեց, որ արդի գիտության զարգացման աստիճանը կոսմոգոնիկ հարցեր լուծելու հնարավորություն չունի։

Սովետական գիտնականները, ընդհակառակը, գտնում են, որ անճանաչելի ոչինչ չկա, որ գիտության արդի վիճակը հնարավորություն է տալիս լուծելու կոսմոգոնիկ բազմաթիվ հարցեր։

1943 թվականին սովետական գիտնական Օ. Շմիդտն առաջարկեց մոլորակային համակարգության առաջացման նոր հիպոթեզ, ըստ որի մի ժամանակ մեր Արեգակը եղել է միայնակ աստղ և իր շարժման ընթացքում հանդիպել է Գալակտիկայում գոյություն ունեցող բազմաթիվ ամպերից մեկին և իր ձգողական ուժով այն մասամբ գերել։ Այդ ամպը սկսել է պտտվել Արեգակի շուրջը, ընդունել սկավառակի ձև, իսկ հետագայում՝ ինչպես ձգողական, այնպես էլ վանողական ուժերի շնորհիվ առանձին մասերում տվել խտացումներ, որոնցից և առաջացել են մոլորակներն ու արբանյակները, ինչպես և գիսավոր աստղերն ու մետեորները։ Շմիդտի և նրա ղեկավարած գիտնականների կոլեկտիվի մշակած մաթեմատիկական ապարատը հնարավորություն տվեց բացատրելու մեր մոլորակային համակարգության մի շարք առանձնահատկություններ. այն է՝ մոլորակների ուղեծիրների փոքր սեղմվածությունը, Արեգակի և մոլորակների իրենց առանցքի շուրջ կատարած պտույտը, արբանյակների ոչ միայն ուղիղ, այլև հակադարձ շարժումները։ Բացատրվում էր նաև մոլորակների շարժման քանակի մոմենտները (զանգվածի, արագության և հեռավորության արտադրյալը)։ Հետաքրքրական եզրակացություններ էին արվում նաև երկրագնդի մասին։ Ենթադրվում էր, որ այն սկզբում եղել է սառած վիճակում, իսկ այնուհետև ռադիոակտիվ նյութերի շնորհիվ նրա ջերմաստիճանը ստորին շերտերում սկսել է բարձրանալ և հասել է մինչև հազարավոր աստիճանների, որի հետևանքով կենտրոնա-



կան մասերը հալվել են, ծանր նյութերը տեղափոխվել Երկրի կենտրոնական մասերը, իսկ համեմատաբար թեթև էլեմենտները մոտեցել են մոլորակի մակերևույթին։ Երկրի հասակն այդ հիպոթեզի համաձայն հավասար է 7 միլիարդ տարվա։

Չնայած նախորդ հիպոթեզների նկատմամբ ունեցած մի շարք առավելությունների, Շմիդտի հիպոթեզը նույնպես թերություններ ունի։ Դրանցից է այն, որ ամպի գերման մեխանիզմը միանգամայն անհամոզեցուցիչ է և փաստորեն չրացահայտված։ Չի բացատրված նաև արեգակնային համակարգությունում մոլորակների ուղեծիրների գոյություն ունեցող բաշխվածությունը։

Այսպիսով, մոլորակների համակարգության առաջացման ու զարգացման պրոբլեմը դեռևս հետագա ուսումնասիրության կարիք ունի։

Թեկուզ այն փաստը, որ մեր համակարգության կենտրոնական մարմինը՝ Արեգակն ինքը աստղ է, որի ձգողության ազդեցության տակ պտտվում են համակարգության մյուս մարմինները, ասում է այն մասին, որ աստղային ու մոլորակային սիստեմների առաջացման ու զարգացման պրոբլեմները իրար հետ սերտ կերպով պետք է կապված լինեն։ Ըստ երևույթին մոլորակային համակարգության առաջացման մինչև այժմ գոյություն ունեցած հիպոթեզների հեղինակների հիմնական թերություններից մեկը պետք է համարել այն, որ նրանք բոլորն էլ այդ երկու պրոբլեմները ցանկացել են ուսումնասիրել իրարից անկախ։ Ժամանակակից բուրժուական շատ աստղագետներ զանազան մտացածին մոդելներ հնարելով և զանց առնելով աստղագիտության բազմաթիվ նվաճումները, աստղային կոսմոգոնիայի մեջ իրենց առաջադրած հիպոթեզներով փաստորեն հարում են իդեալիստական մոդայական որևէ հոսանքի։

Աստղային կոսմոգոնիայի բնագավառում եղած լուրջ հետազոտությունների ճնշող մեծամասնությունը պատկանում է սովետական գիտնականներին։

Ինչպես հայտնի է, աստղերը տիեզերքում կազմում են խոշոր աստղային սիստեմներ։ Դրանցից է մեր Գալակտիկան (Ծիր Կաթինը), որի չափերն այնքան մեծ են, որ նրա մի ծայրից մյուսը լույսի ճառագայթը կանցնի միայն 80 հազար տարվա ընթացքում։ Մեր Գալակտիկան, որի մեջ մտնում է նաև Արեգակը, ընդգրկում է տասնյակ միլիարդավոր աստղեր, աստղակույտեր, միգամածություններ։ Բացի աստղակույտերից, որոնք բավականին մեծ աստղային խտություն ունեն, աստղային այլ խմբավորումներ անմիջական դիտումներով հնարավոր չէ հայտնաբերել։ Սակայն, երբ ուսումնասիրում ենք աստղերի բաշխվածությունը ըստ նրանց առանձին տիպերի (սպեկտրալ դասերի), ապա որոշակիորեն աչքի է ընկնում, որ աստղերի որոշ տիպեր կազմում են առանձին խմբավորումներ։ Սովետական ականավոր աստրոֆիզիկոս Վ. Համբարձումյանն առաջինը ցույց տվեց, որ աստղերի նման խմբավորումները հնարավոր չէ բացատրել տվյալ տիպի աստղերի պատահական կուտակումներով, այլ այստեղ գործ ունենք որոշակի սիստեմների հետ։ Այդ նոր սիստեմներն անվանվեցին աստղասփյուռներ։ Աստղասփյուռի խտությունը շատ ավելի փոքր է, քան այն դաշտի աստղային խտությունը, որն անմիջականորեն շրջապատում է այդ սիստեմը։ Այդ է պատճառը, որ մեր Գալակտիկայում հնարավոր չի լինում աստղասփյուռներ նշմարել։ Աստղասփյուռները հիմնականում լինում են երկու տիպի։ Առաջին տիպի աստղասփյուռների մեջ մըտնում են պայծառ գերհսկա աստղերը (O և B դասերի աստղեր)։ Երկրորդ տիպում համեմատաբար թույլ բացարձակ պայծառություն ունեցող փոփոխական աստղեր են (T — Ցուլի տիպի)։ Թե՛ մեկ և թե՛ մյուս տիպերի աստղասփյուռների տրամագիծը հասնում է մի քանի տասնյակ պարսեկի (մեկ պարսեկը հավասար է 31 տրիլիոն կիլոմետրի) և այդ հսկայական տարածության վրա ընդամենը մի քանի տասնյակ, իսկ երբեմն էլ մի քանի հատ աստղեր կան։ Ըստ աստղային դինամիկայի հայտնի սկզբունքների, չափազանց փոքր աստղային խտություն ունենալու շնորհիվ աստղասփյուռները կայուն սիստեմներ համարվել չեն կարող։ Գալակտիկայի քայքայող ուժերի ազդեցության տակ նրանց անդամները իրարից պետք է հեռանան և խառնվեն աստղային դաշտի մյուս աստղերին։ Մյուս կողմից, աստղասփյուռներում մենք գործ ունենք այնպիսի աստղերի հետ, որոնցից անընդհատ մատերիա է հոսում։ Սրան ավելացնելով նաև այն, որ աստղասփյուռների աստղերը համեմատաբար մեծ զանգվածներ ունեն, կարելի է եզրակացնել, որ աստղասփյուռներում մենք գործ ունենք համեմատաբար երիտասարդ աստղերի հետ։

Աստղասփյուռներ հանդիպում են գլխավորապես Գալակտիկայի հարթությունից ոչ հեռու։ Դա նշանակում է, որ Գալակտիկայի քայքայող ուժերի ազդեցության տակ ժամանակի ընթացքում աստղասփյուռը պետք է ստանա սեղմված ձև։ Այնինչ բնականում այդպես չէ։ Նշանակում է աստղասփյուռներում կա նաև մի այլ ուժ, որի շնորհիվ նրանց անդամները դուրս են շպրտվում տարբեր ուղղություններով։ Վ. Համբարձումյանի հաշվումները ցույց են տալիս, որ այդ ուժի շնորհիվ աստղերը պետք է ստանան վայրկյանում մեկ կիլոմետրից ոչ պակաս և 10 կիլոմետրից ոչ ավելի արագություններ։ Բացի այդ,

հաշվել են, որ առաջին տիպի աստղասփյուռի հասակի վերին սահմանը 10—20 միլիոն տարի է, իսկ երկրորդինը՝ 2—3 միլիոն տարի։

Բայց չէ՞ որ Գալակտիկայի հասակը չափվում է մի քանի միլիարդ տարիներով։ Այսպիսով, աստղասփյուռներում մենք գործ ունենք այնպիսի աստղերի հետ, որոնք շատ ավելի երիտասարդ են, քան Գալակտիկայի աստղերի գերակշռող մեծամասնությունը։ Մյուս կողմից ակնհայտ է, որ Գալակտիկայի կյանքի ընթացքում գոյացել են և ցրվել տասնյակ միլիոնավոր աստղասփյուռներ, այսինքն՝ միայն այդ միջոցով գոյացել են միլիոնավոր աստղեր։ Ստացվում է, որ աստղերի առաջացման պրոցեսը ներկայումս էլ, այն էլ խմբերով, շարունակվում է մեր Գալակտիկայում:

Այսպիսով, աստղասփյուռների հայտնաբերումը և նրանց ուսումնասիրությունը մեկընդմիշտ խորտակեց արևմտյան մի շարք հեղինակների (Լեմետրի, Էդդինգտոն, Էպիկ և այլն) իդեալիստական տեսակետներն այն մասին, թե իբր բոլոր գալակտիկաները և նրանց մեջ գտնվող աստղերը ծագել են միաժամանակ՝ սրանից մի քանի միլիարդ տարի առաջ և որ նրանք իբր իրենց կյանքի ընթացքում չեն փոխվում և ծնվել են այնպես, ինչպես նրանց տեսնում ենք։

«Ամբողջ բնությունը,— ասում է Էնգելսը,— սկսած նրա մանրագույն մասնիկներից մինչև մեծագույն մարմինները, սկսած ավազահատիկից և վերջացրած արևով, սկսած պրոտիստից և վերջացրած մարդով, գտնվում է հավերժական ծագման ու ոչնչացման մեջ, անընդհատ հոսանքի մեջ, անդադար շարժման ու փոփոխման մեջ»։

Այն ամենը, ինչ շրջապատում է մեզ, սկսած էլեկտրոններից ու ատոմներից և վերջացրած աստղերով ու աստղային հսկա սիստեմներով, կազմում է տիեզերքը։ Տիեզերքն անսահման է. դա պետք է հասկանալ այսպես. տիեզերքում չկա մի մարմին, որքան էլ այն հեռու գտնվի, որ նրանից «այն կողմ» (ավելի հեռու) այլևս մարմիններ չլինեն։ Որտեղ էլ որ գտնվելիս լինի այս կամ այն մարմինը, նրա բոլոր ուղղություններում գոյություն ունեն անվերջ քանակությամբ տիեզերական մարմիններ։ Սակայն տիեզերքն անսահման է ո՛չ միայն տարածության, այլև ժամանակի մեջ։ Տիեզերքն ինքը ամբողջությամբ վերցրած մշտնջենական է. նրա համար ոչ սկիզբ է եղել և ոչ էլ վախճան կլինի։ Այլ է նրա առանձին մասերի վիճակը։ Մոլորակները (նրանց վրա գտնվող մարմիններով հանդերձ) արբանյակները, աստղերը, աստղային սիստեմները ծնվում, աճում, զարգանում և ապա մահանում են։ Սակայն այն մատերիան, որից նրանք կազմված են, չի կորչում, այլ ընդունում է այլ ձևեր։

Գալակտիկային և, մասնավորապես, աստղասփյուռներին վերաբերող մի շարք հարցեր առայժմ մութ են և չեն մշակվել։ Այդպիսիններից են, օրինակ, գոյության ի՞նչ ձևում է գտնվում այն նյութը, որից հետագայում առաջանում են աստղերը. ինչպե՞ս է ընթանում աստղերի զարգացումը նրանց անմիջական գոյացումից հետո. ի՞նչ դեր են խաղում միգամածությունները աստղառաջացման պրոցեսում և այլն։ Սակայն ժամանակի ընթացքում հետզհետե զարգանալով, կասկած չկա, որ գիտությունը մեկը մյուսի հետևից կբացահայտի նորանոր երևույթներ։ Վերջին տարիներում աստղագիտության մեջ նոր նվաճումներ են կատարվել։ Կատարելագործվել են դիտողական տեխնիկան ու երևույթների ուսումնասիրման մեթոդները։ Մասնավորապես բավականին հետաքրքրական տեղեկություններ են ստացվել ռադիոաստղագիտության բնագավառում, որը ուսումնասիրում է երկնային կազմավորումներից ստացված ռադիոառաքումները։ Սկսած 1957 թվականից (հոկտեմբերի 4-ից), այսինքն՝ սովետական առաջին արհեստական արբանյակի արձակումից, տիեզերքի ուսումնասիրությունը է՛լ ավելի ուժեղ թափ ստացավ։ Արհեստական արբանյակների ու տիեզերական հրթիռների միջոցով ուսումնասիրվում է մեր մթնոլորտի վերին շերտերի կառուցվածքը, Երկրի ճշգրիտ ձևն ու նրա մագնիսականությունը, միջմոլորակային տարածությունում կատարվող զանազան երևույթներ, տիեզերական տարածությունից մեզ մոտ թափանցող կոսմիկական ճառագայթներ, երկնաքարեր և այլն։ Վերջապես հնարավոր եղավ ոչ միայն անմիջականորեն թափանցել միջմոլորակային տարածություն, այլև կատարել Լուսնի այն մասի անմիջական լուսանկարումը, որը մինչև այժմ իր ամբողջ պատմության ընթացքում մարդը հնարավորություն չէր ունեցել տեսնելու։ Երկրի մագնիսական դաշտի առաջացման պրոբլեմի լուծմանն անկասկած կնպաստի նաև այն, որ տիեզերական հրթիռները ցույց տվեցին, որ Լուսինը թեև պտտվում է իր առանցքի շուրջը, բայց մագնիսական դաշտ չունի։ Միջմոլորակային ճանապարհորդությունների հարցը դարձել է առօրյա խնդիր։ Անկասկած այս բոլորը նոր և հզոր լույս են սփռում երկնային մարմինների ծագման ու առաջացման հարցերի վրա։

Բ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Դոցենտ, ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Հայ տնտեսագիտական մտքի պատմության հարցերի ուսումնասիրությունը սկսվել է միայն Սովետական իշխանության տարիներին։ Նախապատերազմյան շրջանում արդեն բավականին աշխատանք էր կատարված, մասնավորապես, Միքայել Նալբանդյանի տնտեսագիտական հայացքներն ուսումնասիրելու ուղղությամբ։ Հետպատերազմյան տարիներին հայ հասարակական մտքի և, մասնավորապես, հայ տնտեսագիտական մտքի 19-րդ դարի պատմության հարցերը լուրջ ուսումնասիրության ենթարկվեցին տնտեսագետների, պատմաբանների և փիլիսոփաների կողմից։ Որպես այդ ուսումնասիրությունների արդյունք, 1955 թվականին Մոսկվայում լույս տեսավ Խ. Գուլանյանի «Очерки истории армянской экономической мысли XIX века» աշխատությունը, ապա Երևանում հրատարակվեցին՝ Վ. Ռշտունու «Հայ հասարակական հոսանքների պատմությունից» (1956 թ.), Գ. Հ. Գրիգորյանի «Հայ առաջավոր հասարակական-քաղաքական մտքի պատմությունից» (1957 թ.) աշխատությունները. 1959 թվականին լույս տեսավ Խ. Գուլանյանի «Ուրվագծեր հայ տնտեսագիտական մտքի պատմության (XVIII դարի վերջերից մինչև XIX դարի 90-ական թվականները)» աշխատությունը, որը հեղինակի գրքի ռուսերենի վերամշակված վարիանտն է և ապա՝ գրախոսվող մենագրությունը *։

Պրոֆեսոր Ս. Զուրաբյանի աշխատությունը կազմված է երեք հատվածներում ամփոփված 15 գլուխներից։ Բուն նյութի շարադրանքին նախորդում է ընդարձակ ներածականը, որում հեղինակը տալիս է նյութի ուսումնասիրության մեթոդոլոգիական հարցերը և փորձում պարբերացման ենթարկել հայ տնտեսագիտական մտքի պատմությունը հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը։ Պետք է նշել, որ գրքի ներածականում շարադրված մեթոդոլոգիական սկզբունքներն ընդունելի են և ենթակա չեն առարկության։ Հեղինակը միանգամայն ճիշտ կերպով նշել է, թե հայ տնտեսագիտական մտքի պատմությունը պետք է քննվի ՍՍՌՄ-ի մյուս ժողովուրդների տնտեսագիտական մտքի պատմության հետ սերտորեն կապված։ Ինչ վերաբերում է հիշյալ դրույթի կիրառմանը, ապա նա չի կարողացել իր խոստումը լրիվ կատարել։ Բացառությամբ Մ. Նալբանդյանի, որի հայացքները քննված են ռուս ժողովրդի առաջավոր մտքի ներկայացուցիչների հայացքների հետ սերտորեն կապված, գրքում դրանից բացի այլ կապ չկա հայ և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների տնտեսագիտական մտքի ներկայացուցիչների միջև։ Նրա կողմից հայ տնտեսագիտական մտքի պատմության ընդհանուր պարբերացումը ճիշտ է, քանի որ այդ պարբերացման հիմքում դրված են արտադրության եղանակները։ Ինչ վերաբերում է միևնույն արտադրաեղանակի ներսում կատարված պարբերացմանը, ապա այստեղ Ս. Զուրաբյանը թույլ է տվել պատմական որոշ անճշտություններ։

Հայ ժողովրդի պատմության զարգացած ֆեոդալիզմի շրջանը, որն սկսվում է IX դարից, չի շարունակվում մինչև XVIII դարը, ինչպես հիշատակված է գրքի 17-րդ էջում։ Մինչդեռ այն ավարտվում է XIII դարով։

Զարգացած ֆեոդալիզմի էպոխայի մեջ ոչ մի կերպ չի կարելի մտցնել սելջուկների և ապա մոնղոլների արշավանքների ու Հայաստանում նրանց բիրտ տիրապետության երկու հարյուրից ավելի տարիները, ինչպես և XV—XVI դարերը, երբ Հայաստանի արտադրողական ուժերն անխնա ոչնչանում էին հայկական հողերի վրա պարբերաբար կրկնվող թուրք-պարսկական ավերիչ պատերազմների հետևանքով։ Դրանք եղել են հայ ժողովրդի պատմության մռայլ էջերը.

* Ս. Տ. Զուրաբյան, «Հայ տնտեսագիտական մտքի զարգացման ուրվագծեր. XVIII դարի վերջին քառորդ—XIX դարի 90-ական թվականներ», Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, Երևան, 1959 թ., 490 էջ։

այդ տարիները տնտեսական կյանքի հետադիմության, երկրի արտադրողական ուժերի քայքայման շրջանն է եղել և ոչ թե զարգացած ֆեոդալիզմի շրջանը։ Պարզ է, որ հեղինակի կողմից հայ ժողովրդի պատմության XIV—XVI դարերը զարգացած ֆեոդալիզմի շրջան համարելը ոչ թե ելնում է հայ ժողովրդի պատմության բուն պրոցեսի ուսումնասիրությունից, այլ պարբերացման ընդհանուր շաբլոնից, որն, իհարկե, տվյալ դեպքում կամայական է։

***

Գրախոսվող աշխատության բոլոր գլուխներում հայ տնտեսագիտական մտքի պատմությունը շարադրված չէ գիտական միևնույն մակարդակով։ Մասնավորապես գիտական որոշակի հետաքրքրություն են ներկայացնում գրքի այն գլուխները, որոնցում պրոֆ. Զուրաբյանը վերլուծում է Ն. Զորոյանի, Մ. Նալբանդյանի, Գր. Արծրունու, Ս. Եղիազարովի և Ա. Արասխանյանի տնտեսագիտական հայացքները։ Գրքի այս հատվածները լուրջ հետազոտության արդյունք են։

Գրքի երրորդ գլուխը նվիրված է Նիկողայոս Զորոյանի տնտեսագիտական հայացքների քննությանը։ Հեղինակն իրավացի է, երբ սկզբից քննում է արևմտահայերի տնտեսական դրությունը XIX դարի առաջին կեսին, հանգամանորեն վերլուծելով այն ծանր պայմանները, որոնցում ապրում էր հայ աշխատավորության մի ստվար մասը սուլթանական Թուրքիայի դաժան ռեժիմի ներքո։ Ահա այդ ֆոնի վրա էլ վերլուծության են ենթարկվում Ն. Զորոյանի տնտեսագիտական հայացքները։ Զորոյանի կյանքին և գործունեությանը ընդհանուր գծերով ծանոթացնելուց հետո Ս. Զուրաբյանը բավականաչափ մանրամասն ու հիմնավոր քննության է ենթարկում նրա հայացքները քաղաքատնտեսական մի շարք կատեգորիաների մասին, հիմք ընդունելով հեղինակի «Քաղաքական տնտեսության վրա տեղեկություններ» գիրքը (1849 թ.)։

Մասնավորապես լայն քննության են ենթարկված Ն. Զորոյանի հայացքները մաքսային քաղաքականության, փողի, արժեքի, աշխատավարձի, ազգաբնակչության, հողային ռենտայի և հարկերի մասին։ Այդ հարցերը քննելիս Ս. Զուրաբյանը քննադատական վերաբերմունք է ցույց տվել յուրաքանչյուր հարցի նկատմամբ, բացահայտելով Զորոյանի սխալները և անընդունելի կողմերը։ Նրա հայացքների ուսումնասիրությունից հեղինակը հանգել է հետևյալ եզրակացություններին. «Ն. Զորոյանի հայացքների և մտքերի զգալի մասը պատմականորեն, նրա էպոխայի իրադրության և խնդիրների տեսակետից, պրոգրեսիվ բնույթ էին կրում, քանի որ ուղղված էին միջնադարյան մտածողության և կարգերի դեմ՝ հանուն նոր, բուրժուական արտադրաեղանակի, հանուն կուլտուրայի ու գիտության զարգացման, աշխարհաբարի տարածման, ընդդեմ հին, եկեղեցական մեռած լեզվի՝ գրաբարի։ Նրա տնտեսագիտական հայացքների պրոգրեսիվությունը կայանում է նաև նրանում, որ նա պայքարում էր մեքենայական արտադրության զարգացման, եվրոպական առաջավոր կուլտուրայի և արտադրության եղանակի համար» (էջ 102)։

Լավված հետաքրքրությամբ է կարդացվում աշխատության յոթերորդ գլուխը, ուր քննության են առնված ռևոլյուցիոն դեմոկրատ Միքայել Նալբանդյանի տնտեսագիտական հայացքները։ Գրքի այս գլուխը էապես տարբերվում է մնացած բոլոր գլուխներից, ինչպես նյութի ընդգրկմամբ, շոշափվող հարցերի վերլուծմամբ, այնպես էլ իր գիտական մակարդակով։ Այս գլխի սկզբից Ս. Զուրաբյանը քննության է առնում ռուսական ռևոլյուցիոն դեմոկրատների, մասնավորապես, Ն. Գ. Չերնիշևսկու հայացքները և ցույց տալիս, որ վերջիններս լուրջ ազդեցություն թողին Ռուսաստանի մյուս ժողովուրդների, նաև հայ ժողովրդի մտքի վրա, ի դեմս ազատության մեծ երգիչ, ռևոլյուցիոն դեմոկրատ Միքայել Նալբանդյանի։ Հակիրճ, բայց հիմնավոր կերպով տրվում են Նալբանդյանի կյանքի նշաձողերը և նրա հասարակական-քաղաքական բեղմնավոր գործունեությունը։ Ապա քննության է ենթարկվում Նալբանդյանի աշխարհհայացքն ընդհանրապես (որպես հրապարակախոս, փիլիսոփա ու քաղաքական գործիչ), տալով նրա գործունեության ճիշտ գնահատականը։

Պրոֆ. Ս. Զուրաբյանն առանձին ենթագլխում քննության առնելով Միքայել Նալբանդյանի տնտեսագիտական հայացքները, ցույց է տվել, որ Նալբանդյանն իր տնտեսագիտական աշխատություններում հանդես է եկել որպես կապիտալիզմի և ճորտատիրական կարգերի քննադատ։ Քննված են նրա հայացքներն ագրարային հարցի մասին, նրա վերաբերմունքը դեպի 1861 թվականի գյուղացիական ռեֆորմը։ Մանրամասն վերլուծության է ենթարկված Միքայել Նալբանդյանի տնտեսական ծրագիրը, մի ծրագիր, որով նա նախատեսում էր երկրագործական արտադրության առաջնահերթ զարգացում և այդ հիման վրա էլ ֆաբրիկա-գործարանային արտադրության զարգացում, մասնագիտական կադրերի պատրաստման անհրաժեշտություն, երկրում կայուն վալյուտայի ստեղծում ու դրա հիման վրա փոխանակության ու առևտրի զարգացում և այլ հարցեր։ Վերջին ենթագլուխը նվիրված է Նալբանդյանի հասարակական-քաղաքական հայացքների բնութագրման վերաբերյալ տարբեր գործերի գնահատությանը, որից հետո Ս. Զուրաբյանը տալիս է Միքայել Նալբանդյանի՝ որպես XIX դարի 60-ական թվականների հայ հասարակական մտքի պայծառ դեմքի, ամփոփ բնութագիրը։



Գրախոսվող գրքում որոշակի արժեք է ներկայացնում XI գլուխը, ուր քննարկված են Գրիգոր Արծրունու հասարակական-տնտեսագիտական հայացքները։ Դա ընդհանուր առմամբ հաջողված գլուխներից մեկն է։ Ս. Զուրաբյանը սկզբից բերում է կենսագրական տվյալներ, նշում Գր. Արծրունու գործունեությունը «Մշակ» թերթում, «Մշակ»-ը համարելով նրա հայացքների արտահայտիչը։ Այս գլխում բացի տնտեսագիտական հարցերից, քննության են ենթարկված բազմաթիվ այլ հարցեր, ինչպես, օրինակ, հայ ազգի միավորման մասին, «ազատություն» հասկացությունը ըստ Գրիգոր Արծրունու, դասակարգային հավասարակշռության թեորիան, Արծրունու լուսավորչական հայացքները և այլն։

Անդրադառնալով Արծրունու տնտեսագիտական հայացքների քննությանը, հեղինակը ցույց է տալիս այն բնագավառները, որոնք ավելի կամ պակաս չափով հանդիսացել են նրա ուսումնասիրության օբյեկտը։ Ս. Զուրաբյանի քննությունից հայտնի է դառնում, որ Գրիգոր Արծրունին իր աշխատություններում արծարծել է աշխատանքի բաժանման, արժեքի, գնի, բանկերի և վարկի, առևտրի և վաճառականության, կապիտալի հարցերը և այլն։ Դրանք քննարկելիս նա ցույց է տվել պատշաճ քննադատական վերաբերմունք ու տվել Արծրունու և «Մշակ»-ի գնահատությունը այդ հարցերում։

Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում X գլխի այն մասը, որտեղ հեղինակը քննության է առնում Ս. Եղիազարովի տնտեսագիտական հայացքները։ Ինչպես ճիշտ կերպով նշվում է, Ս. Եղիազարովը XIX դարի հայ տնտեսագետներից առաջինն էր, որը հանգամանորեն ուսումնասիրեց Անդրկովկասում գյուղական համայնքի պատմական էվոլյուցիան և նրա քայքայման պրոցեսը։ Ճիշտ կլիներ ավելացնել նաև, որ նա առաջինը գիտական հետազոտության ենթարկեց համքարությունները, այդ հարցում հանդես բերելով իր հայացքների պահպանողականությունը։ Գրքում հաջող կերպով են մեկնաբանված Ս. Եղիազարովի հայացքները հողային և ջրային հարցերի, ինչպես նաև հողօգտագործման ու ջրօգտագործման մասին։

Առանձին գլխում քննության են առնված Ավետիք Արասխանյանի տնտեսագիտական հայացքները։ Վերլուծելով նրա տնտեսագիտական աշխատությունները և, առաջին հերթին, «Հողի արդյունաբերությունը և հասարակությունը», «Ազգաբնակչությունը և ազգաբնակչության շարժումները», Ս. Զուրաբյանը վեր է հանում Արասխանյանի՝ որպես քաղաքատնտեսի հայացքները, որոնք մի շարք հարցերում շատ ինքնատիպ են։ Նրա ուսումնասիրություններից երևում է, որ Արասխանյանը որպես տնտեսագետ չի սահմանափակվել լոկ տնտեսագիտական այս կամ այն կատեգորիայի վերլուծությամբ, այլ ունենալով լայն պատրաստականություն ու լինելով շրջահայաց, իր աշխատություններում քննության է առել քաղաքատնտեսության տարբեր դպրոցները և իր վերաբերմունքն է ցույց տվել դրանցից յուրաքանչյուրի նկատմամբ։ Գրքում հանգամանորեն քննության են առնված Արասխանյանի հայացքները՝ ապրանքի, արժեքի, հողի, կապիտալի, աշխատանքի, հավելյալ արժեքի և այլ կատեգորիաների վերաբերյալ։ Քաղաքատնտեսական ընդհանուր կատեգորիաներից բացի հեղինակը հատուկ ենթագլխով քննության է առել վերջինիս հայացքները Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման մասին, որից հայտնի է դառնում, որ Արասխանյանը ընդհանուր առմամբ կողմնակից լինելով Անդրկովկասում կապիտալիզմի զարգացմանը, հանդես էր գալիս օտարերկրյա կապիտալի ներհոսման դեմ։ Ս. Զուրաբյանը ցույց է տվել, որ Արասխանյանի մոտ կապիտալիզմի զարգացման հարցերի քննումը զուգորդված է բանվորական հարցի հետ, մասնավորապես նշելով «Մուրճ» ամսագրում զետեղված նրա մի շարք հոդվածներ։

Առավել մանրամասն են քննարկված Արասխանյանի և «Մուրճ»-ի հայացքները հողային ռենտայի, ագրարային հարցի և գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացման հարցերի մասին։ Սակայն ռենտայի հարցում Ս. Զուրաբյանը չի տալիս Արասխանյանի հայացքների հստակ գնահատականը։ Այսպես, նա ասում է, թե Արասխանյանը ժխտում է հողի մասնավոր սեփականության դերը հողային ռենտայի առաջացման գործում, նկատի ունենալով նրա հետևյալ մտքերը. «Ռենտը կարող է գոյանալ միայն, երբ հողերը անհատական սեփականություն են կազմում, և ռենտը միայն սեփականատիրոջն է պատկանում» (էջ 442)։ Արասխանյանի կողմից ռենտայի այդպիսի ձևակերպումից դժվար է հետևցնել, որ նա բացառում է բացարձակ ռենտան։

Գլխի եզրափակիչ մասում Ս. Զուրաբյանը փորձում է ցույց տալ Արասխանյանի վերաբերմունքը դեպի մարքսիզմը։ Խոսելով 900-ական թվականների մասին, հեղինակը նշում է, որ այդ տարիները հանդիսացել են կապիտալիզմի զարգացման, բանվոր դասակարգի աճի և մարքսիզմի տարածման շրջան։ Գրքում ասվում է, որ-

չեն կապվում քննարկվող նյութի հետ։ Այսպես, օրինակ, Ս. Ջուլարյանը ցիտում է Ա. Կարինյանի 1927 թվականի «Գրական դիրքերում» ամսագրի № 5-ում տպագրված հոդվածից. «Ինչպես ճիշտ կերպով նշում է Ա. Կարինյանը, Զոհրյանը, որպես բուրժուական դեմոկրատ և լուսավորիչ հանդես էր գալիս որպես հայկական «երրորդ դասի» գաղափարախոս» (էջ 102)։

Մինչդեռ ոչ մի խոսք Խ. Գուլանյանի գրքի մասին, որի չորրորդ գլուխը նվիրված է Ն. Զոհրյանի տնտեսագիտական հայացքների քննությանը։ Շահամիրյանի հայացքների քննության առնչությամբ Ս. Ջուլարյանը չհիշատակելով Հ. Գրիգորյանի աշխատության մասին, կրկին հիշատակում է Ա. Կարինյանի «Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության» գիրքը։ Օբյեկտիվ մոտեցում հանդես չի բերել Ս. Ջուլարյանը, երբ Նալբանդյանի հայացքները քննելիս չի անդրադարձել Աշոտ Հովհաննիսյանի երկհատոր աշխատությանը՝ նվիրված Միքայել Նալբանդյանին և նրա էպոխայի վերլուծությանը։ Միայն տողատակում մի տեղ հիշատակել է, թե կա այդպիսի աշխատություն և լույս է տեսել 1955 թվականին։ Ուշագրավ է, որ իր աշխատության մեջ հեղինակը ճշգրտել է Մ. Նալբանդյանի մասին ունեցած իր նախկին մի քանի թյուր կարծիքները։ Ցանկալի կլիներ, որ իր նոր գործում հեղինակը հղանցիկ նշեր այդ մասին։ Օրինակ, Ս. Ջուլարյանն իր «Մ. Նալբանդյանի աշխարհհայացքը» գրքույկում, որը լույս է տեսել 1940 թվականին, գրել է. «Իր կյանքի առաջին և երկրորդ ժամանակաշրջանում Նալբանդյանը հիմնականում կանգնած է բուրժուական-լուսավորչական դիրքերի վրա» (էջ 181). գրախոսվող աշխատության մեջ կարդում ենք. «Ճիշտ չի լինի ասել, որ Նալբանդյանը իր կյանքի ու գործունեության և՛ առաջին, և՛ երկրորդ շրջանում, Ստ. Նազարյանցի նման կանգնած էր բուրժուական-լուսավորչական դիրքերում» (էջ 188)։ Կամ նա 1940 թվականին գրել էր, որ Նալբանդյանը «չէր կարողանում ներթափանցել իր ժամանակակից հասարակության տնտեսական օրենքների էության մեջ» (էջ 213), իսկ ներկա գրքում՝ նա «հասկանում էր կապիտալիզմի զարգացման օրինաչափությունը» (էջ 194) և այլն։

Ճիշտ է վարվել հեղինակը հրաժարվելով իր երբեմնի այն տեսակետից, որ «Նալբանդյանը բռնում էր Գերցենի և Չերնիշևսկու միջև ինչ-որ միջին դիրք՝ ուժեղ թեքում ունենալով վերջինիս կողմը». այս գրքում շեշտում է, որ նա «կանգնած է Չերնիշևսկու ռևոլյուցիոն դեմոկրատական դիրքերում»։ Գրքում որոշ տեղեր չեն հասկացվում։ Ահա դրանցից մի քանիսը։ «Տնտեսագիտական մտքի պատմության պերիոդիզացիայի հիմքում պետք է ընկնեն հետևյալ դրույթները. ա) ժողովրդի տնտեսական զարգացման աստիճանը, տնտեսական բազիսի բընույթը և առանձնահատկությունները տվյալ ժամանակաշրջանում, բ) տնտեսական մտքի՝ որպես արտադրողական ուժերի զարգացման հետևանքով փոփոխվող տնտեսական բազիսի հակասությունների արտահայտության՝ բնույթը և առանձնահատկությունները» (էջ 17)։ Բացի նրանից, որ այս նախադասությունը կառուցված է առանց հաշվի առնելու քերականության պահանջները, այն սխալ է ըստ էության։ Ո՛չ ժողովրդի տնտեսական զարգացման աստիճանն է դրույթ, և ո՛չ էլ բազիսի հակասությունների արտահայտության բնույթը, դրանք դրույթներ չեն, այլ ավելի շուտ դրություններ։ 44-րդ էջում կարդում ենք. «Բացի այդ, հեղինակը վաճառականներին տալիս է մի շարք գործնական խորհուրդներ և ցուցմունքներ՝ շահույթ ստանալու և առևտուր վարելու եղանակների մասին»։ Խորհուրդ տվողը ոչ թե միաժամանակ ցուցմունք կարող է տալ առևտուրը վարելու մասին, այլ կարող է ցուցումներ տալ առևտուր անելու։

Պարզ չէ և այս նախադասությունը. «Սակայն այստեղ պետք է նշել Շանշյանի տնտեսագիտական հայացքների այն հիմնական հակասությունը, որ նա, իր տեսական նախադրյալներով կանգնած լինելով բուրժուական քաղաքատնտեսության դիրքերում, աշխատանքի բուրժուական ազատության դիրքերում,— որի տակ նկատի էր առնվում ձեռնարկատիրության, տնտեսական գործունեության, աշխատավորների շահագործման և սարկացման ազատությունը,— պաշտպանում էր միջնադարյան արհեստավորական կազմակերպությունները՝ համքարությունները, որոնք հենց գործնականում խանգարում էին այն սկզբունքների կիրառմանը, որոնց ջատագովն էր հանդիսանում ինքը՝ Շանշյանը» (էջ 288)։

Այսպիսի անհասկանալի տեղեր քիչ չեն գրքում։ Սակայն բավարարվենք բերածներով։

Մեր նշած մասնակի թերությունները բոլորովին չեն նսեմացնում պրոֆ. Ս. Ջուլարյանի աշխատության լուրջ արժանիքները։ Գրքի հրատարակումը պետք է համարել դրական երևույթ և օգտակար՝ ընթերցողների համար։

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ԱՎԵԼԻ ՄՈՏ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆԸ

Բասարգեչարի շրջանը ռեսպուբլիկայում համարվում է հացի շտեմարաններից մեկը։ Անցյալ տարի այստեղ մշակվել են 14 հազար հեկտար հացահատիկային կուլտուրաներ և յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվել է 15 ցենտներ բերք՝ պլանով նախատեսված 13,5 ցենտների փոխարեն։ Դա, անկասկած, մի նվաճում է, որը պետք է ընթացիկ տարում է՛լ ավելի ամրապնդել, ջանալով հասնել ավելի բարձր բերքատվության։

Սակայն շրջանային «Բարձր բերքի համար» թերթն անցած տնտեսական տարում լրջորեն չարծարծեց հացահատիկային տնտեսության զարգացման կարևոր հարցերը։

Թերթի էջերում տպագրվել են բազմաթիվ թղթակցություններ, ինֆորմացիոն բնույթի նյութեր գարնան գյուղատնտեսական աշխատանքների, բերքահավաքի ընթացքի մասին։ Դա, անշուշտ, լավ է։ Բայց թերթում անբավարար են լուսաբանված ագրոտեխնիկական կանոնների կիրառումը և մանավանդ Բասարգեչար-Շամխոր սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների իրագործման ընթացքը։

Բասարգեչարի շրջանի մի շարք կոլտնտեսություններ անցած տարի աճեցրին հացահատիկի բարձր բերք, յուրաքանչյուր հեկտարից հավաքելով 24—26 ցենտներ հացահատիկ, եգիպտացորենից՝ 300—330 ցենտներ կանաչ մասսա։ Շրջանային թերթի նյութերից երևում է, որ առանձին կոլտնտեսություններ գարնանացանի աշխատանքներն անցյալ տարի ավարտեցին 4—5 օրում, իսկ բերքահավաքը՝ 6—8 օրում։ Կոլտնտեսային գյուղն ունի հացահատիկի արտադրության շատ հիանալի վարպետներ։ Բայց «Բարձր բերքի համար» թերթը վատ է պրոպագանդել բարձր բերքի առաջավորների աշխատանքային փորձը, հանդես է եկել փաստերի սոսկ արձանագրողի դերում, առանց վերլուծելու ձեռք բերված արդյունքները և, որ ամենակարևորն է, շատ թույլ է օգնել պարտիական կազմակերպություններին՝ արտադրության մեջ արմատավորելու աշխատանքի առաջավոր եղանակներն ու մեթոդները։

Հայտնի է, որ դաշտավարներն ու մեխանիզատորները բարձր բերքի համար մղվող պայքարում մեծ ուշադրություն են հատկացնում ագրոմիջոցառումների ամբողջ կոմպլեքսի անխախտ կիրառմանը։ Խոսքը առաջին հերթին վերաբերում է սերմնաբուծական տնտեսության բարելավմանը, հողի նախացանքային և ետցանքային մշակությանը, ոռոգմանն ու պարարտացմանը, ցանքաշրջանառությանը, դաշտային աշխատանքների ժամանակին կատարմանը։ Սակայն թերթի ուշադրությունից վրիպել են այդ հարցերը։ Խմբագրությունը հաշվի չի առել այն հանգամանքը, որ Բասարգեչարի շրջանը հացահատիկի տեսակավոր սերմացու է մատակարարում ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններին, իսկ սերմնաբուծական տնտեսության կազմակերպման գործում կան մի շարք լուրջ թերություններ։

«Բարձր բերքի համար»-ը շատ քիչ ուշադրություն է նվիրել հողագործության մեքենայացմանը, այն հարցին, թե առանձին արտելներում ինչպես է օգտագործվում գյուղատնտեսական հարուստ տեխնիկան։ Թերթն անջատ բերքահավաքին «անդրադարձել» է երկու անգամ. առաջինը՝ երբ գրել է, թե կոմբայնավարների շրջանային հավաքը պարտավորվել է «նախորդ տարվա համեմատությամբ 5 անգամ ավելացնել անջատ եղանակով կատարվող բերքահավաքի տարածությունները», իսկ երկրորդը՝ խմբագրության աշխատակից Ռ. Ահարոնյանի զրույցը, որի նպատակն է եղել պրոպագանդել անջատ բերքահավաքի առավելությունները։ Այդ «Ագրոտեխնիկական զրույց»-ը կազմված է ընդհանուր դատողություններից և գրված է այսպիսի լեզվով. «Անջատ բերքահավաքի կիրառումով իջնում է դաշտերի աղբոտումը մոլախոտերով, ծղոտը ստացվում է ավելի չոր և պիտանի է լինում... պահելու ավելի երկար ժամանակ։ Ինչպես նաև ունենում է 8—13 տոկոսով ավելի խոնավություն»։

Անհրաժեշտ պետք է համարել նաև եգիպտացորենի մշակության հետ կապված հարցերի լուսաբանումը, չնայած նրան, որ շրջանում այդ կուլտուրայի ցանքատարածությունը հասնում է 900 հեկտարի։

Թերթը չի բարձրացրել արտադրության պլանավորման, աշխատանքի նորմավորման, կազմակերպման և վարձատրության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, արտադրական նույն տարածությունից ավելի քիչ միջոցների ծախսումով ավելի շատ մթերքներ ստանալու, այդ գործում

*կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու հարցերը։*

*Նոր չէ, որ շրջանի Նորակերտ և Կարախման գյուղերի կոլտնտեսություններում կազմակերպվել են տրակտորային-դաշտավարական կոմպլեքսային բրիգադաներ, որոնց շնորհիվ զգալիորեն բարելավվել է աշխատանքը, տնտեսվել են բավականին միջոցներ և աշխօրեր, բարձրացել է մեքենաների աշխատանքի արտադրողականությունը, իջել է ինքնարժեքը, բայց թերթը կարևոր չի համարել պրոպագանդելու այդ բրիգադաների աշխատանքի փորձը։*

*Հայտնի է, որ շրջանի հացահատիկային ամուր տնտեսություն ունեցող մի շարք գյուղատնտեսական արտելներում ետ է մնում անասնաբուծությունը, հատկապես՝ խոզաբուծությունն ու թռչնաբուծությունը։ Դրա պատճառը մեծ մասամբ կազմակերպական անբավարար աշխատանքն է, կերի բազայի ամրապնդման անսպառ հնարավորությունների ոչ լրիվ օգտագործումը։ «Բարձր բերքի համար»-ը սակայն խորամուխ չի լինում այդ հարցերի մեջ, չի բացահայտում գոյություն ունեցող թերությունները։ Իհարկե, չի կարելի ասել, որ թերթը անասնաբուծության բնագավառում ետ մնացողներին չի քննադատում։ Ընդհակառակը, քննադատական բնույթի նյութերի շատ կարելի է հանդիպել թերթի էջերում, վատն այն է, որ դրանցում փորձ չի արվում վերլուծելու եղած վիճակը, ցույց տալու թերությունների հաղթահարման միջոցները։*

*Բասարգեչարի թերթը ընթերցողի վրա վատ տպավորություն է թողնում իր անշուք ու անճաշակ ձևավորմամբ, լեզվական և ոճական բազմաթիվ անհարթություններով ու սխալներով։ Բավարարվենք մի քանի օրինակներով. «Խոստացել են չտալ ոչ մի մատղաշի անկ» (№ 26), «Սածիլումը հաջող են ընթանում» (№ 42), ...«Նրանք ձգտում են աճեցնել բարձր բերք և նվաճեն մրցության առաջնությունը (№ 47), «Հովիվներն ու կթվորուհիները համեստ և աշխատասեր մտքի տեր մարդիկ են», «Արտերի համայնական ծփանքների մեջ առաջ են շարժվում արտելի կոմբայնները» (№ 59) և այլն։*

*Ինչպես հայտնի է, գյուղատնտեսության արտադրության հիմքը հացահատիկային տնտեսությունն է. առանց դրա չի կարելի հասնել անասնաբուծական մթերքների վճռական ավելացման։ Իսկ ներկա պայմաններում հացահատիկի բերքի ավելացման գլխավոր աղբյուրը հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացումն է։ Այդ լավ են ըմբռնել Բասարգեչարի շրջանի գյուղատնտեսության աշխատողները, որոնք այժմվանից եռանդուն կերպով նախապատրաստվում են յոթնամյակի երկրորդ տարվա գարնանացանին։ Անհրաժեշտ է, որ շրջանային թերթն իր էջերում ավելի հանգամանորեն լուսաբանի գարնան գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ընթացքը, լուրջ և հետևողական պայքար ծավալի հացահատիկային տնտեսության նոր վերելքի համար։*

*Լ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ*

---

Ուղղում

*Մեր ամսագրի 1959 թ. դեկտեմբերի համարի 18-րդ էջի երկրորդ ծանոթագրությունը կարդալ. «Հայերեն թարգմանությունը կատարված է 1959 թ. օգոստոսի 5-ի ռուսերեն հրատարակությունից։ Այն խմբագրել են՝ Մ. Հ. Ադոնցը, Գ. Ա. Հայրյանը, Խ. Հ. Բարսեղյանը» և այնուհետև ինչպես տեքստում։*

---

Արքագրիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ,
թողարկիչ՝ Բ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս։

ՎՖ 00954 | Պատվեր 73 | Տիրաժ 10.300

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ: Ստորագրված է տպագրության 23/I 1960 թ.:

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակին չեն վերադարձվում:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։



# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ՀԵՌԱՆԿԱՐԱՅԻՆ ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

Հրապարակելով ամսագրի մոտակա տարիների պլանը, խմբագրությունը նպատակ ունի.

ընթերցողներին և հեղինակային ակտիվին իրազեկ պահել իր առաջիկա անելիքներին, ինչպես և ավելի շատ տեղ տալ նոր և կարող հեղինակների,

նախապես հնարավորություն ընձեռել հեղինակներին ոչ միայն թեմա ընտրելու, այլև երկարատև մշակելու այն:

Հեղինակները ընտրված թեմայի հարցով կարող են պայմանավորվել խմբագրության հետ կամ հոդվածն ուղարկել առանց պայմանավորվածության: Խմբագրությունն իրեն իրավունք է վերապահում միևնույն թեմայով ստացված հոդվածներից տպագրել լավագույնը:

Խմբագրությունը գոհունակությամբ հաշվի կառնի տվյալ պլանի վերաբերյալ ընթերցողների դիտողություններն ու լրացումները:

## ՏԵՍՈՒԹՅԱՆ ՈՒ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԲԱԺԻՆ

*Ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային 15-ամյա պլանը ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման տնտեսական ծրագիրն է։*

*Կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցության վճռական էտապը։*

*Սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափությունները։*

*Սոցիալիստական սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ և համաժողովրդական ձևերի զարգացման ու մերձեցման ուղիները։*

*Քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի տարբերությունների վերացման ուղիները։*

*Սովետական հասարակության զարգացման արդի էտապում նյութական ու հոգևոր բարիքների բաշխման պրոբլեմը։*

*Սոցիալիստական պետության զարգացման և ամրապնդման ուղիները։*

*Կոմունիստական հասարակության ինքնավարության ուղղությամբ սոցիալիստական պետականության աստիճանական զարգացման հարցը։*

*Կոմունիզմի բարձրագույն փուլին սոցիալիստական երկրների առավել կամ պակաս միաժամանակյա անցման հնարավորությունը։*

*Նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը և բաշխման նկատմամբ հավասարարական մոտեցման քննադատությունը։*

*Հասարակության բարօրության համար աշխատանքի բարոյական խթանների մեծ նշանակությունը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։*

*Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար ու կազմակերպող ուժն է։*

*ՍՄԿՊ-ի գործունեության մեջ տեսության և պրակտիկայի միասնությունը ստեղծագործական մարքսիզմի կենդանի մարմնացումն է։*

*Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը ՍՍՌՄ-ում։*

*Պլանավորման լենինյան սկզբունքների կիրառումը ՍՍՌՄ-ում։*

*Կյանքի հետ սերտ կապը՝ իդեոլոգիական աշխատանքի հաջողության գրավականն է։*

*Ցործող ձեռնարկությունների արմատական վերակառուցումը յոթնամյակի տարիներին գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։*

*Երկրի համատարած էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների իրականացման վճռական ստադիան։*
*Դրական օրինակի մեծ ուժը։*
*Արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման պրոբլեմը յոթնամյա պլանում։*
*Աշխատավորների կենսամակարդակի բարձրացումը յոթնամյակում։*
*Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը սովետական հասարակարգի զարգացման նոր էտապում պարտիայի կարևորագույն խնդիրն է։*
*Արտադրության հետ ուսման սերտ կապը երիտասարդությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու հիմնական պայմանն է։*
*Գաղափարական աշխատանքը բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում։*
*Կոմունիստական հասարակարգի կառուցումը բազմամիլիոն ժողովրդական զանգվածների կենդանի ստեղծարար գործունեությունն է։*
*Գիտության ու տեխնիկայի դերը ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրի իրականացման գործում։*
*Դասակարգային պայքարը և բոլշևիկյան պարտիայի քաղաքականությունը ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում։*
*Սոցիալիզմը և անհատը։*
*Սովետական ինտելիգենցիայի դերը կոմունիզմի կառուցման գործում։*
*Սոցիալիստական մրցության և ժողովրդական մասսաների ստեղծագործական նախաձեռնության նշանակությունը կոմունիստական շինարարության մեջ։*
*Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ծնունդը սոցիալիստական մրցության զարգացման նոր էտապ է։*
*Սովետական սոցիալիստական պետությունը կոմունիզմի կառուցման հզոր գործիք է։*
*Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը կոմունիզմի ծավալուն շինարարության շրջանում։*
*Միութենական ռեսպուբլիկաների և տեղական Սովետների իրավունքների ընդլայնումը։*
*Սոցիալիստական օրինականության զարգացման նոր էտապը։*
*Դպրոցի վերակառուցման հարցերը Հայկական ՍՍՌ-ում։*
*Հասարակական կազմակերպությունների դերը սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում։*
*Սովետական կինը — կոմունիզմի ակտիվ կառուցողն է։*
*Հասարակական կարծիքը և նրա նշանակությունը ՍՍՌՄ-ում։*
*Գաղափարախոսություն և քաղաքականություն։*
*Կոմունիզմի կառուցումը և անհատի բազմակողմանի զարգացումը։*
*Կոմունիզմի շինարարության սպեցիֆիկ հակասությունները և նրանց լուծման ուղիները։*
*Հանրային և անձնական սեփականությունը սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ։*
*Սոցիալիստական իրավագիտակցության դերը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։*
*Մարքսիստական-լենինյան քաղաքականությունը որպես գիտություն և արվեստ։*
*Պրոլետարական դիկտատուրան՝ դեմոկրատիայի նոր տիպ է։*

***

*Համաշխարհային պատերազմը վերացնելու ռեալ հնարավորության հարցը։*
*Սովետական Միության տնտեսական պոտենցիալի բարձրացումը կարևորագույն ավանդ է միջազգային անվտանգության ամրապնդման գործում։*
*Խաղաղ գոյակցությունը ՍՍՌՄ արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է։*
*Ռեակցիայի ու ֆաշիզմի դեմ մղվող պայքարում կոմունիստների և սոցիալիստների միասնությունն ամրապնդելու անհրաժեշտության մասին։*
*Կոմունիստական ու բանվորական պարտիաների կապերի հետագա ամրապնդումը։*
*Բուրժուական գաղափարախոսության և ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարը մարքս-լենինյան պարտիաների կարևորագույն խնդիրն է։*
*Կոմունիստական ու բանվորական պարտիաների պայքարը դոգմատիզմի և աղանդավորականության դեմ։*
*Լեյբորիզմի սոցիալական փիլիսոփայությունը։*



*Գերմանական հարցի լուծումը ժողովուրդների խաղաղության ու անվտանգության ապահովման կարևորագույն պայմանն է։*
*Զինաթափման, ատոմային ու ջրածնային զենքի արգելման համար պայքարը արդիականության արմատական պրոբլեմն է։*
*«Ժողովրդական» կապիտալիզմի քննադատություն (հոդվածներ)։*
*Պետական սեփականության ձևերը կապիտալի երկրներում։*
*Գործազրկությունը կապիտալիստական երկրներում (հոդվածներ)։*
*Արդի միջազգային մոնոպոլիաները։*
*Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի դրությունը և պայքարը ժամանակակից էտապում (մի շարք հոդվածներ)։*
*Երկու սիստեմների տնտեսական մրցությունը (հոդվածներ)։*
*Գաղութային սիստեմի փլուզումը (մի շարք հոդվածներ)։*
*Արդի կապիտալիզմի տնտեսական ճգնաժամը (հոդվածներ)։*
*Սոցիալիստական լագերի երկրներում (հոդվածներ և այլ նյութեր)։*
*Եղբայրական կոմունիստական պարտիաներում (հոդվածներ և հարակից այլ նյութեր)։*
*Սոցիալիստական երկրների համագործակցությունը (հոդվածներ)։*
*Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում կատարվող իրադարձությունների հետքերով։*
*Միջազգային առևտուրը որպես խաղաղության ամրապնդման կարևոր գործոն։*
*Ժողովուրդների խաղաղ գոյակցությունը և կուլտուրական կապերի ընդլայնումը։*
*Պետական մոնոպոլիստական կապիտալիզմը։*
*Նավթային և ավտոմոբիլային մոնոպոլիաները ԱՄՆ-ում։*
*Արևմտյան Գերմանիայի մոնոպոլիաները։*
*ՍՍՌՄ-ը և թույլ զարգացած երկրները։*

***

*Ռևոլյուցիայի և էվոլյուցիայի դերը հասարակական զարգացման մեջ։*
*Հասարակական կեցությունը և հասարակական գիտակցությունը սոցիալիզմի օրոք։*
*Աշխատանքի դերը գիտակցության ծագման ու զարգացման գործում։*
*Բացարձակ և հարաբերական ճշմարտություն։*
*Սոցիալական ռևոլյուցիան որպես հասարակական զարգացման օրինաչափություն։*
*Թեորիայի և պրակտիկայի միասնության մասին։*
*Բնության և հասարակության օրենքները։*
*Մարքսիզմի ստեղծագործական բնույթը։*
*Հակադրությունների պայքարը և միասնության օրենքը։*
*Ձևի և բովանդակության դիալեկտիկան։*
*Դիալեկտիկական մատերիալիզմի իմացության տեսության հիմքերը։*
*Ինչպես է մարդը ճանաչում շրջապատող աշխարհը։*
*Պատմական մատերիալիզմը որպես գիտություն։*
*Դիալեկտիկական մատերիալիզմը և արդի ֆիզիկան։*
*Պրակտիկան՝ իմացության հիմքն ու չափանիշն է։*
*Տեխնիկան կապիտալիզմի և սոցիալիզմի օրոք։*
*Արդի ֆիդեիզմը և գիտությունը։*
*Դիալեկտիկան որպես աշխարհի իմացության և վերափոխման մեթոդ։*
*Ճշմարտության մարքսիստական ուսմունքը։*
*Սոցիալիստական արտադրաեղանակի հիմնական գծերը։*
*Սոցիալիստական հասարակության սոցիալ-քաղաքական և կուլտուրական պատկերը։*
*Բանվոր դասակարգի առաջնորդների դերը ռևոլյուցիոն շարժման մեջ։*
*Ազատություն և անհրաժեշտություն։*
*Իմացության պրոցեսի դիալեկտիկան։*
*Կոմունիստական գաղափարախոսության դաստիարակչական դերը։*
*Լենինի «Փիլիսոփայական տետրերը»։*
*Մարքսիստական փիլիսոփայության զարգացման լենինյան էտապը։*
*Լենինը մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին։*

Անհրաժեշտություն և պատահականություն։
Մատերիալիստական դիալեկտիկան և պրոգրեսի գաղափարը։
Բնագիտության և փիլիսոփայության փոխադարձ կապը։
Կիբեռնետիկան որպես գիտություն։
«Երկու մարքսիզմների» ռևիզիոնիստական կոնցեպցիայի քննադատությունը։
Բուրժուական հասարակարգում դասակարգային անտագոնիզմի անհետացման ռևիզիոնիստական առասպելը։
Դիկտատուրայի և դեմոկրատիայի փոխհարաբերության հարցի խեղաթյուրումը ռևիզիոնիստների կողմից։
Բուրժուական և սոցիալիստական կուլտուրա։
Անցյալի կուլտուրական ժառանգության լենինյան ըմբռնումը։
Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։
Մարքսիզմ-լենինիզմը կրոնի հաղթահարման ուղիների մասին։
Կրոնական հավատալիքների ծագումը։
Կրոնի և գիտության հակադրությունը։
Կրոնական բարոյականությունը և նրա հակաժողովրդական բնույթը։
Քրիստոնեությունը և կոմունիզմը։
18-րդ դարի ֆրանսիական մատերիալիստների աթեիզմը։
Միչուրինյան ուսմունքի տեսական հիմքերը։
Մատերիալիզմի պայքարը իդեալիզմի դեմ արդի տիեզերագիտության մեջ։
Բնական գիտությունների դերն ու նշանակությունը կոմունիզմի կառուցման գործում։
Արտասահմանյան առաջավոր մտածողների պայքարը դիալեկտիկական մատերիալիզմի համար։
Մարքսիստական փիլիսոփայության ձևավորումը։
Լենինի կողմից նարոդնիկության իդեալիստական սոցիոլոգիայի ջախջախումը։
Փիլիսոփայության պարտիականության մարքս-լենինյան ըմբռնումը։
Իմպերիալիզմի արդի սոցիոլոգիան (հոդվածներ)։
Սոցիալիզմը և արդի ռևիզիոնիզմը։
Սոցիալիստական հասարակության կենցաղավարությունը։
Նեոթոմիզմը՝ կաթոլիկականության արդի փիլիսոփայությունն է։
Սոցիալական պրոգրեսը և տեխնիկայի զարգացումը։
Մարդկանց գիտակցությունից կապիտալիզմի մնացուկների հաղթահարման ուղիները։
Կոմունիզմը և աշխատանքային դաստիարակությունը։
Կոմունիստական հասարակության կառուցման ասպարեզում սուբյեկտիվ ֆակտորի դերը։

* * *

Հեռուստատեսությունը կոմունիստական դաստիարակության հզոր զենք է։
Ստեղծագործական միությունների դերը արվեստի զարգացման բնագավառում։
Գրադարանային գործը գաղափարական աշխատանքի կարևոր օղակն է։
Էսթետիկական դաստիարակության դերը նոր մարդու ձևավորման գործում։
Կոմունիզմը և կուլտուրան։
Արվեստի պարտիականությունը։
Սոցիալիստական ռեալիզմի բնորոշ գծերը։
Արվեստը և կոմունիստական բարոյականությունը։
Արվեստը որպես կոմունիստական դաստիարակության միջոց։
Սովետական արվեստի էսթետիկական իդեալը։
Արվեստագետը և նրա դարաշրջանը։
Մասսաների էսթետիկական դաստիարակությունը։
Արդիականությունը և գրականության ազգային առանձնահատկությունը։
Երաժշտությունը որպես մասսաների դաստիարակության միջոց։
Արդի բուրժուական ռեակցիոն էսթետիկայի քննադատությունը։
Ժամանակակից մարդու կերպարը սովետահայ գրականության մեջ։
Գաղափարայնությունը գրական քննադատության մեջ։



Սովետահայ թատրոնը և արդիականությունը։
Հայֆիլմի ստեղծագործական հարցերը։
Կուլտուրայի ժողովրդական համալսարանները։
Հայկական ժողովրդական պարարվեստի զարգացման ուղիները։

* * *

Անդրկովկասում և Հայաստանում 1917—1918 թթ. ռևոլյուցիոն սիտուացիայի հարցը։
ՌԿՊ Կենտկոմի և Լենինի դերը ՀԿՊ կազմավորման ու ամրապնդման գործում։
Պատմական հետազոտությունների լենինյան սկզբունքների համար։
Սովետական Հայաստանի բանվոր դասակարգի աճը։
Սովետները Հայաստանում 1917 թվականին։
Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը։
1920 թվականի մայիսյան ապստամբության պարտության պատճառները։
Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման ուղիները։
Օգնություն ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողներին (մի շարք հոդվածներ)։
Ռևոլյուցիայի վետերանները (ակնարկներ)։
Մարքսիզմի մուտքը և տարածումը Հայաստանում (հոդվածներ)։

## ՏՆՏԵՍԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԲԱԺԻՆ

Գործող ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական հագեցման նշանակությունը։
Ժողովրդական տնտեսության մեջ ատոմային էներգիայի կիրառման հեռանկարները։
Լենինը աշխատանքի սոցիալիստական կազմակերպման մասին։
Ապրանքային արտադրությունը սոցիալիզմի օրոք։
Արտադրամիջոցների գերազանց աճման օրենքը։
Արժեքի օրենքի ներգործությունը սոցիալիստական գյուղատնտեսության ոլորտում։
Սոցիալիստական վերարտադրության տեմպերն ու համամասնությունը։
Սոցիալիստական հասարակության արտադրությունն ու սպառումը։
Հասարակական արդյունքի բաշխումը կոլտնտեսություններում և նրանց ապրանքայնության զարգացման հարցը։
Միջկոլտնտեսային կապերի դերը կոմունիզմի կառուցման գործում։
Տեխնիկական հարաճուն պրոգրեսը սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափությունն է։
ՍՍՌՄ արևելյան շրջանների զարգացման հեռանկարները։
Ավտոմատիզացիան և մեխանիզացիան որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման վճռական գործոն։
Սինթետիկ նյութերի և պլաստմասսայի արտադրության արագ զարգացումը յոթնամյակում։
Արտադրության հետագա մասնագիտացման և կոոպերացման ուղիները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։
Կոմպլեքսային մեքենայացումը որպես արտադրության զարգացման վճռական գործոն։
Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը յոթնամյակում։
Առաջավոր փորձի արմատավորումը որպես տնտեսության զարգացման ռեզերվ։
Հասարակական ֆոնդերը և սովետական ժողովրդի բարեկեցությունը։
Քիմիան և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը։
Գազը ժամանակակից տնտեսության մեջ։
Քաղաքաշինության հեռանկարները Հայաստանում (հոդվածներ)։
Սովետական Հայաստանի էլեկտրիֆիկացիան։
Տեքստիլ արդյունաբերության ավտոմատացման հեռանկարները յոթնամյակում։
Տեխնիկական պրոգրեսը ռեսպուբլիկայի սննդարդյունաբերությունում։
Ռեսպուբլիկայի էլեկտրա-տեխնիկական արդյունաբերության զարգացման ուղիները։

Հաստոցաշինությունն ու սարքաշինությունը ռեսպուբլիկայում։
Էլեկտրաէներգիայի խնայողության աղբյուրները։
Շինարարության ինդուստրիան յոթնամյակում (հոդվածներ)։
Արդյունաբերության մատակարարման կարևոր հարցերը։
Գիտա-հետազոտական հիմնարկների կապը արտադրության հետ (հոդվածներ)։
Աշխատանքի արտադրողականության աճը ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ։
ՍՍՌՄ մեքենաշինության նվաճումները (հոդվածներ)։
Բանվորների որակավորման կատարելագործումը որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման լծակ։

Ռեսպուբլիկայի տրանսպորտի զարգացման հարցերը (հոդվածներ)։
Ռեսպուբլիկայի լեռնահանքային արդյունաբերության զարգացման ուղիները։
Հասարակական սննդի դրվածքը Երևան քաղաքում։
Վաղվա Լուսավանը։
Երկրին տանք շատ և բարձրորակ կահույք։
Ժամանակին և որակով ավարտել կառուցումները։
Ռեսպուբլիկայի արդյունաբերական շինարարությունը յոթնամյակում։
Շինանյութերի արտադրության զարգացման հարցերը։
Ռեսպուբլիկայի տնտեսության պլանավորման կարևոր հարցերը։
Քաղաքային տնտեսության զարգացումը յոթնամյակում։
Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և աշխատանքային օրվա կրճատումը ՍՍՌՄ-ում։

Ժողտնտխորհի միջոցառումները արտադրանքի որակի բարձրացման բնագավառում։

***

Առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների փորձը 100 հեկտար տարածության դիմաց գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը գյուղատնտեսության աշխատողների կարևորագույն խնդիրն է։
Տնտհաշվարկի կիրառման անհրաժեշտությունը կոլտնտեսություններում։
Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը գիտական եղանակով վարելու հարցը։
Սոցիալիստական վերարտադրությունը Հայաստանի կոլտնտեսություններում։
Դրամական վարձատրության կիրառումը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում։
Որոնք են աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները կոլտնտեսություններում և սովխոզներում (հոդվածներ)։

Կերի կայուն բազայի ստեղծման հարցերը (հոդվածներ)։
Անասնաբուծական մթերքների առատության համար (հոդվածներ)։
Բերքատվության աճման դինամիկան ՍՍՌՄ-ում և ռեսպուբլիկայում։

Ռեսպուբլիկայի սովխոզների հասութաբերության հարցը։
Կոլտնտեսությունների պլանավորման հիմունքները։
Սերմնաբուծության վիճակը և հեռանկարները ռեսպուբլիկայում։
Աշխատանքի կազմակերպումը բազմաճյուղ կոլտնտեսություններում։
Միջկոլտնտեսային խորհուրդները և նրանց գործունեությունը ժամանակակից էտապում։
Ճակնդեղի մշակության մեքենայացման մասին։
Անասնաբուծական սովխոզների մեքենայացումը մեր կարևոր խնդիրն է։
Էջմիածնի՝ Լենինի անվան կոլտնտեսության տնտեսավարման գիտական դրվածքը։
Մարտունու շրջանի Վաղաշեն կոլտնտեսության տնտեսավարման գիտական դրվածքը։
Ներքին Դվինի կոլտնտեսության 1959 թվականի բալանսի պատկերը։
Տարեկան երկու բերք ստանալու հնարավորությունը։
Թռչնաբուծության զարգացման ուղիները ռեսպուբլիկայում։
Կոլտնտեսությունները և ճանապարհների բարեկարգումը։
Եգիպտացորենի բարձր բերքի համար։
Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը և հանրային տնտեսության աճը։



Անասնացեղի ազնվացման վիճակը ռեսպուբլիկայի մի քանի շրջաններում։
Շրջանների տնտեսական պրոֆիլի մասին։
Բաղնիքների շինարարությունը գյուղում։
Կոլտնտեսություններում աշխատանքը նորմավորելու մասին։
Ռեսպուբլիկայի անտառային տնտեսության զարգացման կարևոր հարցերը։
Արժեքի օրենքը և տնտհաշվարկը։
Ռյադանցիների հաջողությունները և փորձը։
Բամբակագործության մեջ լայնորեն կիրառել մեքենայացումը։
Միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը (հոդվածներ)։
Խաղողագործության ու պտղաբուծության զարգացման հեռանկարները։
Ոռոգման ցանցի ընդարձակումը յոթնամյակում։
Քաղաքամերձ շրջաններում ստեղծել պտղա-բանջարաբուծական և կաթնապրանքային խոշոր տնտեսություններ։
Ընկուզենու կուլտուրայի լայն արմատավորումը։
Գոմեշաբուծության զարգացման համար։
Կազմակերպել ջերմոցային տնտեսություն ռեսպուբլիկայի քաղաքամերձ շրջաններում։
Աշխատանքային ծախսումների կրճատման ռեզերվները ռեսպուբլիկայի սովխոզներում։

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲԱԺԻՆ

Առաջավոր կոլտնտեսության պարտկազմակերպության աշխատանքի փորձը (հոդվածներ)։
Արտադրանքի որակը և պարտիական կազմակերպության խնդիրները (հոդվածներ)։
Պարտիական կոլեկտիվ ղեկավարությունը հաջողությունների գրավականն է։
Պարտիական կազմակերպությունը և աշխատանքային կարգապահությունը։
Գործնականությունն ու կոնկրետությունը պարտիական աշխատանքում։
Պարտիական ղեկավարը և մասսաները։
Պարտիական օրգանների աշխատանքի լենինյան ոճը։
Ետ մնացող կոլտնտեսության պարտիական կազմակերպության անելիքները։
Պարտիական աշխատանքը դպրոցում։
Կոմունիստի բարոյական կերպարը։
Լենինյան կոփվածքի մարտիկը (ակնարկ հին բոլշևիկի մասին)։
Դասախոսական պրոպագանդան գաղափարական աշխատանքի մի օղակն է։
Քննադատությունը և ինքնաքննադատությունը պարտիական աշխատանքի վճռական զենքն է։
Պարտիական հսկողության նոր ձևերի կիրառման արդյունքները։
Պարտիական կազմակերպությունները և գիտական հիմնարկները։
Պրոֆմիությունների պարտիական ղեկավարությունը։
Նախաձեռնությունը պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքում։
Պարտիական կազմակերպության պայքարը յոթնամյակի գերակատարման համար։
Պարտիական կազմակերպությունը և պրոֆմիությունների աշխատանքի կատարելագործումը։
Կոմերիտմիության դաստիարակությունը պարտիայի ամենօրյա հոգսն է։
Սոցիալիստական մրցությունը և պարտիական կազմակերպությունը։
ՍՄԿՊ անդամության թեկնածուների դաստիարակության հարցերը։
Պարտիական շրջկոմը և ՆՏԿ-ների ղեկավարության հարցերը։
Որոշումների կատարման ստուգումը։
Պարտիական կազմակերպությունը և մասսայական ագիտացիան։
Նորակառույցների պարտկազմակերպության աշխատանքի առանձնահատկությունները։
Պարտիական կազմակերպության պայքարը պետական կարգապահության համար։
Բուհական պարտիական կազմակերպության գործունեությունը։
Կադրերի ճիշտ տեղադրման և դաստիարակության նշանակությունը տնտեսության զարգացման համար։

Պարտիական շրջկոմը և ինտելիգենցիան։
Պարտիական շրջկոմը և պատանեկության կոմունիստական դաստիարակությունը։
Քաղկոմը և աշխատավորության կենցաղային սպասարկման հարցերը։
Պարտիական ապարատի գործունեության ոճը։

Շրջկոմն ու իր տպագիր օրգանը։
Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարը։
Քաղաքական և տնտեսական աշխատանքների զուգակցումը։
Պարտիական շրջկոմի բյուրոն։
Պարտիական կազմակերպությունը և արտադրության առաջավորների փորձը (հոդվածներ)։
Տեխնիկական պրոգրեսը և պարտիական կազմակերպությունը (հոդվածներ)։
Պարտիական կազմակերպության պայքարը անասնապահության զարգացման համար (հոդվածներ)։
Արդյունաբերության պարտիական ղեկավարման փորձը։
Պարտշրջկոմը և գյուղական Սովետները։
Երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը և պարտշրջկոմը։
Պարտիական կազմակերպությունը և ֆինանսական դիսցիպլինան։
Կոմունիստը որպես ազնվության և համեստության տիպար։
Կամքը և կոմունիստի գաղափարայնությունը։
Օրինականություն և ընկերություն։
Հասարակականն ու անձնականը կենցաղում։
Պարտիական կազմակերպությունը և ներքին ռեզերվների օգտագործումը (հոդվածներ)։
Շրջկոմի արտահաստիքային հրահանգիչը։
Քաղլուս կաբինետը և կոմունիստների քաղաքական դաստիարակությունը։
Առաջավոր պրոպագանդիստի փորձը (հոդվածներ)։
Ցեխային պարտիական կազմակերպությունը և արտադրանքի որակի բարձրացումը։
Պարտիական աշխատանքը հասարակական սննդի օբյեկտներում։
Սովետական հիմնարկությունների պարտկազմակերպությունների աշխատանքի փորձից։
Սովխոզի պարտիական կազմակերպությունը և գյուղատնտեսության զարգացումը։
Մինիստրության պարտիական կազմակերպությունը։
Պարտիական կազմակերպությունը և կոմունիստական աշխատանքի բրիգադաները։
Պարտիական կազմակերպության պայքարը խնայողության ռեժիմի համար։
Պարտիական կազմակերպությունը և ընկերական դատարանները ու դրուժինաները։
Կոմունիստները նորարարների առաջին շարքերում։
Պարտիական կազմակերպությունը և աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը (հոդվածներ)։
Պարտիական կազմակերպության աշխատանքը և սոցիալիստական պարտավորությունների կատարումը (հոդվածներ)։
Պարտիական կազմակերպությունը և տրանսպորտի ռացիոնալ օգտագործման հարցերը։
Պայքարը սոցիալիստական կենցաղավարության համար։
Տնտեսական գիտելիքների պրոպագանդան և պարտիական կազմակերպությունը։
Ուժեղացնել բանվորների և կոլտնտեսականների շրջանում տարվող քաղաքական աշխատանքը։
Կադրերի տնտեսագիտական ուսուցումը ռեսպուբլիկայում։
Աշխատանքը պրոպագանդիստական կադրերի հետ։
Կանանց շրջանում կատարվող աշխատանքը կարևոր խնդիր է։
Պարտիայի շրջկոմը և իդեոլոգիական աշխատանքի հարցերը։
Քաղաքական ինքնակրթությունը մարքսիզմ-լենինիզմի տիրապետման հիմնական մեթոդն է։